# ՇԷՔՍՊԻՐ

# ՀԱՄԼԷՏ

## ԻՇԽԱՆ ԴԱՆԻՄԱՐՔԱՅԻ

ՈՂԲԵՐԳՈՒԹԻՒՆ ՀԻՆԳ ԱՐԱՐՈՒԱԾՈՎ

ԹԱՐԳՄԱՆԵՑ

ՅՈՎՀԱՆՆԷՍ ՄԱՍԷՀԵԱՆ

ՎԻԷՆՆԱ, ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1921

# ՆԱԽԱԲԱՆ

Աւելի քան քառորդ դար է անցել այն օրից, երբ մենք առաջին անգամ փորձեցինք "Համլէտի,, հայերէն թարգմանութիւնը տալ: Այդ նախափորձը, չը նայելով իր մեծ թերութիւններին, այնքան խրախուսիչ ընդունելութիւն գտաւ Հայ գրագէտների եւ քեմի կողմից, որ դա մեզ քաջալերեց աւելի շուրջ կերպով զբաղուելու Շէքսպիրի թարգմանութեան գործով. եւ տարիների ընթացքում՝ հետզհետէ թարգմանեցինք տասներկու խաղ, որոնք այժմ պատրաստ են տպագրութեան համար:

Մեր նախկին թարգմանութիւնները հարկ համարեցինք ոչ թէ լոկ վերաքննել, այլ այնքան հիմնական փոփոխութեան ենթարկել, որ կարելի է ասել թէ նոր թարգմանութիւն է կատարուած. որովհետեւ վերջին երեսուն տարուայ ընթացքում ոչ միայն Շէքսպիրեան գրականութիւնը զանազան լեզուների մէջ անհագին չափով զարգացել է, եւ մենք առիթ ենք ունեցել ծանօթանալ այդ երկերի հետ, այլ եւ մեր անձնական հայեացքները թարգմանութեան եղանակի մասին որոշ չափով փոխուած են: Մեր առաջին թարգմանութիւնները կատարուած էին Վիկտոր Հիւգօյի ազդեցութեան տակ, որ սրբապղծութիւն էր համարում որ եւ իցէ խոտորում Շէքսպիրեան "Սուրբ Գրքի,, բնագրի բառից եւ տառից: Բայց երբ մենք ծանօթացանք աւելի յաջող թարգմանութիւնների հետ, ի միջի այլոց, Շլէգէլի Գերմանական թարգմանութեան հետ, տեսանք որ շատ թարգմանիչները ղեկավարուել են բոլորովին ուրիշ սկզբունքով, եւ իրաւամբ մտածել են որ գեղարուեստական թարգմանութիւնը շատ անգամ պահանջում է որոշ խոտորում բնագրի բառական հանդերձից՝

ոգին եւ իմաստն աւելի հարազատօրէն տալու համար: Այս տեսակէտից Մետերլինկն այնքան հեռու է գնում, որ Շէքսպիրի նկարագրութիւնները բաղդատում է բնութեան մի տեսարանի, ծովի, մայրամուտի, կամ մի դաշտանկարի հետ, որի առաջ ամեն մի հանդիսատես իր սեփական տպաւորութիւնն է ստանում. եւ ամեն արտիստ կարող է իր ունեցած սուղ միջոցներով միայն իր տպաւորութիւնը վերարտադրել: Ըստ իրան, ո՛րքան յաճախ Շէքսպիրի թարգմանիչը ստիպուած է մաքառել անյաղթելի դժուարութիւնների դէմ, ճանաչել իր գրչի անզօրութիւնը եւ իր միջոցների սղութիւնը Շէքսպիրեան մտածութիւնը փոխադրելու համար, ճիշդ ինչպէս նկարիչը մնում է հիացած բայց յուսահատ՝ բնութեան մի փառահեղ տեսարան իր կտաւի վրայ վերարտադրելուն: Իդէալ թարգմանութիւնը կը լինէր, ուրեմն, որքան կարելի է քիչ հեռանալ բնագրի բառացի արտայայտութիւնից, առանց ոգին եւ իմաստը զոհելու: Այսպիսի թարգմանութիւնն դառնում է մի երկրորդ ստեղծագործութիւն, եւ խիստ պատասխանատու ձեռնարկ:

Նոյնպէս հարկ ենք համարել որոշ փոփոխութիւններ մտցնել տողերի դասաւորութեան մէջ: Մեր նախկին թարգմանութեան մէջ գործածել ենք 10—12 վանկանոց տողեր, հետեւելով անգլիական տողին, որ 10—11 վանկ ունի. բայց հայերէն բառերը ընդհանրապէս աւելի երկար լինելով քան անգլիական բառերը՝ ստիպուած էինք մէկ տողի պարունակութիւնը տեղաւորել մէկ ու կէս տողի կամ երկու տողի մէջ նախադասութիւնը տողերի վրայ բաժանելով: Այդ բանը որոշ անյարմարութիւն ունի կարդալու համար, այսպէս ասենք, աչքի տեսակէտից: Մենք այժմ աշխատել ենք բնագրի ամեն մի տողը հայերէն մէկ տողով տալ, այսինքն, երկու կամ երեք հատուած տեղաւորել մէկ տողի մէջ. հետեւանքն այն է եղել որ ներկայ ձեռի մէջ կան երկար (15 վանկանոց) եւ կարճ (10 վանկանոց) տողեր, ինչ որ մեծ անյարմարութիւն չէ, քանի որ բնագրի մէջ էլ կան երկար ու կարճ տողեր: Այդ փոփոխութիւնը մեր կարծիքով որոշ բնականութիւն է ստեղծել իմաստի՝ եւ տողերի բաժանման մէջ:

# *ՆԱԽԱԲԱՆ*

*Մենք ամենեւին յաւակնութիւն չունինք Շէքսպիրի թարգմանութեան դժուարին եւ պատասխանատու գործն արժանապէս կատարած լինելու. բայց եթէ այս աշխատութիւնը կարող կը լինի իբրեւ հիմք ծառայել, որի վրայ ապագայ աւելի ընդունակ թարգմանիչներ աւելի հարազատօրէն կը կառուցանեն Շէքսպիրեան մտածութեան հայացրած շէնքը՝ մեր ամենաջերմ իղձը կատարուած պիտի համարենք:*



**Շ Է Ք Ս Պ Ի Ր**

*Այս պատկերը տպուած է իր գործերի առաջին լիակատար հրատարակութեան ճակատին (1623 ին):*

*Նա չէ պատկանում մէկ դարի, այլ բոլոր ժամանակներին:*

*Բէն Ջոնսոն:*

# "ՀԱՄԼԷՏԻ„ ԱՂԲԻՒՐՆԵՐԸ

*Մօտաւորապէս 13րդ դարի սկիզբներում Դանիայի մի հեղինակ, Սաքսօ Գրամմատիկոս (Քերականը) իր Դանիացոց Պատմութիւն կոչուած Գրքի մէջ պատմում է Ամլէթոսի պատմութիւնը, լատիներէն լեզուով։ Սաքսօ այդ Սկանդինաւեան լեգենդան աւելի հետաքրքիր դարձնելու համար՝ Հռովմէական Լուցիոս Յունիոս Բրուտոսի պատմութիւնից, որ երկար ժամանակ խենթութիւն էր կեղծում իր նպատակը գործադրելու համար, կտորներ է փոխ առել եւ խառնել Ամլէթոսի պատմութեան հետ։ Դանեմարքայի թագաւոր Ռորիկի իշխանութեան ժամանակ Հորվէնդիլ եւ իր եղբայրը Փէնգ կառավարում են եղել Իւտլանդը։ Հորվէնդիլ սպանում է Նորվեգիայի թագաւոր Քոլեն, եւ կնութեան է առնում Ռորիկ թագաւորի դուստր Գերութային, որից ունենում է մի զաւակ Ամլէթ անունով։ Փէնգ, նախանձելով իր եղբօրը՝ դաւով սպանում է նրան եւ ամուսնանում է նրա կնոջ, Գերութայի հետ։ Ամլէթ վճռում է իր հօր վրէժը հանել, բայց միջոց չունենալով անմիջապէս իր նպատակը գործադրելու եւ վախենալով իր հօրեղբօր թշնամութիւնից խենթութիւն է ձեւացնում եւ անտանական յիմարութիւններ է անում։ Պալատականներին ծաղրում է առեղծուածային խօսքերով, որոնք նրանց համար անիմաստ են, բայց թագուն նշանակութիւն ունէին։ Թագաւորի կուսակիցները փորձում են հնարքով հասկանալ թէ արդեօք իսկապէս Ամլէթը խենթ է, թէ միայն կեղծում է. նրա խորթ քրոջը համոզում են, որ առանձին տեսակցութիւն ունենայ Ամլէթի հետ եւ աշխատէ գաղտնիքը հասկանալ։ Ամլէթի խորթ եղբայրը գաղտնապէս այս մասին նրան լուր է տալիս, եւ այդ կերպով դաւադրութիւնը ջուրն է ընկնում։ Փէնգի պալատականներից մէկը վճռում է գաղտնի ականջ*

դնել Ամլէթի տեսակցութեանն իր մօր հետ։ Ամլէթ, աքլորի պէս
կանչելով եւ իր բազուկները թեւերի պէս թափ տալով՝ թռչկո-
տում է այստեղ այնտեղ, եւ ի վերջոյ գտնում է պարանի տակ
ծածկուած լրտեսին եւ սպանում։ Յետոյ նրա մարմինը յօշոտում է
եւ եռցնելով թափում է խոզերի առաջ։ Ամլէթ այդ տեսակցու-
թեան մէջ իր մօրը յայտնում է թէ իր խենթութիւնը կեղծուած
բան է, եւ թէ ինքը վճռել է իր հօր վրէժը հանել, եւ յաջողում
է իր մօրն էլ իր հետ համամիտ անել։ Փէնգ Ամլէթին ուղարկում
է Բրիտանիա իր երկու ընկերների հետ, տալով նրանց մի գաղտնի
նամակ ուղղուած Բրիտանիայի թագաւորին, որով խնդրում է նրա-
նից Ամլէթին սպանել։ Ամլէթ նամակի պարունակութիւնը փոխում
է, եւ իր անուանի տեղ դնում իր ընկերների անունները։ Երբ նրանք
հասնում են Բրիտանիա, թագաւորը նրանց սպանել է տալիս։ Բրի-
տանիայում նա յաջողում է ամուսնանալ թագաւորի աղջկայ հետ,
եւ զանազան արկածներ է ունենում, որ աւելորդ ենք համարում
այստեղ յիշատակել, քանի որ կապ չունին Շէքսպիրի «Համլէտի»
հետ։ Վերադառնալով Դանիմարքա, Ամլէթ գինովցնում է պալա-
տականներին, նրանց շղթայապատում է իր մօր գործած ցանցերով,
հրդեհ է ձգում պալատի մէջ եւ իր սրով հօրեղբօրն սպանում է։
Ապա ժողովրդին դիմելով իր հօրեղբօր արարքները պատմում է,
որից յետոյ ժողովուրդը նրան կեցցէներով թագաւոր է հրատարա-
կում։ Ուրիշ շատ արկածներից յետոյ, որոնց ընթացքում Ամլէթ
մեծ խորամանկութիւն եւ քաջասրտութիւն է ցոյց տալիս, Ամլէթ
մի պատերազմի մէջ սպանւում է։

Սաքսոյի այս պատմութիւնը տպուած է 1514ին։ 1570ին մի
Ֆրանսիացի — Belle forest — Սաքսոյի գրքի ազատ թարգմանու-
թիւնն է տալիս Ֆրանսերէն լեզուով։ Կայ եւ Անգլիական մի թարգ-
մանութիւն Բէլլըֆօրէի գրքի, որ տպուել է 1608ին, այսինքն Շէքս-
պիրի երկի տպագրութիւնից հինգ տարի յետոյ։

Այս է այն կոպիտ պատմութիւնը, որ իբրեւ առաջին հիմ պի-
տի ծառայէր աշխարհի ամենագեղարուեստական գրուածքներից մէկին.
բայց Շէքսպիրի անմիջական աղբիւրն ուրիշ է։ Արդէն 1589ին ան-
գլիերէն լեզուով մի դրամա գոյութիւն ունէր, որի նիւթը Համլէտի

Հեղինակութեան Վիլեամ Շէքսփիրի. նոր եւ յաւելեալ տպագրութիւն. նախկինին կրկնապատիկ ծաւալութեամբ՝ հարազատ եւ կատարեալ օրինակից. Լոնդոն 1604։

Անվիճելի է որ 1603ի Քառածալը ապօրինի միջոցներով կատարուած մի հրատարակութիւն է։ Նրա մէջ գտնուած սխալներն աւելի լսողութեան սխալներ են, քան թէ աչքի, կամ գրչագրի անուշադրութեան. որից երեւում է թէ, ըստ այն ժամանակի սովորութեան, մի սղագրող ուղարկուած է եղել թատրոն, որ ներկայացման ժամանակ սղագրէ. կան եւ ընդօրինակութեան սխալներ, որոնք սղագրից տպագրութեան համար արտագրելու սխալներ կարող են լինել։ Գիրքը լի է անհամար սխալներով եւ անհեթեթ տողերով։ Այս քառածալի մէջ կար 2143 տող, այսինքն 1700—1800 տող պակաս երկրորդ Քառածալից։ Կան եւ անուանի փոփոխութիւններ. — Պոլոնիուսի տեղ Կորամբիս է գրուած եւ Ռէյնալդօյի տեղ՝ Մոնտանօ։ Բեմական թագաւորը եւ թագուհին՝ Դուքս եւ Դքսուհի են։ Եօրիկի գանգը 12 տարի միայն մնացած է հողի տակ, եւ Դուքսն ու Դքսուհին միայն 13 տարուց ի վեր ամուսնացած են. կան եւ ուրիշ փոփոխութիւններ, որոնց մէջ կարեւորն այն է, որ “Լինել թէ չը լինելը„ զետեղուած է նոյն տեսարանում, ուր կարդացւում է Համլէտի սիրային նամակը։

Այսպիսի կարեւոր փոփոխութիւններ բացատրելու համար երկու ենթադրութիւն միայն կարող ենք անել. կամ հին խաղից — Քիդի Համլէտից — բաւական մեծ մաս պարունակուած է 1603ի Քառածալի մէջ, եւ կամ այդ Քառածալը անկատար եւ սխալ արտագրութիւնն է Շէքսպիրի գրուածի, որ Շէքսպիր ինքն էլ յետագայում սրբագրած եւ փոփոխած է։ Կրիտիկների կարծիքներն այս մասին շատ են տարբերւում իրարից։ Ըստ Դաուդէնի՝ 1603ի Քառածալի մէջ Շէքսպիրի ձեռքն անվիճելի կերպով ճանաչելի է, եւ սխալները միայն անհոգութեան սխալներ են։ Պրոֆ. Սըր Իսրայէլ Գոլանց այն կարծիքի է, թէ 1603ի Քառածալը աղաւաղուած եւ կրճատուած վերարտադրութիւնն է Շէքսպիրից առաջ մի այլ հեղինակի աշխատութեան, որ Շէքսպիր 1602ին որոշ չափով ուղղած եւ սրբագրած է։

## ԱՂԲԻՒՐՆԵՐԸ

Շէքսպիրի կենդանութեան ժամանակ՝ Համլէտի այդ երկու տպագրութիւնները միայն կային, որոնցից ոչ մէկի մէջ ինքը մասնակցութիւն չէ ունեցել։ Իր մահից 7 տարի յետոյ 1623ին Շէքսպիրի խումբին պատկանող երկու դերասան լոյս ընծայեցին նրա դրամաների լիակատար հրատարակութիւնը։ Այս տպագրութիւնը մանաւորապէս կատարուած է բեմական նպատակի համար, եւ շատ հատուածներ, որոնք կային 1604ի Քառածալի մէջ՝ կրճատուած են։ Այժմեան ընդունուած բնագիրը կազմուած է 1604ի Քառածալից եւ 1623ի մեծադիր հրատարակութիւնից որ կոչւած է “Միածալ„։

## “ՀԱՄԼԷՏԻ„ ԱՌԵՂԾՈՒԱԾԸ

Չը կայ համաշխարհային գրականութեան մէջ մի գիրք, որի վրայ այնքան բան գրուած լինի, որքան Շէքսպիրի այս հեղինակութեան վրայ. ամէն կարելի եւ անկարելի բացատրութիւններն երեւակայուած են, ամէն ընդունելի եւ անընդունելի լուծումներն առաջարկուած են, առանց վերջնական եւ անսաղիւտ լուծումի յանգելու։ Ամէն սերունդ, համաձայն իր հակումների եւ հայեացքների՝ Համլէտի մէջ տեսել է մի հմայիչ, ոգեւորիչ իդէալ, եւ յաջորդ սերունդն արդէն անզօր է մնացել առաջարկուած լուծումներից, եւ սկսել է նկատել Համլէտի բնաւորութեան մէջ այնպիսի առանձնայատկութիւններ, որոնք, մինչեւ այն, աննկատելի էին մնացել։ Ինչի մէջն է կայանում այս յաւէտ անբացատրելի եւ յաւէտ հրապուրիչ առեղծուածը։

Այն օրից ինչ Համլէտ հասարակաց սեփականութիւն դարձաւ՝ իսկոյն գրաւեց ժողովրդին։ Ամբոխը, որի համար “Համլէտը„ պէտք է, Շէքսպիրի բառերով, “խավիար„ լինէր, կարծես բնազդով հասկացաւ հանճարեղ գրուածքը. ասում եմ բնազդով, որովհետեւ ոչ միայն իր ժամանակ, այլ եւ յաջորդ երկու հարիւր տարուայ ընթացքում, ոչ ժողովուրդը, ոչ էլ մեծ հեղինակներ եւ փիլիսոփաներ ըմբռնել են գրուածքի իսկական բնոյթը։ Այդ երկար ժամանակամիջոցում, առաջնակարգ մտածողներ կարդացել եւ վայելել են “Համլէտը„, սքանչացել են գրուածքի զանազան արժանիքների վրայ, հմայուել են նրա ոճի գեղեցկութիւնից եւ երաժշտութիւնից, բայց չեն անգամ երեւակայել, թէ Շէքսպիր այդ բոլորից դուրս կարող էր մի որոշ գաղափար, մի յատակագիծ ունենալ, որի վրայ ամբողջ գրուածքը հիմնուած լինէր։ Հանմէր (1736) նկատում է, թէ ոչ մի բնական պատճառ չէ երեւում, թէ ինչու երիտասարդ իշխանն իր ոճրագործ

# ԱՌԵՂԾՈՒԱԾԸ

Հօրեղբօրը մի քայլ առաջ չէ տանում. Եւ այս բանը նրանով է միայն բացատրւում, որ եթէ Համլէտ այդպէս վարւէր՝ խաղը դրանով կը վերջանար. այլապէս խօսելով՝ չէր կարելի դրանից մի ողբերգութեան նիւթ դուրս բերել։ Ջոնսոն (1765) գտնում է թէ խաղի բոլոր ընթացքում Համլէտ աւելի իբրեւ գործիք է հանդիսանում, քան իբրեւ գործող, եւ այդ բանը համարում է պակասութիւն Շէքսպիրի թատերագրական տաղանդի համար՝ առանց մի քայլ անդրադառնալու, որ դա կարող է Շէքսպիրի մտադրուած յատկագիծը լինել։ Ոչ էլ Վոլտէրի պէս մի փիլիսոփայական, թափանցող միտք, որ առաջինը եղաւ Շէքսպիրին իր հայրենակիցներին ծանօթացնող, կարողացաւ “Համլէտի” ոգին ըմբռնել։ Նա կոչում է “Համլէտը” մի “գռեհիկ եւ բարբարոսական դրամա, որին Ֆրանսիայի կամ Իտալիայի ամենաստոր ամբոխը չը պիտի հանդուրժէր”։ “Թէեւ”, ասում է նա մի քիչ յետոյ, “նրա մէջ կան վսեմ հատուածներ, որոնք վայել են աշխարհի ամենամեծ հանճարին”։

Պրոֆ. Բրադլէյ նկատում է որ ոչ մի ապացոյց չը կայ թէ Շէքսպիրի օրով Համլէտի խաւարութիւնը հասկացուել է, եւ ասում է թէ գուցէ այն մարդիկ իրաւունք ունեին, որոնք կարծում են թէ “Համլէտը” չէ կարելի արդիւնք համարել իր ժամանակի, այլ նա մի տեսակ մարգարէական տեսիլք է յետագայ ժամանակների։

Առաջին անգամ 1780ին Հէնրի Մաքէնզի սկսում է նշմարել Համլէտի հոգեբանութիւնը։ “Շէքսպիրի բոլոր տիպերից, գրում է. նա, Համլէտն ամենից աւելի դժուար է վերածել որոշ սկզբունքի, եւ պէտք է որոնել թէ կա՞յ արդեօք մի առաջնորդող գաղափար, որով կարելի լինի այս առերեւոյթ հակասութիւնները հաշտեցնել։” Նրա գնահատութիւնն այնքան հետաքրքրական է, որ հարկ ենք համարում հետեւեալ հատուածը մէջ բերել. — “Եթէ Համլէտ վճռական եւ անյեղլի որոշումով հետապնդէր իր վրէժին, եւ իր նպատակի իրագործման դժուարութիւնները պատահական պատճառներից միայն առաջ եկած լինէին, ոչ թէ իր ներքին կասկածանքից եւ վարանումներից՝ հանդիսատեսի անձկութիւնը կարող էր շատ բարձր աստիճանի հասնել, բայց դա կը լինէր պատահարների պատճառով, ոչ թէ անձնաւորութեան։ Բայց այսպէս, ինչպէս որ Շէքսպիր դուրս

է բերած Համլէտի տիպը՝ մենք զգում ենք Համլէտի ոչ միայն առաքինութիւնները որպէս մարդ, այլ եւ նրա թուլութիւնները։ Մենք տեսնում ենք որ մի մարդ, որ ուրիշ հանգամանքներում բոլոր բարոյական եւ ընկերական առաքինութիւնները ցոյց պիտի տար իր անձի վրայ, դրուած է այնպիսի դիրքում, ուր իր հոգու բոլոր սիրելի յատկութիւնները ծառայում են միայն նրա տագնապն աւելացնելու եւ տարակուսանքը շատացնելու։ Մեր համակրութիւնը նրա տանջանքի հանդէպ, եւ մեր անձկութիւնը նրա տարակուսանքի հանդէպ՝ հասնում են ամենաբարձր աստիճանի, եւ այդ տեղից է ծագում “Համլէտի„ այն անորակելի հմայքը որ ամեն ընթերցող կամ հանդիսատես զգում է, մինչդեռ աւելի կատարեալ բնաւորութիւններ չեն կարողանում մեզ այդքան թովել„։

Համլէտի բնաւորութեան վերլուծութեան մէջ Մաքէնզին աւելի առաջ չը գնաց։ Բայց արդէն տեսնում ենք կատարուած յառաջդիմութիւնը։ Համլէտի վարմունքները չեն նկատւում որպէս հեղինակի թերութիւններ, այլ գիտաւորեալ յատակագիծ, եւ նրանք մեզ աւելի են գրաւում, ինչպէս ինքն ասում է, քան եթէ Համլէտի բնաւորութիւնը բարոյապէս կատարեալ դուրս բերուած լինէր։

Համլէտի հոգեբանութեան մէջ աւելի խոր թափանցելու պատիւը պահուած էր Գէօթէին։ Նրա վերլուծումը, թէեւ միակողմանի, այն անկիւնաքարը դարձաւ, որի վրայ կառուցեց յետագայում կրիտիկայի մի ամբողջ շէնք։ Ահա թէ նա Վիլհելմ Մայստէրի աշակերտութեան տարիները գրուածքի մէջ ինչպէս է արտայայտւում.

Ժամանակն իր շաւղից դուրս է սայթաքել. օ՜հ, բախտ իմ դժխեմ,
Ինչու՞ ծնուեցայ որ հէնց ես ուղղեմ:

“Այս բառերի մէջն է, իմ կարծիքով, Համլէտի բոլոր վարմունքի բանալին, եւ ինձ համար պարզ է, որ Շէքսպիր կամեցել է նկարագրել մի մեծ գործ, որ պարտադրուած է այդ գործը կատարելու անկարող մի հոգու։ Ինձ թւում է թէ բոլոր դրաման այդ մտքով է շարադրուած։ Ահա մի կաղնի որ տնկուած է մի թանկագին անօթի մէջ, որ միայն քնքուշ ծաղիկներ կարող էր ընդունել իր գրկում. արմատները տարածւում են, եւ ծաղկամանը փշուր փշուր է լինում։„

## ԱՌԵՂԾՈՒԱԾԸ

"Մի գեղեցիկ, մաքուր, ազնիւ, և վերին աստիճանի բարոյական էակ, բայց զուրկ այն զօրեղ ջղերից որոնք սեփական են մի հերոսի, ճմլւում է մի բեռան տակ, որ ոչ տանել է կարողանում, և ոչ դէն նետել. ամէն պարտականութիւն սուրբ է նրա համար, բայց այս մէկը շատ է ծանր: Անկարելին է նրանից պահանջւում. ոչ թէ էապէս անկարելին, այլ նրա՛ համար անկարելին: Ինչպէս գալարւում է նա, դառնում է, տանջւում է, առաջ է գնում, յետ է նահանջում, միշտ մտաբերւում է, միշտ ինքն իրեն յիշեցնում է, և, ի վերջոյ, իր նպատակը մտքից հանում է՝ առանց երբ և իցէ իր հոգու անդորրութիւնը վերագտնելու„:

"Համլէտ աւելի զգացումով է օժտւած, քան թէ ուժեղ բնաւորութեամբ. դէպքերն են նրան յառաջ մղում. և հէնց այդ պատճառով դրաման մի վիպասանութեան ծաւալն է ստացել. բայց քանի որ ճակատագիրն է խաղին ուղղութիւն տւողը, և քանի որ դրաման ծագում է մի սարսափելի ոճրագործութիւնից և հերոսը անդադար մղւում է դէպի մի սարսափելի գործ՝ գրւածքը վերին աստիճանի եղերական է և միայն եղերական վախճանի կարող էր յանգել„:

Գէօթէի այս գնահատութիւնը, թէև վերին աստիճանի հանճարեղ, թէև համապատասխան որոշ գծերի որ տեսնում ենք Համլէտի բնաւորութեան մէջ, այնուամենայնիւ չը բերեց անթերի լուծումը: Դաուդէն, խօսելով այս մասին, ասում է. — "Գէօթէի պատկերի մէջ կէս ճշմարտութիւն կայ, բայց կէս միայն: Շէքսպիրի դրամաների մեծ մասի մէջ հերոսների բնաւորութեան և կեանքի եղերական աղաւաղումն առաջ է գալիս նրանից, որ դրամայի գլխաւոր անձնաւորութիւնը ընկնում է մի նւաճող կրքի ազդեցութեան տակ, մի կրքի, որ էապէս ներհակ է իր բնութեանը, բայց որն առաջ է գալիս իր մէջ բնածին մի թուլութիւնից կամ թերութիւնից. և այդ կրքից դուրս չէ կարողանում ինքն իրեն ազատել, և դա՛ վերջ ի վերջոյ նրա կործանման պատճառն է դառնում: Այսպէս, օրինակ, Օթէլլօն, որ ի բնէ հաւատացող և վստահող հոգի ունէր, մի տեսակ մանկական ազնիւ վստահութեամբ. մի մարդ, որ հէնց Եագօյի խօսքերով "Պարկեշտ է կարծում այն բոլոր մարդկանց, որոնք պարկեշտ են թւում„. մի մարդ, որ դիւրաւ չէ նախանձում.

Օթելլոյի միտքը վարակւում է կասկածի եւ խանդի թոյնից, եւ այդ թոյնը նրան պժգացնում եւ կործանում է։ Նոյնպէս Մակբէթ, որ ստեղծւած էր ստորադաս լինելու համար, մի սարսափելի եւ անբնական փառասիրութեան զոհ է դառնում։ Նոյնպէս Լիր արքան, Տիմոն Աթենացին եւ այլն։ Շէքսպիր, իր այս դրամատիկ մեթոդին հաւատարիմ, եւ որպէս արտիստ, որ գերադասում է մարդկային կեանքի եւ պայքարի բարդ երեւոյթները պարզ երեւոյթներից, Դանիացի իշխանի բնաւորութիւնը կերտելիս՝ նրան ձեւակերպել է որպէս մի մարդ, որին յարատեւ գործը, եւ, որոշ չափով, նախամտածւած վրիժառութիւնը մասնաւորապէս հակակրելի է։ Այս անտանելի բեռան տակ Համլէտ դողդողում է, երերւում է, եւ վերջապէս ընկնում է։ Մինչեւ այստեղ Գէօթէ իրաւունք ունի։ Բայց նա չէ նկատել, որ, ինչպէս Ռոմէօ եւ Ջուլիէտի պարագայում, ամբողջ աշխարհը Համլէտի դէմ էր։

*Ժամանակն իր շաւղից դուրս է սայթաքել. օ՜հ, բախտ իմ դժխեմ,*
*Ինչու ծնւեցայ որ հէնց ես ուղղեմ։*

Համլէտի վրայ պարտք է դրւած մի բարոյապէս փչացած եւ խաւար աշխարհում բարոյական կարգ հաստատել։ Նրա առաջ չը կայ մի բաց դաշտ կամ մի բլուրի քղանց, ուր կարողանայ այս պատերազմը յայտնապէս վարել. այլ մի վտանգաւոր եւ մոլորեցնող դիրք, մութ եւ ծուռումուռ շաւիղներով։ Նա ծնւած է պարկեշտ լինելու համար, եւ ստիպւած է կռւել իր հակառակորդների զէնքերով, ստիպւած է խորամանկ եւ նենգամիտ հնարքներ գործի դնել. այս կերպով նա վատնում է իր բոլոր ընդունակութիւնը ճարպիկ ու ճարտար դաւեր հնարելու մէջ։ Նրա ունեցած բոլոր ուժը կարող էր կարգ ու կանոնով կազմակերպւել եւ օգտակար դառնալ՝ եթէ նրա աշխարհը պարկեշտութեան, երջանկութեան եւ մարդկային սիրոյ մի աշխարհ լինէր։ Բայց խաբէութեան, լրտեսութեան, եսասիրութեան մի աշխարհ շրջապատում է նրան. նրա իդէալիզմը երեսուն տարեկան հասակում, դառնում է մտաւորապէս սկեպտիցիզմ. նրա սէրը եւ կեանքը դառնում են ամուլ. նա կորցնում է այն աւիւնը, որ առաջ է գալիս առողջ եւ կենսուրախ զգացողութիւնից. եւ իրեն

շրջապատող համատարած ապականութեան միջավայրում նրա միտքը փորձում է քննել եւ զննել իրերի կարգը, աւելի քան թէ որ եւ է չափով մի գործնական ծառայութիւն անել։ Աշխարհի քաղհան չեղած պարտէզում՝ ինչո՞ւ համար պէտք է նա իր կեանքը մաշեր մի միակ անպիտան խոտ արմատախիլ անելով„։

Իսկ Բրադլէյ, իր "Համլէտի„ ուսումնասիրութեան մէջ՝ գտնում է որ Գէօթէն անտես է արել Թատերերգի մէջ նշանակած շատ կարեւոր փաստեր։ Ի՞նչպէս կարելի է, ասում է նա, "որ մի ծաղկանման եւ քնքշահոգի„ իշխան — ինչպէս Գէօթէն դուրս է բերել Համլէտին — այնպիսի գործեր կատարէր, ինչպէս տեսնում ենք որ նա կատարել է։ Ի՞նչ յարաբերութիւն կայ այդ Համլէտի եւ այն Համլէտի մէջ, որ երբ ուրւականը նրան կանչում է, ասում է իր ընկերներին.

Թողէք, պարոններ,<br>
Երկինքն է վկայ, ուրու կը դարձնեմ ինձ արգելողին.

Այն Համլէտի, որ ոչ մի անգամ չէ խօսում Թագաւորի հետ առանց մի անարգանք անելու, կամ Պոլոնիուսի հետ՝ առանց մի կծու հեգնութեան. այն Համլէտի, որ փոթորիկ է բարձրացնում Օֆէլեայի գլխին եւ "դաշոյններ„ է խօսում իր մօր հետ. այն Համլէտի, որ արրասի ետեւ մի ձայն լսելով՝ մի ակնթարթում սուրը դուրս է քաշում եւ խրում է լսողի մարմնի մէջ. այն Համլէտի, որ իր դասընկերներին ուղարկում է դէպի մահ, եւ մի րոպէ անգամ իր միտքը չէ զբաղեցնում նրանցով. այն Համլէտի, որ առաջինն անցնում է յելուզականաւը եւ որ կռւում է Լաէրտի հետ գերեզմանի մէջ. այն Համլէտի, որ, վերջին տեսարանում, դառնում է ճակատագրական մարդ, եւ որի առաջ բոլոր պալատականները կանգնած են մնում զարհուրանքով. այն Համլէտի, որ, երբ հասու է լինում ճշմարտութեան, յարձակւում է Թագաւորի վրայ, եւ սուրը խրում է նրա մարմնի մէջ, յետոյ բռնում է թունալից բաժակը եւ բռնի մտցնում այն թշւառի ատամների մէջ. այն Համլէտի, որ մահւան երկունքի մէջ՝ դեռ եւս բաւական ոյժ եւ աւիւն ունի բաժակը Հորացիոյի ձեռքից խլելու, որպէս զի նրան թոյլ չը տայ խմել։ Այս մարդը,

Շէքսպիրի Համլէտը, մի հերոսական, մի սարսափելի տիպ է։ Նա մի ահեղ հակառակորդ կը լինէր նոյնիսկ Օթէլլոյի կամ Մակբէթի առաջ։

Բրադլէյ գտնում է որ մի ուրիշ տեսակէտից էլ Գէօթէի ներկայացրած Համլէտի պատկերը հարազատ չէ. Համլէտ իր բնաւորութեան մէջ ունի որոշ կարծրասրտութիւն. Պոլոնիուսին սպանելուց յետոյ նա ուրիշ խօսք չէ գտնում ասելու եթէ ոչ.

*Ա՛յ թշուառ, յախուռն, միջամուխ յիմար. բարի ճանապարհ*
*Քեզնից մեծի տեղ ենթադրեցի քեզ. ստացիր բախտըդ.*
*Տես ի՛նչ վտանգ կայ ուրիշի գործին խառնուելու մէջ։*

Յետոյ նրա մարմինը դուրս քաշելու ժամանակ ինչ անվայել բառեր է գործածում Օֆէլիայի հօր մասին։ Նոյն անզգայութիւնը տեսնում ենք նրա մէջ, երբ խօսում է Ռոզէնկրանցի եւ Գիլդէնշտերնի մահուան մասին։ Ոչնչով չէ կարելի բացատրել նրա արհամարհալից եւ անպատշաճ լեզուն Օֆէլիայի հետ՝ ներկայացման տեսարանում։

Գէօթէի այս ուսումնասիրութիւնը թէեւ չը լուծեց խնդիրը, բայց այն արժանիքն ունեցաւ, որ նոր ուղղութիւն տուաւ կրիտիկային. այնուհետեւ ամէնքն սկսան Համլէտի առեղծուածի լուծումը փնտռել նրա բնաւորութեան, հոգեբանութեան մէջ, ոչ թէ արտաքին, իրենից անկախ հանգամանքների մէջ։ Միաժամանակ երեւան եկաւ մի նոր վարդապետութիւն թէ՛ Անգլիայում եւ թէ՛ Գերմանիայում, իրարից անկախ։ Կոլրիձ 1808ին, այսպէս է գրում. —

“Համլէտի բնաւորութիւնը լաւ հասկանալու համար՝ պէտք է մենք աչքի առաջ ունենանք մեր մտքի կազմութիւնը. մարդը զանազանւում է անասունից այն չափով, ինչ չափով մտածութիւնը գերիշխում է զգայարանքի վրայ։ Բայց մտքի առողջ գործունէութեան ժամանակ՝ անդադար մի տեսակ հաւասարակշռութիւն է գոյանում արտաքին առարկաներից ստացուած տպաւորութեան եւ մտքի ներքին գործունէութեան միջեւ։ Եթէ գիտողական ունակութեան նժարը շատ է ծանրանում, մարդ դառնում է սոսկ խորհրդածող մի էակ, եւ կորցնում է գործելու բնածին կարողութիւնը։ Շէքսպիրի ստեղծագործական յատկութիւններից մէկն էլ

այն է, որ նա երեւակայում է մի որեւիցէ բարոյական կամ մտային յատկութիւն, հիւանդոտ չափազանցութեան հասցրած, եւ յետոյ ինքն իրեն դնում է՝ այդ հիւանդոտ կամ պակասաւոր հոգեկան վիճակով՝ որոշ հանգամանքների մէջ։ Համլէտի մէջ նա ուզեցել է ցոյց տալ թէ բարոյապէս անհրաժեշտ է որ մի պարտ ու պատշաճ հաւասարակշռութիւն ստեղծուի մեր դրսից ստացած տպաւորութիւնների եւ մեր մտքի ներքին գործունէութեան միջեւ, այլապէս խօսելով, իրական աշխարհի եւ երեւակայական աշխարհի միջեւ։ Համլէտի մէջ այդ հաւասարակշռութիւնը խանգարուած է. Նրա խոկումները եւ մտացածին պատկերները շատ աւելի ուժեղ են, քան թէ իրական տպաւորութիւնները. եւ մինչեւ անգամ՝ նրա իրական տպաւորութիւնները անմիջապէս անցնելով իր խորհրդածութեան խողովակով՝ այնպիսի մի գոյն ու ձեւ են ստանում, որ իրենց սեփական գոյնն ու ձեւը չեն։ Այս կերպով մենք տեսնում ենք մի ահագին իմացական գործունէութիւն, եւ դրա կողքին, իբրեւ հետեւանք, նոյնչափ մեծ հակակրութիւն դէպի իրական գործը։ Այս տիպը Շէքսպիր դնում է մի որոշ միջավայրի մէջ, որից խոյս տալու ճար չը կայ։ Համլէտ քաջասիրտ է եւ մահից երկիւղ չունի. բայց տարակուսում է զգայնութեան չափազանցութիւնից, եւ ամեն բան յետաձգում է՝ շատ մտմտալուց, եւ այդպէս՝ կորցնում է գործելու կարողութիւնը եւ վճռականութեան աւիւնը։„

Նոյն հեղինակն իր մի ուրիշ դասախօսութեան մէջ (1812ին) հետեւեալ նշանաւոր խորհրդածութիւնն է անում "Համլէտի„ առիթով. — Շէքսպիր ուզում է մեզ այս ճշմարտութիւնը հասկացնել, թէ կեանքի գլխաւոր նպատակը՝ գործն է. թէ մեր իմացական կարողութիւնները, որչափ էլ փայլուն լինեն, ոչ մի արժէք չունին, եւ նոյն իսկ անբախտութիւն են՝ եթէ մեզ յետ են կանգնեցնում գործից, եւ մեզ ստիպում են մտածել եւ մտածել, մինչեւ որեւիցէ արդիւնաւոր գործ կատարելու ժամանակն անցնում է։ Ամեն բան ինչ որ սիրելի եւ գնահատելի է՝ համախմբուած է Համլէտի մէջ, միայն մէկ բացառութեամբ։ Մի մարդ է, որ ապրում է խորհրդածութեան մէջ, մի մարդ, որին ամեն մարդկային եւ աստուածային դրդիչները գործի են կանչում, բայց նրա կեանքի

գլխաւոր նպատակը դերեւ է ելնում այն բանի հետեւանքով, որ միշտ վճռում է գործել, բայց երբէք վճռելուց դուրս ուրիշ բան չէ անում։„

Նոյն մտքով է արտայայտւում նաեւ Ա. Վ. Շլէգէլ (1809)։ “Այս բոլորը„, ասում է նա, դիտմամբ գրուած է ցոյց տալու համար, թէ ամեն բան հաշւող մի խորհրդածութիւն, որ մի գործի բոլոր յարակցութիւնները եւ կարելի հետեւանքները աչքի առաջ է առնում մինչեւ մարդկային նախատեսութեան վերջին սահմանը՝ գօսացնում է գործելու կարողութիւնը, ինչպէս Համլէտն ասում է.

Ու հէնց այս կերպով վճռականութեան բընածին գոյնը
Ախտաժէտւում է խորհրդածութեան գունաթափ ցոլքից:

Ահա ուրեմն մի նոր բացատրութիւն Համլէտի բնաւորութեան, կամ, աւելի ճիշդ է ասել, նրա բնաւորութեան մէկ կողմի։ Պրոֆ. Դաուդէն Գէօթէի բնորոշումը թերի գտնելուց յետոյ, պակասաւոր է գտնում նաեւ Կոլրիճ—Շլէգէլեան վարդապետութիւնը։ “Եթէ„, ասում է նա, “Գէօթէի ուսումնասիրութիւնը, թէեւ սքանչելի, կրիտիկան մոլորեցրեց մէկ կողմից՝ չափազանց բացարձակօրէն ուշադրութիւնը կենդրոնացնելով Համլէտի ներքին աշխարհի վրայ, Շլէգէլի եւ Կոլրիճի ուսումնասիրութիւնները նոյն սխալը գործեցին մի այլ կողմից՝ չափազանց մեծ կարեւորութիւն տալով Համլէտի բնաւորութեան տարրերից միայն մէկին։ Ճիշդ է որ Համլէտի գործելու կարողութիւնը գօսանում է “եղածի վրայ շատ ճշգրիտօրէն խորհրդածելու„, իր սովորութեան պատճառով, եւ ճշմարիտ է, ինչպէս Կոլրիճ ասում է, որ մենք Համլէտի մէջ տեսնում ենք մի ահագին իմացական գործունէութիւն, եւ դրա կողքին, իբրեւ հետեւանք, նոյնչափ մեծ հակակրութիւն դէպի իրական գործը։ Բայց Համլէտ մի միայն եւ սոսկ մտածող չէ. զգայական մասը նրա բնաւորութեան մէջ նոյնչափ կարեւոր է, որչափ մտաւորականը. Նրա հիւանդութիւնը նոյնչափ խոր արմատ ունի նրա զգայնութեան եւ սրտի, որչափ ուղեղի մէջ։ Եթէ նրա բոլոր զգացածները փոխարկւում են մտածումների, նոյնքան ճշմարիտ է, որ նրա բոլոր մտածումները տոգորուած են զգացումներով։ Ներկայացնել Համլէտին որպէս գերիշխող մտածողական կարողութեան մի տիպ, եւ անտես

անել նրա անէնչալից եւ զգայուն սիրտը՝ կը նշանակէր անհեթեթ եւ անհասկանալի դարձնել ամբողջ դրուածքը։"

Այս թերի կողմը լրացնելուց յետոյ՝ Դաուդէն հակւում է Շլէգէլ—Կոլերիջեան կարծիքին, եւ տալիս է մի պատկեր, որից հարկ ենք համարում բերել մի քանի գծեր. —

"Երբ խաղն սկսւում է՝ Համլէտ հասել է երեսուն տարեկան հասակին, — մի տարիք, երբ երիտասարդական իդէալիզմը պէտք է ձուլւի առնական տարիքի գործնական ձգտումների մէջ եւ ձեւ տայ նրանց. Նա ստացել է ամէն տեսակ դաստիարակութիւն, բացի իրական կեանքի դաստիարակութիւնից։ Իր հաստատակամ հօր թագաւորութեան ժամանակ՝ խորհրդածութեան անձնատուր որդին ոչ մի դեր չէ ունեցել խաղալու։ Կամաց կամաց եկել հասել է առնական տարիքին՝ տակաւին մնացած լինելով համալսարանի յաճախորդ, փիլիսոփայութեան ուսանող, գեղարւեստի սիրահար եւ կեանքի ու մահի առեղծւածների վրայ մտմտացող, բայց որ երբէք իր կեանքում մի վճիռ չէ տւել եւ մի գործ չէ կատարել...։ Համլէտ չէ կարող ոչ մի բան ձեռնարկել հանդարտ վճռականութեամբ. Նոյն իսկ անընդունակ է մի մտածութիւն անխախտ կերպով իւրացնելու. Բոլոր խաղի ընթացքում նա տատանւում է մատերիալիզմի եւ սպիրիտուալիզմի մէջ, անմահութեան հաւատքի եւ անհաւատութեան մէջ, դէպի նախախնամութիւնն ունեցած վստահութեան եւ բախտի առաջ խոնարհւելու յօժարութեան մէջ։ Երբ իր առաջ տեսնում է ուրւականին, մտածում է որ ինքն էլ մի հոգեւոր կեանք ունի, եւ հոգու անմահ կեանքը նրա մէջ ուժեղանում է։ Երբ մենակ է մնում եւ անձնատուր իր մտմտուքներին՝ նորէն սկսում է դէպի աջ ու ձախ երերալ. մահը մի քուն է, մի քուն, որ գուցէ երազներով վրդովւած լինի։ Գերեզմանատան մէջ՝ մարդկային հողի առաջ՝ մեր մարմնական բնութեան սաստ յարակցութիւնները անդիմադրելի կերպով զզւեցնում են նրա երեւակայութիւնը, եւ նրա միտքը կամայ ակամայ հետապնդում է թէ մարդկային հողը ինչ տեղեր այլափոխումների շարքից է անցնում։ Այսպէս, Համլէտի մտածումները, երբ նա անձնատուր է իր խորհրդածական կեանքին, հազիւ թէ կարելի է իսկական մտածումներ համարել. այլ նրանք մի տեսակ մտա-

ցածրին գաղափարներ են, որոնք հալւում, նորէն կազմւում, նորէն հալւում են, յաւէտ փոփոխւելով պարագաների բերած ամեն հողմի հետ։ Համլէտ անընդունակ է որեւէ հաստատակամութեան։„

Համլէտի բնաւորութեան այս պատկերը ամենէն աւելի ընդհանրացածն է, մանաւանդ այն պատճառով, որ այս թէօրիան հիմնաւորւած է Շէքսպիրի բնագրից բերւած վկայութիւններով, եւ արդիւնք չէ լոկ երեւակայական տեսութիւնների, ինչպէս շատ շատեր, որ աւելորդ ենք համարում այստեղ յիշատակել։ Բայց կարելի՞ է արդեօք այդ պատկերը լիակատար համարել։ Պրոֆ. Բրադլէյ այդ կարծիքի չէ։ "Լիակատար չէ„, ասում է նա, "ոչ թէ այն պատճառով, որ այսինչ կամ այնինչ մանրամասնութիւնը պակասում է, այլ այն պատճառով, որ նա չէ համապատասխանում այն ընդհանուր տպաւորութեան, որ մենք ստանում ենք "Համլէտի„ ընթերցումից, եւ շատ բաներ թողնում է սակաւին չը բացատրւած։ Այդ թէօրիայով՝ Համլէտ անընդունակ է իր վրայ դրւած գործը ոչ էն է հանգամանքում, եւ ոչ էն է ժամանակում իրագործելու։ Դա նւաստացնում է Համլէտի պատկերը եւ այլանդակում է խաղը. որովհետեւ Համլէտ, համաձայն բնագրի բոլոր ցուցմունքներին՝ ի բնէ եւ ի ծնէ այդ տեսակ մարդ չէր. այլ մի մարդ էր, որ ուրիշ որ եւ է ժամանակ եւ տարբեր հանգամանքներում իր վրայ դրւած գործը կատարելու լիովին ընդունակ կը լինէր։ Ու իսկապէս նրա ամենամեծ անբախտութիւնն այն է, որ իր կեանքի մեծ տագնապը ճիշդ այնպիսի մի ժամանակ է վրայ հասնում, երբ ինքն անկարող է որ եւ է դիմադրութեան. երբ իր ամենաբարձր ձիրքերը՝ փոխանակ նրան օգնելու, ջլատում են նրան։ Ողբերգութեան այս կողմը բոլորովին անտես է արւած։ Համլէտի անվճռականութիւնը շատ ճշգրտօրէն նկարագրւած է, բայց պատճառն այն չէ, որ այդ թէօրիան տալիս է։ Ուղղակի եւ գլխաւոր պատճառը շատ մտածելու սովորական չափազանցութիւնը չէ, այլ մի մտային վիճակ, որ բոլորովին անորմալ էր, եւ արդիւնք որոշ հանգամանքների. — մի խոր մելամաղձութիւն։ Ճիշդ է, Համլէտի շատ մտածելու հակումը մեծ դեր է խաղացել այդ թախիծն առաջ բերելու մէջ, եւ այդ շաւղով՝ նպաստող պատճառն է եղել նրա անվճռականութեան։ Բայց միւս կողմից էլ, մելամաղձութիւնը,

արմատ ձգելուց յետոյ՝ ինքն էլ առաջ է բերել շատ մտածելու տրամաբանութիւն պահանջուած գործի վրայ. բայց մտածողական չափազանցութիւնն ուղղակի պատճառը չէր Համլէտի անվճռականանութեան, ոչ էլ միակ անուղղակի պատճառը։ Չորս վերջին արարուածների մէջ այդ տրամաբանութիւնը պէտք է նկատել որպէս հետեւանք նրա մտային դրութեան, ոչ որպէս պատճառ։

Այժմ մի քանի խօսք էլ այն տեսութեան մասին, որ շատ անգամ արտայայտուած է Համլէտի բնաւորութիւնը ուսումնասիրողների կողմից, որպէս թէ Համլէտի խենթութիւնը բոլորովին կեղծուած չէր, այլ մասամբ իրական էր։ Այս մասին Մաքէնզին (1780) մի շատ կարեւոր նկատողութիւն է անում։ “Շէքսպիրի երկու ողբերգութեան մէջ, ասում է նա, օրինակներ կան թէ կեղծուած խենթութեան եւ թէ՛ իսկական մտացնորութեան։ Երկու խաղերումն էլ մի եւ նոյն զանազանութիւնը պահուած է, եւ կեղծը իրականից նոյն մեթոդով տարբերուած է։ Լիրի երեւակայութիւնը անդադար դեգերում է իր աղջիկների ապերախտութեան եւ իր գահից հրաժարման շուրջը։ Օֆելիան, իր մտացնորութեան առաջին եռուզեռը դուրս թափելուց եւ մի քանի անկապ ու անհեթեթ խօսքերից յետոյ՝ հօր մահուան վերաբերող երգեր է միայն երգում։ Բայց Էդգար, “Լիր Արքայի“ մէջ, որ խենթութիւն է կեղծում, իր հոգու իսկական վիճակից եւ իսկական մտածութիւններից որչափ կարելի է հեռու է մնում, որպէս զի կասկածի տեղիք չը տայ։ Երբէք ոչ մի ակնարկութիւն չէ անում հայրական անգթութեան կամ որդիական անբախտութեան վրայ։ Եթէ Համլէտն էլ մտքով այնպէս առողջ լինէր, ինչպէս Էդգարը, նա երբէք մի բան չէր ասի, որ կասկածի պատճառ դառնար եւ մտածել տար, թէ իր հօրեղբօր արած որիկայութիւնը հասկացել է։ Բայց նրա մէջ զգացումն աւելի զօրեղ հանդիսանալով քան խոհեմութիւնը՝ միշտ դուրս է պոռթկում նրա ծպտումի միջից, այն ինչ պէտք է հաւատարիմ մնար իր նախապէս տուած որոշմանը, այսինքն անգիտութիւն ձեւացնէր, մինչեւ որ յարմար առիթը ներկայանար իր վրէժը լուծելու։„

Եւ իսկապէս մենք տեսնում ենք, որ Համլէտ այնքան վատ է կեղծում իր խենթութիւնը, որ թագաւորը նրա եւ Օֆելիայի խօ-

տակցութիւնը Թագաւից լսելուց յետոյ՝ ասում է, թէ Համլէտի ասածները, թէեւ քիչ անկապ, խենթի խօսքեր չեն։ Պոլոնիուս զարմանում է Համլէտի իմաստալից պատասխանների վրայ եւ Թագաւորի պայծառատեսութիւնը չունի՝ հասկանալու համար թէ դրանք կարող են կեղծւած խենթութեան խօսքեր լինել եւ ոչ իրական։ Համլէտն ինքը, լինելով այնպէս սրամիտ մարդ, ի հարկէ պիտի հասկանար որ իր խօսքերը կարող են կասկած յարուցել իր խենթութեան մասին։ Ի՞նչ էր ուրեմն նրան դրդում այդպիսի ալքներ արձակել, եթէ ոչ այն հանգամանքը որ չունենալով բաւական ինքնիշխանութիւն՝ նա բաց էր թողնում իր սրախօսութեան եւ մաղձոտ խորհրդածութեան սանձը։ Այդ բոլորը բաւական յատապար չէ՞ արդեօք որոշ յեղաշրջութեան նրա հոգեկան կեանքի մէջ։ Իր հօր ուրւականի անհետանալուց յետոյ մենախօսութեան ժամանակ՝ խօսելով իր գլխի մասին, անւանում է այն մի "խելայեղւած գնտակ"։ Չէ՞ որ այդ բանը նշանակում է որ նա իր մէջ զգում է մի որոշ այլայլում։

Որ Համլէտ մտքի նորման դրութեան մէջ չէր մանաւանդ իր հօր ուրւականը տեսնելուց յետոյ՝ այդ մասին կասկած չը կայ։ Այդ բանից առաջ էլ մենք գտնում ենք նրան, իր առաջին մենախօսութեան ժամանակ, աշխարհի ունայնութիւններից զզւած, ընկճւած, եւ ինքնասպանութեան գաղափարներով տարւած։ Բայց հօր ուրւականի յայտնութիւններն այնպիսի սաստիկ ցնցում են գործում նրա ցաւագար եւ արդէն թուլացած հոգու մէջ, որ կարելի է հաստատապէս ասել, թէ այնուհետեւ նա այլ եւս չէ վերադառնում իր հոգու նորման վիճակը։ Նրա ընդհանուր վարմունքը Օֆէլիայի հետ, Լաէրտի հետ ունեցած անտեղի տեսարանը գերեզմանատան մէջ եւ յետոյ նրա խոստովանութիւնը՝ թէ իր արածը խենթութեան արդիւնք էր, — ինչ որ չէ կարելի Համլէտի կողմից սուտ խաբէութիւն համարել, — աշխարհային յոռի կարգերի վրայ շարունակ որոճալու հիւանդագին հակումը, նրա կրկնւած գանգատները վատ երազների դէմ, — այդ բոլորն ապացոյցներ են ջղային այս անորմալ վիճակի։ Բայց որն է այն սահմանագլուխը, որ բաժանում է ջղային գրգռութեան մի անորման վիճակ իսկական խենթութեան ծայրագոյնից։ Շէքսպիր, գիտակից այս բնական շարունակու-

թեան, կամեցել է մեզ մութի մէջ թողնել, եւ մեզ թոյլ տալ որ ինքներս մեր հետեւութիւնները հանենք։

«Պատկերացրէք ձեր առաջ», գրում է Տէն, «որ երբ Համլէտն ասում է այս բառերը (լաւ, ծերուկ խլուրդ) նրա ատամները իրար են զարկւում, իր շապիկից աւելի գունատ է եւ ծնկները դողդողում են։ Նրա սաստիկ անձկութիւնը յանգում է մի ծիծաղի, որ շատ նման է ջղաձգութեան։ Այնուհետեւ Համլէտ միշտ այնպէս է խօսում, որպէս թէ մի քրոնիկ դարձած ջղագարութեան ենթակայ լինէր։ Ես ընդունում եմ որ նրա խենթութիւնը կեղծւած է. բայց նրա միտքը, ինչպէս մի դուռ, որի ծղնիները գալարել են, ամեն հողմից տարուբերւում եւ զարկւում է պատին՝ խօլ անճարպարանքով եւ աններդաշնակ ժխորով։ Այն ամեն տարօրինակ գաղափարները, աներեւոյթ անհեթեթութիւնները, չափազանցութիւնները, հեգնանքի հեղեղները որ նա թափում է — այդ բոլորը նա պէտք չունի փնտրելու։ Այդ բոլորը նա գտնում է հէնց իր մէջ։ Ինքն իր վրայ բռնանալու ճիգ գործ չէ դնում, այլ պարզապէս անձնատուր է լինում նրանց։ Պալատականների ներկայացման ժամանակ նա վեր է կենում, նստում է, ուզում է գլուխը դնել Օֆելիայի գոգը, դերասանների հետ է խօսում, խաղն է քննադատում հանդիսատեսների համար։ Նրա ջղերը լարւած են, նրա գրգռւած միտքը նման է մի ալեծուփ եւ ճարճատուն բոցի, որ բաւական կերակուր չէ գտնում իր շուրջը գտնւող բոլոր առարկաների մէջ, որոնց բոլորին էլ լափում է։ Երբ թագաւորը դիմակազերծ է լինում, Համլէտ սարսափելի կերպով ծիծաղում է. վճռւած է գործել սպանութիւնը։ Պարզ բան է որ այս վիճակը հիւանդութիւն է, եւ այսպիսի մարդը չէ կարող ապրել... Համլէտի երեւակայութիւնը խլում է նրանից այն առնութիւնը եւ կամքի ուժը, որով կարողանայ համբերատար գործել, եւ կանխամտածութեամբ սուրը մխել մի կուրծքի մէջ։ Այդպիսի բան նա կարող է անել մի միայն յանկարծական թելադրութեամբ. նա կարիք ունի մի բաղէական ոգեւորութեան. պէտք է ենթադրէ, որ թագաւորն արրասի ետեւն է, կամ թէ, տեսնելով որ ինքը թունաւորւած է, ձեռքի սուրը մի քիչ երկարացնէ թագաւորի կուրծքը մխելու համար։ Նա իր գործերի տէրը չէ. առիթն

է հրամայողը. չէ կարող մի ստանութիւն նախապատրաստել, այլ պէտք է անպատրաստից կատարէ։ Մի չափազանց վառ երեւակայութիւն սպառում է նրա բոլոր էներգիան՝ պատկերների կուտակումով եւ այն կատաղի ուժգնութեամբ, որ լափում է նրան։ Դուք կը տեսնէք նրա մէջ մի բանաստեղծի հոգին, որ ստեղծուած է ոչ թէ գործելու, այլ երազելու համար. որ մոլորւում է իր իսկ ստեղծած ֆանտազմերը դիտելու մէջ, որ երեւակայական աշխարհն այնքան յստակօրէն է տեսնում, որ նրա համար այլ եւս անկարելի է իրական աշխարհի մէջ մի դեր խաղալ. մի արտիստ, որին չար բախտը իշխան է ծնեցրել, եւ որին մի աւելի չար դիպուած ստիպում է մի ոճրագործութեան վրէժը լուծել. մի մարդ, որին բնութիւնը նշանակել է մի հանճար լինելու համար, բայց որին բախտը դատապարտում է խենթութեան եւ տարաբախտութեան։ Համլէտը Շէքսպիրն ինքն է, եւ Շէքսպիր, մի ամբողջ շարք պատկերներ նկարելուց յետոյ, որոնք բոլորն էլ իր դէմքի հետ որոշ նմանութիւն ունէին, նկարել է վերջ ի վերջոյ իր սեփական պատկերը, որ բոլորիցն աւելի սքանչելին է։”

Դժբախտաբար ստիպուած ենք կանգ առնել։ Համլէտի բնաւորութեան ուսումնասիրութիւնը հատորներ է լցրել եւ մենք մի կարճ յառաջաբանի մէջ սրանից աւելի տեղ չունինք։ Մենք յիշեցինք միայն այն կրիտիկները, որոնք ներկայացուցիչ էին որոշ թէօրիաների՝ զանց առնելով ուրիշ լաւերը եւ կարեւորները։

Ընթերցողը գուցէ իրաւամբ կ՚ասէ թէ այնու ամենայնիւ անկարելի եղաւ վերջնական կերպով եւ առանց մթացորդի լուծել „Համլէտի” առեղծուածը։ Այո, այդպէս է։ Մենք յիշեցինք Համլէտի հոգեբանութեան զանազան կողմերի նկարագրութիւնը, որոնք որոշ առնչութիւն ունէին իրարու հետ. բայց դրանք բոլորը միացած՝ չեն կազմում մի լիակատար պատկեր։ “Թող չը շտապենք ենթադրել” ասում է մեր յաճախ յիշած տաղանդաւոր կրիտիկ Դաուդէնը, “թէ մենք կարողացել ենք ճանաչել Համլէտի բոլոր “լեզուակները”, կարողացել ենք դուրս քաշել նրա “գաղտնիքի սիրտը”։ Պէտք չէ կարծել, թէ որ եւ է մի գաղափար, որ եւ է մեքենական մի խօսք կարող կը լինի մի օր լուծել խաղի ներկայացրած դժուարութիւնները, կամ թէ յանկարծ կը լուսաբանէ ամեն բան որ մութ է նրա մէջ։ Այդ

մթութիւնն ինքն էլ այս գեղարուեստական գործի մի կենսական մասն է. մի գործ, որ խօսում է ոչ թէ մի հարցի, այլ մի կեանքի մասին։ Եւ այդ կեանքի մէջ, այդ հոգու պատմութեան մէջ որ շարժւում է գիշերւայ եւ ցերեկւայ միջոցում գտնւող սահմանագլխի մշուշապատ գաւառներում — շատ բան կայ, ինչպէս իրական կեանքերի մէջ, որ դերեւ է հանում ամեն հարցուփորձ, որ խուսափում է ամեն քննութիւնից։ Ոչ այն ընդհանուր կատակլիզմը, որ սրբեց տարաւ մի քայքայուած իրակարգ եւ նրա տեղ հաստատեց մի նոր ու անմշակ աշխարհ, ոչ էլ Դանիական միապետութեան եւ մի այպականուած ընկերութեան տապալումը, եւ մի նոր միապետութեան ու աւելի առողջ քաղաքակրթութեան հաստատումն է, որ գլխաւորապէս հետաքրքրական է եղել Շէքսպիրի համար։ Համլէտի ողբերգութեան կենսական էութիւնը մի գաղափար չէ, ոչ էլ մի քաղաքական փիլիսոփայութիւն։ Այս սքանչելի ստեղծագործութիւնը աշխարհ է եկել այն խոր համակրութիւնից, որ Շէքսպիր տածել է դէպի մի անհատական հոգի, դէպի մի անձնական կեանք։„

Այնպէս թէ այնպէս, Շէքսպիր իր համար համակրելի մի անձնաւորութիւն իբրեւ օրինակ առած լինի, թէ իր հայեացքը դէպի ներփական հոգու խորքն ուղղած, իրական ապրում լինի Համլէտի հոգեկան վիճակը, թէ երեւակայութեան. յղացում՝ ամեն պարագայում նա ստեղծել է այնպէս, ինչպէս բնութիւնը միայն կարող է ստեղծել, — բարդ, բայց հարազատ։

Համլէտի մասին գոյացած մտապատկերքն այնքան մեծ է, որ մարդիկ խօսում են նրա վրայ, որպէս մի պատմական անձնաւորութեան վրայ։ Բրանդէս շատ սրամտօրէն նկատում է թէ Դանիայի թագաւորներից եւ իշխաններից ամենէն հանրածանօթը մի իշխան է, որ երբէք գոյութիւն չէ ունեցել։ Բայց մեզ համար նա գոյութիւն ունի, եւ աւելի իրական գոյութիւն, քան թէ աշխարհի թատերաբեմի վրայ աւելի մեծ դեր խաղացող պատմական դէմքեր։ Եւ այն ճառագայթումը, որ շրջապատում է այդ անունը, ոչ միայն դարերի ընթացքում չէ նսեմացել, այլ ամեն սերունդի եւ ամեն դարի հետ նոր փայլ է ստացել։

սակցութիւնը Թագաւորից լսելուց յետոյ՝ ասում է, թէ Համլէտի ասածները, թէեւ քիչ անկապ, խենթի խօսքեր չեն։ Պոլոնիուսը զարմանում է Համլէտի իմաստալից պատասխանների վրայ եւ Թագաւորի պայծառատեսութիւնը չունի՝ հասկանալու համար թէ դրանք կարող են կեղծուած խենթութեան խօսքեր լինել եւ ոչ իրական։ Համլէտն ինքը, լինելով այնպէս սրամիտ մարդ, ի հարկէ պիտի հասկանար որ իր խօսքերը կարող են կասկած յարուցել իր խենթութեան մասին։ Ի՞նչ էր ուրեմն նրան դրդում այդպիսի սլաքներ արձակել, եթէ ոչ այն հանգամանքը որ չունենալով բաւական ինքնիշխանութիւն՝ նա բաց էր թողնում իր սրախօսութեան եւ մաղձոտ խորհրդածութեան առիթը։ Այդ բոլորը բաւական յայտարար չէ՞ արդեօք որոշ յեղաշրջութեան նրա հոգեկան կեանքի մէջ։ Իր հօր ուրուականի անհետանալուց յետոյ մենախօսութեան ժամանակ՝ խօսելով իր գլխի մասին, անուանում է այն մի “խելայեղուած գնտակ„։ Չէ՞ որ այդ բանը նշանակում է որ նա իր մէջ զգում է մի որոշ այլայլում։

Որ Համլէտ մտքի նորմալ դրութեան մէջ չէր մանաւանդ իր հօր ուրուականը տեսնելուց յետոյ՝ այդ մասին կասկած չը կայ։ Այդ բանից առաջ էլ մենք գտնում ենք նրան, իր առաջին մենախօսութեան ժամանակ, աշխարհի ունայնութիւններից զզուած, ընկճուած, եւ ինքնասպանութեան գաղափարներով տարուած։ Բայց հօր ուրուականի յայտնութիւններն այնպիսի սաստիկ ցնցում են գործում նրա ցաւագար եւ արդէն թուլացած հոգու մէջ, որ կարելի է համարձակապէս ասել, թէ այնուհետեւ նա այլ եւս չէ վերադառնում իր հոգու նորմալ վիճակը։ Նրա ընդհանուր վարմունքը Օֆէլիայի հետ, Լաէրտի հետ ունեցած անտեղի տեսարանը գերեզմանատան մէջ եւ յետոյ նրա խոստովանութիւնը՝ թէ իր արածը խենթութեան արդիւնք էր, — ինչ որ չէ կարելի Համլէտի կողմից սուտ խաբէութիւն համարել, — աշխարհային յոռի կարգերի վրայ շարունակ արձակելու հիւանդագին հակումը, նրա կրկնուած գանգատները վատ երազների դէմ, — այդ բոլորն ապացոյցներ են ջղային այս անորմալ վիճակի։ Բայց որն է այն սահմանագլուխը, որ բաժանում է ջղային գրգռութեան մի անորմալ վիճակ իսկական խենթութեան ծայրայեղութիւնից։ Շէքսպիր, գիտակից այս բնական շարունակու-

թեան, կամեցել է մեզ մութի մէջ թողնել, եւ մեզ թոյլ տալ որ ինքներս մեր հետեւութիւնները հանենք։

«Պատկերացրէք ձեր առաջ», գրում է Տէն, «որ երբ Համլէտն ասում է այս բառերը (լաւ, ծերուկ խլուրդ) նրա ատամները իրար են զարկւում, իր շապկից աւելի գունատ է եւ ծնկները դողդողում են։ Նրա սաստիկ անձկութիւնը յանգում է մի ծիծաղի, որ շատ նման է ջղաձգութեան։ Այնուհետեւ Համլէտ միշտ այնպէս է խօսում, որպէս թէ մի քրոնիկ դարձած ջղագարութեան ենթակայ լինէր։ Ես ընդունում եմ որ նրա խենթութիւնը կեղծուած է. բայց նրա միտքը, ինչպէս մի դուռ, որի ծխնիները գալարուել են, ամէն հողմից տարուբերւում եւ զարկւում է պատին՝ խօլ աճապարանքով եւ աններդաշնակ ժխորով։ Այն ամէն առօրեակ գաղափարները, առերեւոյթ անհեթեթութիւնները, չափազանցութիւնները, հեգնանքի հեղեղները որ նա թափում է — այդ բոլորը նա պէտք չունի փնտռելու։ Այդ բոլորը նա գտնում է հենց իր մէջ։ Ինքն իր վրայ բռնած ճիգ գործ չէ դնում, այլ պարզապէս անձնատուր է լինում նրանց։ Պալատականի ներկայացման ժամանակ նա վեր է կենում, նստում է, ուզում է գլուխը դնել Օֆէլիայի գոգը, դերասանների հետ է խօսում, խաղն է քննադատում հանդիսատեսների համար։ Նրա ջղերը լարուած են, նրա գրգռուած միտքը նման է մի ալեծուփ եւ ճարճատուն բոցի, որ բաւական կերակուր չէ գտնում իր շուրջը գտնուող բոլոր առարկաների մէջ, որոնց բոլորին էլ լափում է։ Երբ թագաւորը դիմակազերծ է լինում, Համլէտ սարսափելի կերպով ծիծաղում է. վճռած է գործել սպանութիւնը։ Պարզ բան է որ այս վիճակը հիւանդութիւն է, եւ այսպիսի մարդը չէ կարող ապրել... Համլէտի երեւակայութիւնը խլում է նրանից այն սառնութիւնը եւ կամքի ոյժը, որով կարողանայ հանդարտ գործել, եւ կանխամտածութեամբ սուրը մխել մի կուրծքի մէջ։ Այդպիսի բան նա կարող է անել մի միայն յանկարծական թելադրութեամբ. նա կարիք ունի մի բռնէական ոգեւորութեան. պէտք է ենթադրէ, որ թագաւորն արրասի ետեւն է, կամ թէ, տեսնելով որ ինքը թունաւորուած է, ձեռքի սուրը մի քիչ երկարացնէ թագաւորի կուրծքը մխելու համար։ Նա իր գործերի տէրը չէ. առիթն

է հրամայողը. չէ կարող մի սպանութիւն նախապատրաստել, այլ պէտք է անպատրաստից կատարէ։ Մի չափազանց վառ երեւակայութիւն սպառում է նրա բոլոր էներգիան՝ պատկերների կուտակումով եւ այն կատաղի ուժգնութեամբ, որ լափում է նրան։ Դուք կը տեսնէք նրա մէջ մի բանաստեղծի հոգին, որ ստեղծուած է ոչ թէ գործելու, այլ երազելու համար. որ մոլորւում է իր իսկ ստեղծած ֆանտազմների դիտելու մէջ, որ երեւակայական աշխարհն այնքան յստակօրէն է տեսնում, որ նրա համար այլ եւս անկարելի է իրական աշխարհի մէջ մի դեր խաղալ. մի արարած, որին չար բախտը իշխան է ծնեցրել, եւ որին մի աւելի չար դիպուած ստիպում է մի ոճրագործութեան վրէժը լուծել. մի մարդ, որին բնութիւնը նշանակել է մի հանճար լինելու համար, բայց որին բախտը դատապարտում է խենթութեան եւ տարաբախտութեան։ Համլէտ Շէքսպիրն ինքն է, եւ Շէքսպիր, մի ամբողջ շարք պատկերներ նկարելուց յետոյ, որոնք բոլորն էլ իր դէմքի հետ որոշ նմանութիւն ունեն, նկարել է վերջ ի վերջոյ իր սեփական պատկերը, որ բոլորից աւելի սքանչելին է։„

Դժբախտաբար ստիպուած ենք կանգ առնել։ Համլէտի բնաւորութեան ուսումնասիրութիւնը հատորներ է լցրել եւ մենք մի կարճ յառաջաբանի մէջ սրանից աւելի տեղ չունենք։ Մենք յիշեցինք միայն այն կրիտիկները, որոնք ներկայացուցիչ էին որոշ թէօրիաների՝ զանց առնելով ուրիշ լաւերը եւ կարեւորները։

Ընթերցողը գուցէ իրաւամբ կ'ասէ թէ այնու ամենայնիւ անկարելի եղաւ վերջնական կերպով եւ առանց մնացորդի լուծել „Համլէտի„ առեղծուածը։ Այո, այդպէս է։ Մենք յիշեցինք Համլէտի հոգեբանութեան զանազան կողմերի նկարագրութիւնը, որոնք որոշ առնչութիւն ունեն իրարու հետ. բայց դրանք բոլորը միացած՝ չեն կազմում մի լիակատար պատկեր։ “Թող չը շտապենք ենթադրել„ ասում է մեր յաճախ յիշած տաղանդաւոր կրիտիկ Դաուդէնը, “թէ մենք կարողացել ենք ճանաչել Համլէտի բոլոր “լեզուակները„, կարողացել ենք դուրս քաշել նրա “գաղտնիքի սիրտը„։ Պէտք չէ կարծել, թէ որ եւ է մի գաղափար, որ եւ է մոգական մի խօսք կարող կը լինի մի օր լուծել խաղի ներկայացրած դժուարութիւնները, կամ թէ յանկարծ կը լուսաբանէ ամէն բան որ մութ է նրա մէջ։ Այդ

մթութիւնն ինքն էլ այս գեղարւեստական գործի մի կենսական մասն է. մի գործ, որ խօսում է ոչ թէ մի հարցի, այլ մի կեանքի մասին։ Եւ այդ կեանքի մէջ, այդ հոգու պատմութեան մէջ որ շարժւում է գիշերւայ եւ ցերեկւայ միջոցում գտնւող սահմանագլխի մշուշապատ գաւառներում — շատ բան կայ, ինչպէս իրական կեանքերի մէջ, որ դիւրաւ է հանւում ամեն հարցափորձ, որ խուսափում է ամեն քննութիւնից։ Ոչ այն ընդհանուր կատակերգը, որ սրբեց տարաւ մի քայքայուած իրակարգ եւ նրա տեղ հաստատեց մի նոր ու անմշակ աշխարհ, ոչ էլ Դանիական միապետութեան եւ մի ապականուած ընկերութեան տապալումը, եւ մի նոր միապետութեան ու աւելի առողջ քաղաքակրթութեան հաստատումն է, որ գլխաւորապէս հետաքրքրական է եղել Շէքսպիրի համար։ Համլէտի ողբերգութեան կենսական էութիւնը մի գաղափար չէ, ոչ էլ մի քաղաքական փիլիսոփայութիւն։ Այս սքանչելի ստեղծագործութիւնը աշխարհ է եկել այն խոր համակրութիւնից, որ Շէքսպիր տածել է դէպի մի անհատական հոգի, դէպի մի անձնական կեանք։„

Այսպէս թէ այնպէս, Շէքսպիր իր համար համակրելի մի անձնաւորութիւն իբրեւ օրինակ առած լինի, թէ իր հայեացքը դէպի սեփական հոգու խորքն ուղղած, իրական ապրում լինի Համլէտի հոգեկան վիճակը, թէ երեւակայութեան. յղացում՝ ամեն պարագայում նա ստեղծել է այնպէս, ինչպէս բնութիւնը միայն կարող է ստեղծել, — բարդ, բայց հարազատ։

Համլէտի մասին գրւած մատենագիրքն այնքան մեծ է, որ մարդիկ խօսում են նրա վրայ, որպէս մի պատմական անձնաւորութեան վրայ։ Բրանդէս շատ սրամտօրէն նկատում է թէ Դանիայի թագաւորներից եւ իշխաններից ամենէն հանրածանօթը մի իշխան է, որ երբէք գոյութիւն չէ ունեցել։ Բայց մեզ համար նա գոյութիւն ունի, եւ աւելի իրական գոյութիւն, քան թէ աշխարհի թատերաբեմի վրայ աւելի մեծ դեր խաղացող պատմական դէմքեր։ Եւ այն ճառագայթումը, որ շրջապատում է այդ անունը, ոչ միայն դարերի ընթացքում չէ նսեմացել, այլ ամեն սերունդի եւ ամեն դարի հետ նոր փայլ է ստացել։

թեան, կամեցել է մեզ մութի մէջ թողնել, եւ մեզ թոյլ տալ որ ինքներս մեր հետեւութիւնները հանենք։

«Պատկերացրէք ձեր առաջ», գրում է Տէն, «որ երբ Համլէտն ասում է այս բառերը (լաւ, ծերուկ խլուրդ) նրա ատամներն իրար են զարկւում, իր շապիկից աւելի գունատ է եւ ծնկները դողդողում են։ Նրա սաստիկ անձկութիւնը յանգում է մի ծիծաղի, որ շատ նման է ջղաձգութեան։ Այնուհետեւ Համլէտ միշտ այնպէս է խօսում, որպէս թէ մի քրոնիկ դարձած ջղագարութեան ենթակայ լինէր։ Ես ընդունում եմ որ նրա խենթութիւնը կեղծւած է. բայց նրա միտքը, ինչպէս մի դուռ, որի ծխնիները գալարւել են, ամեն հողմից տարուբերւում եւ զարկւում է պատին՝ խօլ անճարպարան-քով եւ աններդաշնակ ժխորով։ Այն ամեն տարօրինակ գաղափարները, աներեւոյթ անհեթեթութիւնները, չափազանցութիւնները, հեգնանքի հեղեղները որ նա թափում է — այդ բոլորը նա պէտք չունի փնտռելու։ Այդ բոլորը նա գտնում է հէնց իր մէջ։ Ինքն իր վրայ բուռն ճիգ գործ չէ դնում, այլ պարզապէս անձնատուր է լինում նրանց։ Պալատական ներկայացման ժամանակ նա վեր է կենում, նստում է, ուզում է գլուխը դնել Օֆելիայի գոգը, դերասաններին հետ է խօսում, խաղն է քննադատում հանդիսատեսների համար։ Նրա ջղերը լարւած են, նրա գրգռւած միտքը նման է մի ալեծուփ եւ ճարճատուն բոցի, որ բաւական կերակուր չէ գտնում իր շուրջը գտնւող բոլոր առարկաների մէջ, որոնց բոլորին էլ լափում է։ Երբ թագաւորը դիմակազերծ է լինում, Համլէտ տարափելի կերպով ծիծաղում է. վճռած է գործել սպանութիւնը։ Պարզ բան է որ այս վիճակը հիւանդութիւն է, եւ այսպիսի մարդը չէ կարող ապրել... Համլէտի երեւակայութիւնը խլում է նրանից այն տոկունութիւնը եւ կամքի ոյժը, որով կարողանայ հանդարտ գործել, եւ կանխամտածութեամբ սուրը մխել մի կուրծքի մէջ։ Այդպիսի բան նա կարող է անել մի միայն յանկարծական թելադրութեամբ. նա կարիք ունի մի րոպէական ազդեցութեան. պէտք է ենթադրէ, որ թագաւորն արրասի ետեւն է, կամ թէ, տեսնելով որ ինքը թունաւորւած է, ձեռքի սուրը մի քիչ երկարացնէ թագաւորի կուրծքը մխելու համար։ Նա իր գործերի տէրը չէ. առիթն

է հրամայողը. չէ կարող մի սպանութիւն նախապատրաստել, այլ պէտք է անպատրաստից կատարէ։ Մի չափազանց վառ երեւակայութիւն սպառում է նրա բոլոր էներգիան՝ պատկերների կուտակումով եւ այն կատաղի ուժգնութեամբ, որ լափում է նրան։ Դուք կը տեսնէք նրա մէջ մի բանաստեղծի հոգին, որ ստեղծուած է ոչ թէ գործելու, այլ երազելու համար. որ մոլորւում է իր իսկ ստեղծած ֆանտոմները դիտելու մէջ, որ երեւակայական աշխարհն այնքան յստակօրէն է տեսնում, որ նրա համար այլ եւս անկարելի է իրական աշխարհի մէջ մի դեր խաղալ. մի արտիստ, որին չար բախտը իշխան է ծնեցրել, եւ որին մի աւելի չար դիպուած ստիպում է մի ոճրագործութեան վրէժը լուծել. մի մարդ, որին բնութիւնը նշանակել է մի հանճար լինելու համար, բայց որին բախտը դատապարտում է խենթութեան եւ տարաբախտութեան։ Համլէտ Շէքսպիրն ինքն է, եւ Շէքսպիր, մի ամբողջ շարք պատկերներ նկարելուց յետոյ, որոնք բոլորն էլ իր դէմքի հետ որոշ նմանութիւն ունեն, նկարել է վերջ ի վերջոյ իր սեփական պատկերը, որ բոլորից աւելի սքանչելին է։„

Դժբախտաբար ստիպուած ենք կանգ առնել։ Համլէտի բնաւորութեան ուսումնասիրութիւնը հատորներ է լցրել եւ մենք մի կարճ յառաջաբանի մէջ դրանից աւելի տեղ չունենք։ Մենք յիշեցինք միայն այն կրիտիկները, որոնք ներկայացուցիչ էին որոշ թէօրիաների՝ զանց առնելով ուրիշ լաւերը եւ կարեւորները։

Ընթերցողը գուցէ իրաւամբ կ'ասէ թէ այնու ամենայնիւ անկարելի եղաւ վերջնական կերպով եւ առանց մնացորդի լուծել „Համլէտի„ առեղծուածը։ Այո, այդպէս է։ Մենք յիշեցինք Համլէտի հոգեբանութեան զանազան կողմերի նկարագրութիւնը, որոնք որոշ առնչութիւն ունեն իրարու հետ. բայց դրանք բոլորը միացած՝ չեն կազմում մի լիակատար պատկեր։ “Թող չը շտապենք ենթադրել„ ասում է մեր յաճախ յիշած տաղանդաւոր կրիտիկ Դաուդէնը, “թէ մենք կարողացել ենք ճանաչել Համլէտի բոլոր “լեզւակները„, կարողացել ենք դուրս քաշել նրա “գաղտնիքի սիրտը„։ Պէտք չէ կարծել, թէ որ եւ է մի գաղափար, որ եւ է մտքական մի խօսք կարող կը լինի մի օր լուծել խաղի ներկայացրած դժուարութիւնները, կամ թէ յանկարծ կը լուսաբանէ ամեն բան որ մութ է նրա մէջ։ Այդ

մթութիւնն ինքն էլ այս գեղարուեստական գործի մի կենսական մասն է. մի գործ, որ խօսում է ոչ թէ մի հարցի, այլ մի կեանքի մասին։ Եւ այդ կեանքի մէջ, այդ հոգու պատմութեան մէջ որ շարժւում է գիշերւայ եւ ցերեկւայ միջոցում գտնւող սահմանագծի մշուշապատ գաւառներում — շատ բան կայ, ինչպէս իրական կեանքերի մէջ, որ դերեւ է հանում ամեն հարցափորձ, որ խուսափում է ամեն քննութիւնից։ Ոչ այն ընդհանուր կատակլիզմը, որ սրբեց տարաւ մի քայքայուած իրակարգ եւ նրա տեղ հաստատեց մի նոր ու անմշակ աշխարհ, ոչ էլ Դանիական միապետութեան եւ մի ապականուած ընկերութեան տապալումը, եւ մի նոր միապետութեան ու աւելի առոյգ քաղաքակրթութեան հաստատումն է, որ գլխաւորապէս հետաքրքրական է եղել Շէքսպիրի համար։ Համլէտի ողբերգութեան կենսական էութիւնը մի գաղափար չէ, ոչ էլ մի քաղաքական փիլիսոփայութիւն։ Այս սքանչելի ստեղծագործութիւնը աշխարհ է եկել այն խոր համակրութիւնից, որ Շէքսպիր տածել է դէպի մի անհատական հոգի, դէպի մի անձնական կեանք։»

Այսպէս թէ այնպէս, Շէքսպիր իր համար համակրելի մի անձնաւորութիւն իբրեւ օրինակ առած լինի, թէ իր հայեացքը դէպի սեփական հոգու խորքն ուղղած, իրական ապրում լինի Համլէտի հոգեկան վիճակը, թէ երեւակայութեան յղացում՝ ամեն պարագայում նա ստեղծել է այնպէս, ինչպէս բնութիւնը միայն կարող է ստեղծել, — մութ, բայց հարազատ։

Համլէտի մասին գրուած մատենագիրքն այնքան մեծ է, որ մարդիկ խօսում են նրա վրայ, որպէս մի պատմական անձնաւորութեան վրայ։ Բրանդէս շատ սրամտօրէն նկատում է թէ Դանիայի թագաւորներից եւ իշխաններից ամենէն հանրածանօթը մի իշխան է, որ երբէք գոյութիւն չէ ունեցել։ Բայց մեզ համար նա գոյութիւն ունի, եւ աւելի իրական գոյութիւն, քան թէ աշխարհի թատերաբեմի վրայ աւելի մեծ դեր խաղացող պատմական դէմքեր։ Եւ այն ճառագայթումը, որ շրջապատում է այդ անունը, ոչ միայն դարերի ընթացքում չէ նսեմացել, այլ ամեն սերունդի եւ ամեն դարի հետ նոր փայլ է ստացել։

թեան, կամեցել է մեզ մութի մէջ թողնել, եւ մեզ թոյլ տալ որ ինքներս մեր հետեւութիւնները հանենք։

“Պատկերացրէք ձեր առաջ„, գրում է Տէն, “որ երբ Համլէտն ասում է այս բառերը (լաւ, ծերուկ խլուրդ) նրա ատամները իրար են զարկւում, իր շրթներից արիւն գալիս է եւ ծնկները դողդղում են։ Նրա սաստիկ անձկութիւնը յանգում է մի ծիծաղի, որ շատ նման է ջղաձգութեան։ Այնուհետեւ Համլէտ միշտ այնպէս է խօսում, որպէս թէ մի քրոնիկ դարձած ջղագարութեան ենթակայ լինէր։ Ես ընդունում եմ որ նրա խենթութիւնը կեղծած է. բայց նրա միտքը, ինչպէս մի դուռ, որի ծխնիները գալարել են, ամեն հողմից տարուբերւում եւ զարկւում է պատին՝ խօլ անճարտարանքով եւ աններդաշնակ ժխորով։ Այն ամեն տարօրինակ գաղափարները, առերեւոյթ անհեթեթութիւնները, չափազանցութիւնները, հեգնանքի հեղեղները որ նա թափում է — այդ բոլորը նա պէտք չունի փնտռելու։ Այդ բոլորը նա գտնում է հէնց իր մէջ։ Ինքն իր վրայ բուռն ճիգ գործ չէ դնում, այլ պարզապէս անձնատուր է լինում նրանց։ Պալատական ներկայացման ժամանակ նա վեր է կենում, նստում է, ուզում է գլուխը դնել Օֆէլիայի գոգը, դերասաններին հետ է խօսում, խաղն է քննադատում հանդիսատեսների համար։ Նրա ջղերը լարուած են, նրա գրգռուած միտքը նման է մի ալեծուփ եւ ճարճատուն բոցի, որ բաւական կերակուր չէ գտնում իր շուրջը գտնւող բոլոր առարկաների մէջ, որոնց բոլորին էլ լափում է։ Երբ թագաւորը դիմակազերծ է լինում, Համլէտ տարափելի կերպով ծիծաղում է. վճռած է գործել սպանութիւնը։ Պարզ բան է որ այս վիճակը հիւանդութիւն է, եւ այսպիսի մարդը չէ կարող ապրել... Համլէտի երեւակայութիւնը խլում է նրանից այն սառնութիւնը եւ կամքի ոյժը, որով կարողանայ հանդարտ գործել, եւ կանխամտածութեամբ սուրը մխել մի կուրծքի մէջ։ Այդպիսի բան նա կարող է անել մի միայն յանկարծական թելադրութեամբ. նա կարիք ունի մի րոպէական ոգեւորութեան. պէտք է ենթադրէ, որ թագաւորն պաստառի ետեւն է, կամ թէ, տեսնելով որ ինքը թունաւորուած է, ձեռքի սուրը մի քիչ երկարացնէ թագաւորի կուրծքը մխելու համար։ Նա իր գործերի տէրը չէ. առիթն

է հրամայողը. չէ կարող մի սպանութիւն նախապատրաստել, այլ պէտք է անպատրաստից կատարէ։ Մի չափազանց վառ երեւակայութիւն սպառում է նրա բոլոր էներգիան՝ պատկերների կուտակումով եւ այն կատաղի ուժգնութեամբ, որ լափում է նրան։ Դուք կը տեսնէք նրա մէջ մի բանաստեղծի հոգին, որ ստեղծուած է ոչ թէ գործելու, այլ երազելու համար. որ մոլորւում է իր իսկ ստեղծած ֆանտազիաները դիտելու մէջ, որ երեւակայական աշխարհն այնքան յստակօրէն է տեսնում, որ նրա համար այլ եւս անկարելի է իրական աշխարհի մէջ մի դեր խաղալ. մի արտիստ, որին չար բախտը իշխան է ծնեցրել, եւ որին մի աւելի չար դիպուած տալիս է մի ոճրագործութեան վրէժը լուծել. մի մարդ, որին բնութիւնը նշանակել է մի հանճար լինելու համար, բայց որին բախտը դատապարտում է խենթութեան եւ տարաբախտութեան։ Համլէտ Շէքսպիրն ինքն է, եւ Շէքսպիր, մի ամբողջ շարք պատկերներ նկարելուց յետոյ, որոնք բոլորն էլ իր դէմքի հետ որոշ նմանութիւն ունեին, նկարել է վերջ ի վերջոյ իր սեփական պատկերը, որ բոլորից աւելի սքանչելին է։„

Դժբախտաբար ստիպուած ենք կանգ առնել։ Համլէտի բնաւորութեան ուսումնասիրութիւնը հատորներ է լցրել եւ մենք մի կարճ յառաջաբանի մէջ սրանից աւելի տեղ չունինք։ Մենք յիշեցինք միայն այն կրիտիկները, որոնք ներկայացուցիչ էին որոշ թէօրիաների՝ զանց առնելով ուրիշ լաւերը եւ կարեւորները։

Ընթերցողը գուցէ իրաւամբ կ'ասէ թէ այնու ամենայնիւ անկարելի եղաւ վերջնական կերպով եւ առանց մնացորդի լուծել „Համլէտի„ առեղծուածը։ Այո, այդպէս է։ Մենք յիշեցինք Համլէտի հոգեբանութեան զանազան կողմերի նկարագրութիւնը, որոնք որոշ առնչութիւն ունին իրարու հետ. բայց դրանք բոլորը միացած՝ չեն կազմում մի լիակատար պատկեր։ “Թող չը շտապենք ենթադրել„ ասում է մեր յաճախ յիշած տաղանդաւոր կրիտիկ Դաուդէնը, “թէ մենք կարողացել ենք ճանաչել Համլէտի բոլոր “լեզուակները„, կարողացել ենք դուրս քաշել նրա “գաղտնիքի սիրտը„։ Պէտք չէ կարծել, թէ որ եւ է մի գաղափար, որ եւ է մոգական մի խօսք կարող կը լինի մի օր լուծել խաղի ներկայացրած դժուարութիւնները, կամ թէ յանկարծ կը լուսաբանէ ամէն բան որ մութ է նրա մէջ։ Այդ

մթութիւնն ինքն էլ այս գեղարուեստական գործի մի կենսական մասն է. մի գործ, որ խօսում է ոչ թէ մի հարցի, այլ մի կեանքի մասին։ Եւ այդ կեանքի մէջ, այդ հոգու պատմութեան մէջ որ շարժւում է գիշերւայ եւ ցերեկւայ միջոցում գտնւող սահմանագլխի մշուշապատ գաւառներում — շատ բան կայ, ինչպէս իրական կեանքերի մէջ, որ դերեւ է հանում ամեն հարցափորձ, որ խուսափում է ամեն քննութիւնից։ Ոչ այն ընդհանուր կատակլիզմը, որ սրբեց տարաւ մի քայքայուած իրակարգ եւ նրա տեղ հաստատեց մի նոր ու անմշակ աշխարհ, ոչ էլ Դանիական միապետութեան եւ մի ապականուած ընկերութեան տապալումը, եւ մի նոր միապետութեան ու աւելի առողջ քաղաքակրթութեան հաստատումն է, որ գլխաւորապէս հետաքրքրական է եղել Շէքսպիրի համար։ Համլէտի ողբերգութեան կենսական էութիւնը մի գաղափար չէ, ոչ էլ մի քաղաքական փիլիսոփայութիւն։ Այս սքանչելի ստեղծագործութիւնը աշխարհ է եկել այն խոր համակրութիւնից, որ Շէքսպիր տածել է դէպի մի անհատական հոգի, դէպի մի անձնական կեանք։„

Այսպէս թէ այնպէս, Շէքսպիր իր համար համակրելի մի անձնաւորութիւն իբրեւ օրինակ առած լինի, թէ իր հայեացքը դէպի ներփական հոգու խորքն ուղղած, իրական ապրում լինի Համլէտի հոգեկան վիճակը, թէ երեւակայութեան․ յղացում՝ ամեն պարագայում նա ստեղծել է այնպէս, ինչպէս բնութիւնը միայն կարող է ստեղծել, — բարդ, բայց հարազատ։

Համլէտի մասին գրուած մատեաններն այնքան մեծ է, որ մարդիկ խօսում են նրա վրայ, որպէս մի պատմական անձնաւորութեան վրայ։ Բրանդէս շատ սրամտօրէն նկատում է թէ Դանիայի թագաւորներից եւ իշխաններից ամենէն հանրածանօթը մի իշխան է, որ երբէք գոյութիւն չէ ունեցել։ Բայց մեզ համար նա գոյութիւն ունի, եւ աւելի իրական գոյութիւն, քան թէ աշխարհի թատերաբեմի վրայ աւելի մեծ դեր խաղացող պատմական դէմքեր։ Եւ այն ճառագայթումը, որ շրջապատում է այդ անունը, ոչ միայն դարերի ընթացքում չէ նսեմացել, այլ ամեն սերունդի եւ ամեն դարի հետ նոր փայլ է ստացել։

## ԳՈՐԾՈՂ ԱՆՁԵՐ

*ԿԼԱՒԴԻՈՍ, Դանեմարքայի Թագաւոր:*
*ՀԱՄԼԷՏ, Որդի նախկին Թագաւորի:*
*ՓՈՐՏԻՆԲՐԱՍ, Իշխան Նորվեգիայի:*
*ՀՈՐԱՑԻՕ, Բարեկամ Համլէտի:*
*ՊՈԼՈՆԻՈՒՍ, Մեծ Սենեկապետ:*
*ԼԱԷՐՏ, Նրա որդին:*
*ՎՈԼՏԻՄԱՆԴ*
*ԿՈՌՆԵԼԻՈՒՍ*
*ՌՈԶԵՆԿՐԱՆՑ*
*ԳԻԼԴԵՆՇՏԵՐՆ* } *Պալատականներ:*
*ՕԶՐԻԿ*
*ՄԻ ԱԶՆՈՒԱԿԱՆ*
*ՄԻ ՔԱՀԱՆԱՅ:*
*ՄԱՐՑԷԼԼՈՍ*
*ԲԵՌՆԱՐԴՕ* } *Սպաներ:*
*ՓՐԱՆՑԻՍԿՕ, Մի Զինուոր:*
*ՌԷՅՆԱԼԴՕ, Ծառայ Պոլոնիուսի:*
*ՄԻ ՀԱՐԻՒՐԱՊԵՏ:*
*ԱՆԳԼԻԱՅԻ ԴԵՍՊԱՆՆԵՐԸ:*
*ԴԵՐԱՍԱՆՆԵՐ:*
*ԵՐԿՈՒ ԽԵՂԿԱՏԱԿ, Որպէս Գերեզմանափոր:*
*ԳԵՐՏՐՈՒԴ, Թագուհի Դանեմարքայի, Մայր Համլէտի:*
*ՕՖԷԼԻԱ, Դուստր Պոլոնիուսի:*

*Ազնուականներ, Պալատական Տիկիններ, Սպաներ, Զինուորներ, Նաւաստիներ, Սուրհանդակներ եւ Սպասաւորներ:*

*Համլէտի Հօր Ուրուականը:*

*Տեսարանը՝ Էլսինորում:*

# ՀԱՄԼԵՏ

## ԻՇԽԱՆ ԴԱՆԻՄԱՐՔԱՑԻ

---

## ԱՐԱՐՎԱԾ ԱՌԱՋԻՆ

---

### ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Էլսինոր. մի հարթավայր դղյակի առաջ.*
*Ֆրանցիսկոն պահակ է կանգնած. գալիս է Բեռնարդոն:*

*Բեռն.* Ո՞վ է։
*Ֆրան.* Ոչ, դու ինձ ասա. կաց, յայտնիր ով ես։
*Բեռն.* Շա՛տ ապրի արքան։
*Ֆրան.* Բեռնարդո՞։
*Բեռն.* Ինքը։
*Ֆրան.* Ճշտապահությամբ ձեր ժամին եկաք։
*Բեռն.* Տասներկուն զարկեց. գնա անկողին, գնա, Ֆրանցիսկո։
*Ֆրան.* Շնորհակալ եմ որ արձակում եք.
Սաստիկ ցուրտ է, սիրտս էլ տխուր է։
*Բեռն.* Պահպանությունդ լավ հանգիստ անցավ։
*Ֆրան.* Մուկ էլ չը շարժվեց։
*Բեռն.* Լավ, բարի գիշեր.
Եթե հանդիպես Հորացիոյին կամ Մարցելլոսին,
Իմ այս գիշերվա պահընկերներին, ասա թող շուտ գան։
*Ֆրան.* Նրանք են կարծեմ։ — Կաց, էհէյ, ո՞վ է։

Գալիս են Հորացիոն և Մարցելլոսը։

*Հոր.* Հայրենակիցներ։
*Մարց.* Եվ հարկատուներ Դանիայի արքայի։

Ֆրան. Ձեզ բարի գիշեր։
Մարց. Ողջ՜, գնաս բարով, դու պարկեշտ զինուոր։ Քեզ ո՞վ արձակեց։
Ֆրան. Բեռնարդոն ինքը անցաւ իմ տեղը. Ձեզ բարի գիշեր։
Մարց. Բեռնա՛րդո։
Բեռն. Ասա, Հորացիոն է դա։
Հոր. Նրա մի մասը։
Բեռն. Բարով ես եկել, Հորացիո. բարով, ազնիւ Մարցելլոս։
Մարց. Այն բանն այս գիշեր երեւա՞ց նորէն։
Բեռն. Ոչինչ չեմ տեսել։
Մարց. Հորացիոն ասում է, թէ դա մեր մտքի պատրանքն է միայն,
Եւ չէ կամենում հաւատ ընծայել մեր ասածներին,
Այն զարհուրելի տեսիլքի մասին,
Որ երկու անգամ մեր աչքով տեսանք.
Հէնց այդ պատճառով խնդրեցի նրան, որ ինքն էլ մեզ հետ
Հսկէ այս գիշեր րոպէ առ րոպէ,
Որ եթէ նորէն այն տեսիլքը գայ,
Ինքն էլ հաստատէ մեր տեսածները, եւ խօսէ հետը։
Հոր. Բա՛հ, երբեք չի գայ։
Բեռն. Թող մի քիչ նստենք,
Եւ մէկ անգամ էլ յարձակում գործենք ականջներիդ վրայ,
Որոնք այնպէս խիստ ամրապնդուած են մեր պատմածի դէմ,
Որ երկու գիշեր ինքներըս տեսանք։
Հոր. Լաւ, եկէք նստենք.
Եւ թող Բեռնարդոն խօսէ այդ մասին։
Բեռն. Այս վերջին գիշեր,
Երբ այն բեւեռից դէպի արեւմուտք գնացող աստղը
Իր շրջանն արել, եւ լոյս էր տալիս այն երկնամասին,
Ուր փայլում է այժմ, Մարցելլոսն ու ես,
Ճիշդ երբ որ զանգը զարկում էր մէկը...

Գալիս է Ուրուականը։

Մարց. Սո՛ւս, լռի՛ր, նայի՛ր, գալիս է կրկին։
Բեռն. Նոյն կերպարանքով ինչ մեռած արքան։

Մարց. Դու գիտուն մարդ ես, խոսիր նրա հետ, Հորացիո։
Բեռն. Չէ՞ որ նման է նա թագավորին. նայիր, Հորացիո։
Հոր. Իսկ և իսկ նման. ահ ու զարմանքով լցնում է դա ինձ։
Բեռն. Կարծես ուզում է որ իր հետ խոսեն։
Մարց. Հարց տուր, Հորացիո։
Հոր. Ի՞նչ ես դու արդյոք, որ յափշտակում ես գիշերվա այս ժամը
Եվ այս գեղաշուք ռազմական ձևը,
Որով շրջում էր Դանիմարքայի հանգուցյալ տերը։
Յանուն երկնքի, պարտադրում եմ քեզ, խոսիր։
Մարց. Վշտացավ։
Բեռն. Նայիր, ծանրաքայլ հեռանում է նա։
Հոր. Կանգ, խոսիր, խոսիր. պարտադրում եմ քեզ, կանգ առ և խոսիր։

Ուրվականը դուրս է գնում։

Մարց. Գնաց. չէ ուզում մեզ պատասխանել։
Բեռն. Տեսա՞ր, Հորացիո. գույնդ թռել է և դողդողում ես.
Չէ՞ որ սա միայն մտքի պատկերք չէ։
Լավ, ի՞նչ ես կարծում այս բանի մասին։
Հոր. Աստուածըս վկայ, երբեք ես դրան չէի հաւատայ
Առանց աչքերիս անխաբ, իրատես վկայութեանը։
Մարց. Չէ՞ որ նման է նա թագավորին։
Հոր. Ինչպես ինքդ քեզ,
Եվ ճիշտ այսպես էր այն իսկ զրահը, որ նա հագել էր,
Երբ այն փառամոլ Նորվեգիացու դեմ կռվի դուրս եկավ.
Եվ ճիշտ այս կերպով ունքը պռստեց՝ երբ թունդ վեճի մեջ
Այն սահնակ հեծած Լեհացիներին տապալեց գետին
Սառույցի վրայ։ Զարմանալի է։
Մարց. Երկու անգամ էլ սրանից առաջ, այս մեռեալ ժամին՝
Ռազմական քայլով եկել անցել է պահակի մոտից։
Հոր. Ինչ յատուկ մտքով գործելու համար, այդ դեռ չը գիտեմ.
Բայց իմ կարծիքի ընդհանուր հակումն ու սլացքն այն է,
Որ դա գուժում է մի մեծ սասանում մեր պետության մեջ։
Մարց. Լավ, նստենք, և թող ինձ պատմի ով որ տեղեակ է,

*Թէ ինչ միտք ունի այս խիստ ուշադիր հսկողութիւնը,*
*Որ ամէն գիշեր տանջում է երկրի հպատակներին.*
*Ինչու համար են ամեն օր այսքան թնդանօթ ձուլում,*
*Եւ ռազմամթերք գնում օտարից.*
*Ինչու են այսպէս բանի բանեցնում նաւագործներին,*
*Որոնց չարաչար աշխատութիւնը*
*Կիրակին էլ օրից չէ զանազանում.*
*Ի՞նչ է պատրաստւում, որ այս քրտնաթոր աճապարանքը,*
*Դարձնում է գիշերն օրւայ զուգակից աշխատաւորը.*
*Ո՞վ է կարող ինձ տեղեկութիւն տալ։*

Հոր. *Այդ ես կարող եմ. գոնէ այսպիսի մի փսփսուք կայ։*
*Մեր վերջին արքան, որի պատկերը այժմ երեւաց,*
*Ինչպէս լաւ գիտէք, նախկին Փորտինբրաս Նորվեգիացուց,*
*Որն իր նախանձոտ գոռոզութիւնից խթահարուած էր,*
*Ասպարէզ կանչուեց։ Այդ մենամարտում մեր արի Համլէտն —*
*Ինչպէս որ նրան ծանօթ աշխարհի այս բոլոր մասում*
*Ճանաչում էին — յաղթեց ու սպանեց այն Փորտինբրասին.*
*Եւ նա զօրութեամբ կնքուած դաշնագրի, որ թէ՛ օրէնքով*
*Թէ՛ ասպետական կարգ ու կանոնով վաւերացուած էր,*
*Իր տիրած հողերն ու կեանքն էլ հետը տուժեց յաղթողին։*
*Մեր թագաւորն էլ նոյն չափով հողեր գրաւ էր դրել,*
*Որ Փորտինբրասին պիտի հասնէին՝ եթէ նա յաղթէր.*
*Ինչպէս իր հողերն, նոյն պայմանագրով, որոշ յօդուածով*
*Համլէտին ընկան։ Եւ այժմ, պարոն, փոքր Փորտինբրասը*
*Անփորձ եռանդով վառուած ու լցուած՝*
*Նորվեգիայի սահմանների վրայ՝ այստեղ այնտեղից*
*Մի խումբ քաջասիրտ բախտախնդիրներ իր շուրջն է խմբել,*
*Որոնք փոխարէն հաց ու ապրուստի,*
*Պատրաստ են փորձել մի խիզախ ձեռնարկ, որից բան դուրս գայ.*
*Եւ դա չէ՛ այլ ինչ — որպէս յայտնի է մեր պետութեանը —*
*Եթէ ոչ, զէնքով եւ բռնի ուժով յետ խլել մեզնից*
*Այն բոլոր հողերն որ հայրը տուժեց։*
*Այս է, կարծում եմ, մեր պատրաստութեան բուն նպատակը,*

Մեր հսկողութեան ղրղապատճառը,
Եւ երկրի բոլոր այս հապշտապի եւ իրարանցման
Բուն շարժառիթը։

Բեռն. Ես էլ կարծում եմ, որ այդ է միայն, եւ ոչ ուրիշ բան.
Եւ հէնց դրա համար է գալիս,
Որ չարագուշակ այս ոգին զինուած ճեմում անցնում է
Պահակի մօտից՝ ճիշդ յար եւ նըման այն թագաւորին,
Որ այս կռիւների պատճառն էր եւ է՛։

Հոր. Մի հիւլէ է դա մեր մտքի աչքը աղօտացնելու.
Այն օրերի մէջ, երբ Հռովմ հասել էր փառքի գագաթին,
Հզօր Յուլիոսի մահից քիչ առաջ՝
Շիրիմներն իրենց վարձակալներից դատարկւում էին,
Եւ մեռելները, պատանուած, Հռովմի փողոցների մէջ
Թոթովում էին եւ աղաղակում.
Աստղեր դուրս եկան՝ հրեղէն գէսերով. արեան ցօղ իջաւ,
Եւ խանգարում կար արեգակի մէջ։ Այն տամուկ աստղը,
Որ ներգործում է Նեպտունի ահեղ պետութեան վըրայ,
Այնպէս հիւանդ էր իր խաւարումից,
Որ կարծես մօտ էր աշխարհանցումը։
Այժմ էլ նոյնպիսի արհաւիրքների նախազուշակներ,
Առաջընթացներ որ միշտ կանխում են բախտի քայլերին,
Եւ նախերգանք են գալիք աղէտի,
Երկինքն ու երկիրն արդէն ցոյց տուին մեր երկրամասին
Եւ ժողովրդին։ Բայց յո՛ւշ. մտիկ տուր. գալիս է նորէն։

Ուրուականը գալիս է կրկին։

Ճամբան կը կտրեմ՝ թէկուզ՝ շանթէ ինձ.
—Կանգ առ, ո՛վ պատիրք, եթէ մի հնչիւն կամ թէ ձայն ունիս,
Խօսիր ինձ.
Եթէ անելու մի բարի բան կայ,
Որ կարողանայ սփոփանք տալ քեզ, եւ ինձ թողութիւն,
Խօսիր ինձ.
Եթէ գիտակ ես երկրիդ նահհին,

Որից, թերեւըս, կանխագիտութեամբ կարենայ խոյս տալ,
Օ՛հ, խօսի՛ր։
Եթէ կեանքիդ մէջ բռնութեամբ կորզած գանձեր ես խորել
Գետնի արգանդում, որոնց պատճառով, ինչպէս ասում են,
Մեռնելուց յետոյ դուք ոգիներդ ելնում շրջում էք,
Ասա՛, կա՛ց, խօսի՛ր։ — Կտրի՛ր առաջը, Մարցելըս։

Աքլորը կանչում է։

Մարց. Զարկեմ գեղարդովս։
Հոր. Եթէ չը կանգնի, զարկի՛ր։
Բեռն. Այստեղ է։
Հոր. Այստեղ է։

Ուրուականը չքանում է։

Մարց. Գնաց·
Մենք վատ ենք վարւում՝ այսպէս վեհափառ մի էակի հետ
Բռնադատութեան մեր այս ցոյցերով։
Նա օդի նման անխոցելի է,
Եւ մեր ընդունայն զարկերը՝ միայն չարամիտ հեգնանք։
Բեռն. Խօսելու վրայ էր, երբ որ աքլորը կանչել սկսաւ։
Հոր. Եւ նա չքացաւ ինչպէս յանցագործն ահաւոր կոչից։
Լսել եմ, աքլորն, այդ առաւօտեայ շեփորահարը
Իր բարձրահնչիւն եւ զիլ հագագով
Զարթեցընում է օրւայ աստուծուն.
Եւ նրա ձայնից՝ թափառաշրջիկ բանդախոյս ոգին,
Ծովի մէջ լինի թէ կրակի մէջ, երկրում թէ օդում,
Աճապարում է դէպի իր բանդը.
Դրա ճշդութեան այս ներկայ դէպքն էլ ապացոյց եղաւ։
Մարց. Այո, չքացաւ աքլորի կանչից.
Ոմանք ասում են թէ միշտ, երբ մօտ է այն եղանակը,
Երբ որ մեր Փրկչի ծընունդն է տօնւում,
Այգի թռչունը երգում է անվերջ ամբողջ գիշերը.
Ասում են այլ եւս ոչ մի ուրուական չէ կարող դուրս գալ,

Ու գիշերները առողջարար են, 161
Մոլորակները էլ չեն հարուածում,
Էլֆը չէ թովում, ոչ էլ վհուկը կարող է դիւթել՝
Այնպէս սրբազան եւ շնորհալից ժամանակ է այն։ 164

Հոր. Ես էլ լսել եմ, եւ հաւատում եմ մասամբ այդ բանին.
Բայց մտիկ տուէք, Արեւածագը, վարդ պատմուճանով,
Ճեմում է այնտեղ՝ այն արեւելեան սարի ցօղի վրայ։
Վերջ տանք ուրեմըն մեր պահպանութեան. եւ, թէ ինձ լսէք՝
Գընանք եւ յայտնենք մեր այս տեսածը իշխան Համլէտին.
Կեանքովըս երդւում, այս ուրուականը որ համր է մեզ հետ,
Անշուշտ կ'ուզենայ նորա հետ խօսել։ 171
Համաձայն էք դուք որ լուր տանք նորան՝
Դրդուած մեր սիրուց, որպէս եւ պարտքից։

Մարց. Լաւ, այդպէս անենք, եւ ես լաւ գիտեմ թէ այս առաւօտ
Որտեղ կարող ենք շատ յարմարութեամբ հանդիպել նորան։
175

գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի սրահ Արքայի պալատում. Փողեր.*

*Գալիս են Թագաւորը, Թագուհին, Համլէտ, Պոլոնիուս, Լաէրտ, Վոլտիմանդ, Կոռնելիուս, Ազնուականներ եւ Սպասաւորներ:*

Թագ. Թէեւ մեր Համլէտ սիրելի եղբօր մահուան յիշատակը
Թարմ է տակաւին, եւ մեզ պատշաճ էր վշտով համակուել,
Ու պէտք էր համայն մեր պետութիւնը
Մէկ ճակատ դառնար ցաւից կծկուած՝
Բայց դատողութիւնն այնպէս արած դէմ պայքար է մղել,
Որ մենք աւելի խոհական վշտով յիշում ենք նորան, 6
Առանց ինքներըս մեզ մոռանալու։
Այս պատճառով էլ՝ մեր նախկին քրոջն, այժմեան թագուհուն,

Եւ այս ռազմակուռ թագաւորութեան գահընկերուհուն,
Թող այսպէս ասենք, ճնշուած հրճուանքով,
Մէկ արտասուաթոր, մէկ ուրախ աչքով,
Թաղման հանդէսում ուրախանալով, հարսանիքում լալով,
Ցաւ ու ցնծութիւն զոյգ նժարներում հաւասար կշռած՝
Կնութեան առինք. Եւ այս բանի մէջ անտես չենք արել
Աւելի խոհեմ ձեր խորհուրդները,
Որ ազատօրէն մեզ հաղորդեցիք գործի ընթացքում:
Բոլորի համար շնորհակալութիւն:
Այժմ ուրիշ հարց կայ, որ ձեզ յայտնի է. փոքր Փորտինբրասը,
Մեր արժանիքը չափազանց նուազ գնահատելով,
Կամ թէ կարծելով, որ մեր սիրելի եղբօր մեռնելով
Մեր պետութիւնը պառակտուած է եւ կազմալուծուած,
Դրան կցելով առաւելութեան իր սին երազը՝
Համարձակուել է մեզ մի պատգամով անհանգիստ անել
Ետ պահանջելով այն կալուածները,
Որ նրա հայրը օրէնքի բոլոր երաշխիքներով,
Տուժել է յօգուտ մեր կորիճ եղբօր: Այս նրա մասին.
Այժմ գանք մենք մեզ, եւ մեր գումարած ներկայ ժողովին.
Ահա մեր գործը. այստեղ գրել ենք ծերուկ Նորվէգին,
Որ հօրեղբայրն է այս Փորտինբրասի,
Եւ անկարացած, անկողնում ընկած՝
Իր եղբօր որդու մտադրութիւնից լուր անգամ չունի,
Որ կասեցնէ նրա ձեռնարկի շարունակումը.
Քանզի իր բոլոր զօրաժողովը, թւով ու կազմով,
Համախմբուած է նրա սեփական հպատակներից.
Եւ ահա մենք ձեզ, բարի Կոռնելիուս, եւ ձեզ, Վոլտիմանդ,
Պաշտօն ենք տալիս տանել ողջոյններս ծեր Նորվեգիացուն.
Բայց չենք տալիս ձեզ ուրիշ անձնական լիազօրութիւն
Բանակցութիւններ վարելու իր հետ, աւելի քան այն,
Ինչ որ մանրամասն այս յօդուածները ձեզ արտօնում են:
Բարի ճանապարհ, թող ձեր շտապը ապացոյց լինի
Ձեր անձնուիրութեան:

Կոռ. եւ Վոլ. Պատրաստ ենք թէ այս, թէ ամեն բանում ապացուցել այդ։
Թագ. Տարակոյս չունինք. բարի ճանապարհ։

Վոլտիմանդ եւ Կոռնելիոս դուրս են գնում։

Եւ այժմ, Լաէրտ, դու ինչ խօսք ունիս.
Ասացիր ինձնից մի խնդրանք ունիս. ինչ է այդ, Լաէրտ.
Չես կարող խօսել բանաւոր կերպով Դանիոյ արքային,
Եւ ի զուր անցնի։ Ինչ բան կարող ես հայցել ինձանից,
Որ իսկոյն չըտամ որպէս իմ ընծան, ոչ քո խնդրանքը։
Գլուխը սրտին այնպէս մօտիկ չէ,
Կամ ձեռքը բերանին այնպէս ծառայող,
Ինչպէս Դանիական գահը քո հօրըդ։
Ասա ինձ, Լաէրտ, ինչ է փափաքըդ։
Լա. Ողորմած տէր իմ,
Ձեր թոյլտուութիւնն ու բարի շնորհը Ֆրանսիա դառնալու,
Ուրկից թէպէտեւ մեծ յօժարութեամբ ես այստեղ եկայ
Ձեր թագադրութեան առթիւ յարգանքըս մատուցանելու,
Բայց այժմ այդ պարտքըս կատարելուց յետ՝
Խոստովանում եմ որ բոլոր խոհերս ու տենչանքներըս
Ձգտում են կրկին դէպի Ֆրանսիա, եւ խոնարհւում են
Ձեր ներողամիտ թոյլտուութիւնը հայցելու համար։
Թագ. Արդեօք հօրիցըդ հրաման առել ես. նա՛ ինչ է ասում։
Պոլ. Տէր իմ, աշխատաջան թախանձանքներով նա կորզեց ինձնից
Դանդաղ հրամանըս. եւ վերջ ի վերջոյ ես ստիպուեցայ
Դըրոշմել դժկամ հաւանութիւնըս իր կամքի վըրայ.
Խնդրում եմ, տէր իմ, թոյլ տուէք գընայ։
Թագ. Ընտրիր պատեհ ժամ, Լաէրտ. տէր եղիր քո ժամանակիդ։
Եւ բարի ձիրքերդ թող գործածեն այն ըստ քո հաճոյքին։
Իսկ այժմ, Համլէտ, իմ եղբօր որդի, եւ նոյն իսկ որդի...
Համ. (Առանձին) Մի քիչ աւելի քան եղբօր որդի, պակաս քան որդի։
Թագ. Ինչ ասել է այդ որ դեռ թուխպերը կախուած են վըրադ։
Համ. Այդպէս չէ, տէր իմ. չափից աւելի արեւի տակ եմ։
Թագհ. Սիրելի Համլէտ, դէն ձգիր քեզնից այդ մըռայլ գոյնը,

Եւ թող քո աչքը բարեկամի պէս նայէ Դանիային։
Հերիք է այդպէս կախուած կոպերով
Ազնիւ ծընողիդ որոնես հողում.
Դու գիտես որ դա առօրեայ բան է.
Ով որ ապրում է պէտք է եւ մեռնի,
Անցնելով կեանքից ի յաւերժութիւն։

Համ. Այդպէս է, տիկին, սովորական բան է։

Թագ. Եթէ այդպէս է, ինչու է դա քեզ անսովոր թըւում։

Համ. Թըւո՞ւմ, ոչ, տիկին. այլ է. չըգիտեմ «թըւումն» ինչ բան է։
Ոչ մելանագոյն վերարկուս միայն, սիրելի մայր իմ,
Ոչ հանդիսաւոր սեւ հանդերձները,
Ոչ բուռըն շունչի հողմային հեւքը,
Եւ ոչ աչքերի յորդահոս գետը,
Ոչ էլ երեսի վշտահար տեսքը,
Կսկիծի բոլոր ձեւ ու կերպերի, նշանների հետ
Կարող են երբէք հարազատօրէն ներքինըս յայտնել.
Դըրանք բոլորն էլ, ճիշդ է, թըւում են.
Դըրանք բոլորն էլ բաներ են, որ մարդ կարող է խաղալ.
Բայց այստեղ ներսըս այնպիսի բան կայ, որ անց է ցոյցից։
Իսկ սըրանք վշտի պաճուճանքն են լոկ եւ արդուզարդը։

Թագ. Շատ սիրալիր է, եւ սրտիդ համար պատուաբեր, Համլէտ,
Որ վճարում ես սուգի պարտքերըդ հանգուցեալ հօրըդ.
Բայց պէտք է գիտնաս, որ հայրըդ նոյնպէս կորցըրեց մի հայր,
Այդ կորած հայրն էլ կորցրեց իրենը.
Եւ վերապրողը՝ իր որդիական պարտականութեամբ՝
Պէտք է սուգ պահէ որոշ ժամանակ.
Բայց յարատեւել յամառ վշտի մէջ՝ նշանակում է
Սատանիկ ամբարիշտ կամակորութիւն. ոչ առնացի սուգ.
Դա ցոյց է տալիս երկնքի հանդէպ ապստամբ մի կամք,
Մի սիրտ անպաշտպան, մի միտք անհամբեր,
Եւ պարզ ու անուս հասկացողութիւն. քանի որ մի բան,
Որ, գիտենք, նոյնչափ սովորական է եւ պէտք է լինի
Որչափ ամենէն հասարակ բանը մեր խելքի առաջ՝

Ինչո՞ւ խառնվկան գժկամակութեամբ մեր սրտին առնենք։
Չէ՛, յանցանք է դա երկնքի հանդէպ,
Յանցանք է նոյնիսկ մեռեալների դէմ, եւ բնութեան դէմ,
Եւ դատողութեան առաջ՝ անհեթեթ,
Որի առօրեայ բնաբանն է հայրերի մահը,
Եւ որն առաջին դիակից՝ մինչեւ այսօր մեռնողը
Աղաղակում է «Այսպէս է կարգը»։
Դէն ձգիր ուրեմն այդ անզօր վիշտը, աղաչում ենք քեզ,
Եւ ընդունիր մեզ որպէս քո հայրը․
Քանի որ պէտք է աշխարհն իմանայ
Որ ամենէն մօտ դու ես մեր գահին,
Եւ ես ոչ նուազ սէր ու գորովանք ունիմ դէպի քեզ,
Որքան ամենէն սիրալիր հայրը դէպի իր որդին։
Գալով քո յայտնած դիտաւորութեան,
Որ կամենում ես Վիտտէնբերգ դառնալ եւ դեռ ուսանել,
Դա մեր փափաքին սաստիկ ներհակ է․
Աղաչում ենք քեզ, յօժարիր կենալ եւ ապրել այստեղ
Իբրեւ մեր աչքի խինդ եւ սփոփանք,
Իբրեւ գլխաւոր մեր պալատական,
Մեր եղբօրորդի, եւ իբրեւ որդի։

Թագհ. Մօրդ խնդրանքը թող ի զուր չանցնի, սիրելի Համլէտ․
Ե՛ս էլ խնդրում եմ, կաց այստեղ մեզ մօտ․ մի՛ գնար Վիտտէնբերգ։

Համլ. Տիկին, ջանք կ՚անեմ ձեզ հնազանդելու։

Թագ. Ահա սիրալիր եւ լաւ պատասխան․
Եղիր Դանիայում ինչպէս ինքներս։ — Եկ գնանք, տիկին,
Համլէտի այս հեզ եւ անբռնազբօս համակերպումը
Խայտանք է սրտիս․ ի պատիւ որին՝ ,
Դանիայի արքան չըպէտք է ըմպէ ցնծալից բաժակ
Առանց որ իսկոյն մեծ թնդանօթը յայտնէ ամպերին,
Եւ թագաւորի խմած կենացին երկինքը ձայն տայ՝
Երկրային ամպրոպն անդրադարձնելով։ Գնանք միասին։

Փողեր․ Բոլորը գնում են բացի Համլէտից։

Համ. Երանի այս պինդ, խիստ պինդ մարմինը
Հալուէր ու լուծուէր, եւ փոխուէր ցօղի.
Կամ Անվախճանը ուղղած չլինէր իր պատուիրանը
Անձնասպանի դէմ։ Աստուած իմ, Աստուած, 139
Ի՜նչպէս տաղտկալի, անհամ ու տափակ, փուչ են թւում ինձ
Աշխարհի բոլոր վայելչանքները։ Թո՛ւհ դըրանց վըրայ։
Մի պարտէզ է դա, որ քաղհան չեղած սերմի է հասել,
Ուր բընութեան կոպիտ եւ բիրտ բաները իշխում են միայն։
Ի՞նչ, այստեղ հասնի, դեռ երկու ամիս իր մահից չանցած,
Ոչ, այդքան չըկայ, երկու էլ չըկայ։ Ի՜նչ մեծ թագաւոր,
Որ սրա մօտ այն էր, ինչ Հիպերիոնը մի սատիրի մօտ։ 146
Այնպէս մօրըս վըրայ գուրգուրում էր նա, որ չէր թոյլ տալիս
Երկնքի հողմերին մի քիչ խիստ դպչեն նըրա այտերին։
Երկի՜նք ու երկի՜ր, պէ՞տք է միտ բերեմ.
Այնպէս փարած էր նա իր ամուսնուն, 150
Որ ախորժակը աճում էր կարծես հէնց իր սընունդով.
Եւ այնու հանդերձ մէկ ամիս չանցա՛ծ։ Ա՜խ, չըմտածեմ...
Թուլութի՜ւն, անունըդ կին է։
Մի փոքրիկ ամիս. նախ քան մաշուէին այն կօշիկները,
Որոնցով քայլում էր նա խեղճ հօրըս մարմնի ետեւից, 155
Ինչպէս Նիոբէն, համա՛կ արտասուք. նա ինքը... ինքը...
Տէ՜ր Աստուած, անբան անասունն անգամ
Աւելի երկար սուգ պիտի պահէր.
Եւ ամուսնանայ իմ հօրեղբօ՛ր հետ, իմ հօ՛ր եղբօր հետ.
Բայց նա հօրս այնքան նըման է, որքան ես Հէրկուլէսին. 160
Մէկ ամիս չեղա՛ծ, նախ քան թորթըռուած նըրա աչքերից
Իր ամենակեղծ արտասուքների աղը սրբուէր՝
Արդէն պսակուա՛ծ։ Օ՜հ, չա՛ր արտորանք,
Սուրալ այսպիսի յաջողակութեամբ դէպի պիղծ մահիճ.
Դա լաւ չէ, ոչ էլ լաւ պիտի լինի։ 165
Բայց պայթի՛ր, սիրտ իմ, քանի որ պէտք է կապ դընեմ լեզուիս։

Գալիս են Հորացիօ, Մարցելլոս եւ Բեռնարդօ։

Հոր. Իմ յարգանքներըս Ձերդ Մեծութեան։
Համ. Ուրախ եմ որ ձեզ առողջ եմ տեսնում։
Հորացիօ՜ն է սա, թէ ոչ ես ինքըս ինձ մոռանում եմ։
Հոր. Ինքն է, եւ յաւէտ ձեր խոնարհ ծառան։
Համ. Պարոն, սիրելի իմ բարեկամս.
Թող այս անունը փոխանակենք միշտ։ Ասա, Հորացիօ.
Ինչո՞ւ ես եկել դու Վիտտէնբէրգից։ — Մարցէլլո՞ս։
Մարց. Տէր իմ։
Համ. Պարոն, ուրախ եմ որ ձեզ տեսնում եմ։
(Բեռնարդոյին.) Բարի երեկոյ։ — Ճի՛շդ, Վիտտէնբէրգից ինչո՞ւ ես եկել։
Հոր. Դատարկաշրջիկ բնաւորութիւն, սիրելի տէրըս։
Համ. Թշնամուցդ անգամ չէի կամենայ այդ խօսքը լսել.
Դու էլ ականջըս մի բռնադատիր,
Որ խօսքիդ լսէ՝ անձիդ հակառակ.
Լաւ գիտեմ որ դու այդպիսի մարդ չես.
Բայց ի՞նչ գործ ունիս Էլսինորի մէջ։
Մեկնելուցդ առաջ պէտք է քեզ մի լաւ խմել սովորցնեմ։
Հոր. Տէր իմ, ես եկայ ձեր հօր թաղումը տեսնելու համար։
Համ. Խնդրեմ, մի ծաղրիր, ուսանող ընկեր.
Կարծեմ թէ եկար մօրըս հարսանիքը տեսնելու համար։
Հոր. Իսկապէս, տէր իմ. շատ շուտ յաջորդեց մէկը միւսին։
Համ. Խնայողութիւն, խնայողութի՜ւն, Հորացիօ.
Մեռելաճաշի կերակուրները պաղ մատուցուեցան
Հարսանեկան հրաւիրեալներին։ Լաւ էր, Հորացիօ,
Որ իմ ամենէն անգութ թշնամուս երկնքում գտնէի,
Քան թէ այդ օրը տեսած լինէի։
Հայրըս... կարծես թէ տեսնում եմ հօրըս։
Հոր. Ա՜հ, ո՞ւրտեղ, տէր իմ։
Համ. Հոգուս աչքի մէջ։
Հոր. Տէր իմ, մէկ անգամ տեսել եմ նորան. ի՜նչ թագաւոր էր։
Համ. Մա՛րդ էր, Հորացիօ, իր ամեն բանով։
Մէկ էլ չեմ տեսնի նորա նմանը։
Հոր. Տէր իմ, կարծում եմ որ երէկ գիշեր ես տեսայ նորան։

Համ. Տեսա՞ր, ո՞ւմը։
Հոր. Ձեր հօրը, տէր իմ, թագաւորին։
Համ. Հօ՞րս։
Հոր. Զափաւորեցէք խնդրեմ մի րոպէ ձեր զարմացումը,
Եւ ուշադրութեամբ ականջ դրէք ինձ,
Մինչեւ որ պատմեմ, այս պարոնների վկայութիւնով,
Պատահած հրաշքը։
Համ. Ի սէր Աստուծոյ, պատմի՛ր շուտ, պատմի՛ր։
Հոր. Երկու գիշեր է վրայէ վրայ, այս պարոնները,
Բերնարդոն ինքը եւ Մարցելլոսը, հսկած ժամանակ,
Գիշերւայ կէսին եւ մեռելային ամայութեան մէջ
Մի բան են տեսնում։ Մի ձեւ, ձեր հօր պէս,
Գլխից մինչեւ ոտք սպառազինուած, երեւում է նրանց,
Եւ հանդիսաւոր ու ծանր քայլով գալիս անցնում է
Նրանց առջեւից. եւ երեք անգամ քայլում է այսպէս
Նրանց ապշահար եւ ահաբեկուած աչքերի առաջ
Իր գաւազանի հեռաւորութեամբ։
Իսկ սրանք վախից դոնդողի փոխուած՝
Պապանձուած կանգնում, եւ ոչինչ ասել չեն կարողանում։
Այս բանն ահաւոր գաղտնապահութեամբ հաղորդեցին ինձ.
Երրորդ գիշերը ես էլ նրանց հետ պահակ կանգնեցի,
Եւ ճիշդ նոյն ձեւով որ պատմել էին, մի եւ նոյն ժամին,
Նոյն կերպարանքով, ամէն մի բառը կէտ առ կէտ ճշգրիտ,
Տեսիլքը եկաւ. ձեր հօրը, տէր իմ, ճանաչում էի,
Երկու ձեռքս իրար այնպէս նման չեն։
Համ. Բայց դա ո՞րտեղ էր։
Հոր. Հարթավայրի վրայ, ուր հսկում էինք։
Համ. Չը խօսեցի՞ք իր հետ։
Հոր. Խօսեցի, բայց նա չը պատասխանեց։
Միայն, ինձ թուաց թէ նա մի անգամ գլուխը վեր տարաւ
Եւ շարժում արաւ որպէս թէ մի բան ասել ուզենար.
Բայց այդ րոպէին աքլորը կանչեց,
Եւ նա այդ ձայնից հեռացաւ փութով,

Եւ անյայտացաւ մեր տեսութիւնից։

Համ. Շատ տարօրինակ։

Հոր. Կենդանւոյս երդուամ, յարգելի տէրըս, որ ճշմարիտ է,
Եւ մենք մեզ համար պարտք համարեցինք գալ եւ ձեզ յայտնել։

Համ. Այդպէս, պարոններ. բայց դա ինձ սաստիկ վրդովեցնում է։
Այս գիշեր նորէն պահակը դո՞ւք էք։

Մարց. եւ Բեռն. Այո, ազնիւ տէր։

Համ. Զինուած էր, ասացիք։

Բեռն. եւ Մարց. Զինուած էր, տէր իմ։

Համ. Գագաթից կրո՞ւնկ։

Մարց. եւ Բեռն. Գլխից մինչեւ ոտք։

Համ. Դէմքը չը տեսա՞ք։

Հոր. Տեսանք, ազնիւ տէր. երեսակալը վերեւ էր քաշուած։

Համ. Խոժոռ էր դէմքը։

Հոր. Աւելի տրտում քան թէ բարկացած։

Համ. Գունա՞տ թէ կարմիր։

Հոր. Սաստիկ գունատ էր։

Համ. Եւ իր աչքերը յառե՞ց ձեր վրայ։

Հոր. Անընդհատօրէն։

Համ. Ախ, երանի թէ այնտեղ լինէի։

Հոր. Դա ձեզ կ'ապշեցնէր։

Համ. Հաւանական է, շատ հաւանական։ Երկա՞ր սպասեց։

Հոր. Այնքան, որքան մարդ միջակ շտապով մէկ հարիւր համրէ։

Մարց. եւ Բեռն. Աւելի երկար, աւելի երկար։

Հոր. Ոչ երբ ես կայի։

Համ. Եւ նորա մօրուքն ալեխառն էր, չէ՞։

Հոր. Ճիշդ իր կենդանի ժամանակուայ պէս. սեւ արծաթախառն։

Համ. Ես էլ այս գիշեր կը հսկեմ ձեզ հետ. գուցէ նորէն գայ։

Հոր. Վստահ եմ կը գայ։

Համ. Թէ ազնիւ հօրըս կերպարանքն առնէ՝ կը խօսեմ իր հետ
Թէկուզ դժոխքն էլ բերանը բանայ եւ “լռիր„ գոչէ։
Այժմ խնդրում եմ ձեզ բոլորից էլ,
Եթէ մինչեւ այժմ այս երեւոյթը ծածուկ էք պահել՝

Թողէք տակաւին, որ ձեր լռութեան քօղի տակ կենայ․
Եւ այս գիշեր էլ ինչ որ պատահի,
Տուէք ձեր մտքին, բայց ոչ ձեր լեզուին։
Ես էլ ձեր սէրը կը փոխարինեմ։ Դէհ, մնաք բարով։
Հարթավայրի վրայ տասնումէկի եւ տասներկուսի մէջ
Կը հանդիպեմ ձեզ։

Ամենքը — Մեր յարգանքները Ձեր Ազնուութեան։

Համ. Ձեր սէրը, պարոններ, նոյնպէս իմս էլ ձեզ․ գնացէք բարով։

*Բոլորը գնում են, բացի Համլէտից։*

Իմ հօրս ոգին սպառազինուած․ մի բան կայ այստեղ․
Ես կասկածում եմ, որ մի պիղծ ոճիր կատարուած լինի․
Երնէկ թէ գիշերն եկած լինէր այժմ․
Մինչեւ այն, հոգիս, անվրդով մնա․
Չարիր գործերը կը գան հրապարակ,
Թէկուզ երկիրն իսկ թաղցրնէ իր տակ։

*գնում է դուրս։*

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐՐՈՐԴ

*Մի սենեակ Պոլոնիուսի տան մէջ։*
*Գալիս են Լաէրտ եւ Օֆէլիա։*

Լա. Արդէն իրերըս նաւի վրայ են․ մնաս բարեւ, քոյր․
Երբ նպաստաւոր լինեն հողմերը, եւ նաւ գտնուի՝
Չը քնես, այլ ինձ լուր գրես քեզնից։

Օֆ. Միթէ այդ մասին տարակոյս ունիս։

Լա. Գալով Համլէտին եւ իր սին շնորհքին,
Մի քմահաճոյք համարիր դու այդ, եւ արեան մի խաղ,
Գարնան մանուշակ նորատի բնութեան,
Վաղահաս, բայց վաղանց, անուշ, բայց անտեւ,
Մի կարճ րոպէի բոյրն ու բերկրանքը, ոչինչ աւելի։

Օֆ. Հէնց այդքա՞ն միայն։
Լա. Ոչինչ աւելի։
Քանզի բնութիւնը, երբ զարգանում է,
Չէ աճում միայն ջիղ ու ծաւալով.
Այլ երբ այդ տաճարն ընդարձակւում է,
Հոգու եւ մտքի ներքին պաշտօնն էլ հետն է զարգանում։
Գուցէ իսկապէս սիրում է քեզ այժմ,
Եւ նրա կամքի ողջախոհութիւնն այժըմ մաքուր է
Որ եւ է կեղտից եւ կեղծութիւնից.
Բայց երբ որ նրա բարձր աստիճանը կշռի մէջ դընես՝
Պէտք է վախենաս որ նա ինքն էլ չէ իր կամքի տէրը,
Այլ հպատակն է ինքն իր ծընունդի,
Եւ անկարող է ամեն աննշան անհատի նըման
Իր համար ձեւել, քանի որ նրա այդ ընտրութիւնից
Կախուած է երկրի ապահովութիւնն ու ողջութիւնը,
Եւ այդ պատճառով իր ընտրութիւնը շրջագծուած է
Ա՛յն մարմնի ձայնով եւ յօժարութեամբ, որի գլուխն է նա.
Ուրեմն, երբ ասէ թէ քեզ սիրում է,
Խոհեմութիւնդ այն չափով միայն պէտք է հաւատայ,
Որչափ որ Համլէտ, իր յատուկ կամքով եւ աստիճանով,
Կարող է փոխել իր խօսքը գործի, այսինքըն, այնքան,
Որքան Դանիայի ընդհանուր ձայնը հաւանութիւն տայ։
Կշռիր ուրեմըն թէ քո պատիւը որքան կը տուժէ,
Եթէ դիւրախաբ ականջով լսես նրա երգերին,
Կամ թէ սիրտըդ տաս, կամ թէ բաց անես ողջախոհ գանձըդ
Նրա սանձազուրկ տարփանքի առաջ։
Վախեցիր, Օֆէլիա, վախեցիր դրանից, սիրելի քոյրիկ,
Եւ միշտ պահիր քեզ քո համակրանքի թիկունքը քաշուած,
Հեռու ցանկութեան նետից ու վտանգից։
Ամենէն զգաստ կոյսն էլ շռայլ է
Եթէ լուսնին իսկ ցոյց տայ իր մարմնի գեղեցկութիւնը։
Առաքինութիւնն ինքն էլ ազատ չէ զրպարտութիւնից։
Յաճախ թրթուրը ուտում է գարնան երախայրիքը

Նախ քան թէ նորանք կոկոն բանային,
Եւ պատանութեան վաղ առաւօտին, ջինջ ցօղի պահուն,
Վարակիչ հողմերն առաւելապէս երկիւղալի են։
Զգոյշ ուրեմն. վախից ապահով պահապան չըկայ.
Մատաղ արիւնը ինքնիրեն ըմբոստ է
Նոյն իսկ երբ ոչ ոք չէ դրդում նորան։

Օֆ. Այս բարի դասիդ ազդեցութիւնը
Կը պահեմ որպէս սրտիս պահապան։ Բայց, բարի եղբայր,
Մի գուցէ դու էլ ճիշդ այնպէս անես,
Ինչպէս ամբարիշտ քարոզիչներից շատերն են սովոր,
Որ քարոզելով երկնքի փշոտ զառիվեր ուղին՝
Իրենք յղփացած եւ ապերասան անառակի պէս
Գնում են վայելքի ծաղկալից շաւղով՝
Հէնց իրենք անփոյթ իրենց խորհրդին։

Լա. Ոչ, միամիտ կաց։ Բայց ուշանում եմ. ահա եւ հայրըս։

Գալիս է Պոլոնիոս։

Կրկին օրհնէնքը կրկին շնորհ է.
Բախտըս ժպտում է տալով ինձ առիթ երկրորդ հրաժեշտի։

Պոլ. Դեռ այստեղ, Լաէրտ. գնա, գնա նաւը.
Հողմն առագաստիդ ուսին է նստել,
Եւ քեզ են սպասում։ Ահա օրհնութիւնս.

Ձեռքը դնելով Լաէրտի գլխին։

Եւ այս մի քանի սկզբունքները յիշողութեանդ մէջ,
Տես, լաւ փորագրես։ Լեզու մի շռայլիր ամեն մի մտքիդ,
Եւ ոչ էլ ամեն տհաս խորհրդի՝ գործադրութիւն.
Մարդամօտ եղիր, բայց ոչ գռեհիկ։
Բարեկամներիդ, որ ընտրած լինես եւ փորձի դրած,
Պողպատ օղերով պրկիր հոգուդ հետ.
Բայց ձեռքիդ ափը մի կոշտացնիր՝ պատուասիրելով
Նոր ձուից ելած եւ դեռ անփետուր ամեն ընկերի։
Զգոյշ կաց կռուից, բայց երբ մէջ մըտար՝
Այնպէս տար գործը, որ զգուշանայ ոսոխըդ քեզնից։

Ականջդ ամենքին, ձայնըդ՝ քիչերին.
Առ ամեն մարդուց նըրա կարծիքը,
Դատողութիւնըդ քեզ համար պահիր։
Թանկ զգեստ հագիր, որքան քըսակըդ կարող է զօրել.
Բայց ոչ սեթեւեթ. ճոխ, ոչ զարդարուն.
Քանզի զգեստը յայտնում է յաճախ թէ ինչ է մարդը,
Եւ Փրանսիայում գիրք ու աստիճան ունեցող մարդիկ
Շատ նուրբ ու ընտիր ճաշակի տէր են, յատուկ այդ բանում։
Ոչ պարտք առ, ոչ տուր. քանզի շատ անգամ փոխատուութիւնը
Թէ՛ դրամն է կորցնում, թէ՛ բարեկամին.
Փոխառութիւնն էլ բըթացընում է խնայողութիւնը։
Այս ամենից վեր, միշտ անկեղծ եղիր դու ինքըդ քեզ հետ,
Եւ կը հետեւի այս բանին, ինչպէս տիւը գիշերին,
Որ ոչ ոքի հետ չես կարող կեղծել։ Դէ՛հ, գընաս բարով,
Եւ օրհնութիւնըս թող սըրանք քո մէջ արգասաւորէ։

Լա. Շատ խոնարհաբար հրաժեշտ եմ առնում։

Պոլ. Գնա, ժամանակ է, եւ ծառաներըդ քեզ են սպասում։

Լա. Մնաս բարով, քոյր, եւ լաւ միտ պահիր ինչ որ ասացի։

Օֆ. Քո ասածները փակուած կը մընան յիշողութեանս մէջ,
Եւ բանալին էլ կը մընայ քո մօտ,

Լա. Մընացէք բարով։

գնում է։

Պոլ. Քեզ ինչ է ասել, Օֆէլիա։

Օֆ. Ներեցէք, տէր իմ, Համլէտի մասին մի բան ասաց ինձ։

Պոլ. Ճիշդ, լաւ ասացիր. լսել եմ թէ նա վերջերըս յաճախ
Առանձին ժամեր նուիրել է քեզ. եւ թէ դու ինքըդ
Շատ անվերապահ եւ շըռայլ կերպով ընդունել ես նրան։
Եթէ այդպէս է, — եւ ինձ ասել են թէ ճիշդ այդպէս է,
Եւ այդ լոկ իբրեւ նախազգուշացում — պէտք է քեզ ասեմ,
Որ չես գիտակցում այնպէս պարզօրէն,
Ինչպէս վայել է իմ աղջըկանըս, եւ քո իսկ պատուիդ։
Ի՞նչ կայ ձեր միջեւ. ճշմարիտն ասա։

Օֆ. Տէր իմ, վերջերըս շատ ապացոյցներ տուել է նա ինձ

Իր համակրութեան։
Պոլ. Համակրութեա՞ն, բա՜հ.
Խօսում ես ինչպէս մի անփորձ աղջիկ
Անվարժ այսպիսի խիստ վտանգաւոր մի պարագայի։
Հաւատո՞ւմ ես դու քո այդպէս ասած "ապացոյցներին"։
Օֆ. Չը գիտեմ, տէր իմ, թէ ինչ մտածեմ։
Պոլ. Հա՛, այդ ես կ'ասեմ. մտածիր թէ դու մի երեխայ ես,
Որ ընդունել ես այդ ապացոյցներն հնչուն դրամի տեղ,
Մինչ կեղծ են նրանք։ Դու քեզ աւելի թանկ ապացուցիր,
Թէ ոչ — խեղճ բառի հոգին չը հանենք այսքան կրկնելով —
Յիմարութիւնդ կ'ապացուցես ինձ։
Օֆ. Տէր իմ, նա միայն պատուաւոր ձեւով իր սէրն է յայտնել։
Պոլ. Այո, կարող ես "ձեւ" անուանել այդ. գնա, գնա բանիդ։
Օֆ. Եւ իր խօսքերը երկնքի բոլոր սուրբ երդումներով
Հաստատում էր նա։
Պոլ. Հա՛, որոգայթներ կտցար բռնելու։
Ես շատ լաւ գիտեմ, որ երբ արիւնը բոցավառւում է,
Ի՜նչ շռայլութեամբ հոգին երդումներ տալիս է լեզուին.
Այդ բոցերն, աղջիկ, որ լոյս են սփռում, բայց ոչ ջերմութիւն,
Երկուսից էլ զուրկ հէնց խոստանալիս, դեռ բերնից չելած,
Չը պէտք է երբէք կրակ համարես։
Լսիր, այս օրից՝ մի քիչ աւելի խնայող եղիր
Օրիորդական ներկայութեանդ.
Հանդիպումներիդ աւելի գին դիր,
Ու թէ միշտ եղիր հրամանին պատրաստ։
Գալով Համլէտին՝ յիշիր միշտ թէ նա երիտասարդ է,
Եւ թէ աւելի երկար պարանով կարող է շրջել,
Քան թէ քեզ համար թոյլատրելի է։
Կարճը, Օֆէլիա, հաւատ չընծայես այդ երդումներին,
Դրանք միմիայն վատ միջնորդներ են,
Ու թէ այն գոյնի, ինչ ցոյց է տալիս նրանց դրսինը.
Այլ խնդրարկուներ անսուրբ իղձերի,
Որ փսփսում են սուրբ ու բարեպաշտ կաւատների պէս

Աւելի սաստիկ խաբելու համար։
Մի անգամ ընդ միշտ թող քեզ պարզ ասեմ, ինձ հաճելի չէ,
Որ այսուհետեւ ազատ րոպէներդ այդպէս շռայլես
Եւ Համլէտի հետ ասուլիս անես։
Զգո՛յշ, ասում եմ, խելքըդ ժողովիր։

*Օֆ.* Հնազանդ եմ, տէր իմ։

Գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ՉՈՐՐՈՐԴ

*Հարթավայրի վրայ*

*Գալիս են Համլէտ, Հորացիօ եւ Մարցելլոս:*

*Համ.* Օդը շատ խիստ է. սաստիկ ցուրտ է։
*Հոր.* Այո, դառնաշունչ եւ կծող օդ է։
*Համ.* Որ ժամն է հիմա։
*Հոր.* Մօտ տասներկուսն է։
*Մարց.* Ոչ, արդէն զարկեց։
*Հոր.* Ճի՞շդ. չը լսեցի. մօտ է ուրեմն այն ժամանակը,
Երբ սովորաբար ոգին գալիս է։

Փողեր. Թնդանօթի ձայն ներսից։

Այս ինչ է, տէր իմ։
*Համ.* Արքան այս գիշեր տօն է կատարում եւ խնջոյք ունի։
Կոնծարանում է, եւ գլորուելով կայթապար է պարում.
Եւ երբ լցնում է Հռենոսի գինին իր կոկորդն ի վար՝
Թմբուկն ու փողերն այսպէս գուում են
Ի պատիւ նըրա խըմած կենացին։
*Հոր.* Միթէ դա մի հին սովորութիւն է։
*Համ.* Այո, այդպէս է.
Բայց իմ կարծիքով, — թէեւ ես ինքըս այստեղ եմ ծընուած,
Եւ մանկութիւնից դըրան վարժըուած —

*Դա մի այնպիսի սովորութիւն է,*
*Որի խախտումն է աւելի պատիւ, քան հետեւումը։*
*Այս գլխամոլոր կերուխումները*
*Մեզ արեւելքից մինչեւ արեւմուտք՝ այլ ազգերի մօտ*
*Խայտառակում են. նրանք արբեցող անուանում են մեզ,*
*Եւ խոզավայել մակդիրներ կցում մեր անուններին.*
*Եւ դա, իսկապէս մեր մեծ գործերից, որչափ էլ բարձր,*
*Խլում է փառքի ուղը եւ ծուծը.*
*Ինչպէս շատ անգամ նոյնն է պատահում անհատների հետ,*
*Որոնք կրելով բնութեան ինչ որ ախտաւոր մի բիծ,*
*Ինչպէս ի ծնէ, — մի բան որի մէջ նրանք մեղք չունին,*
*Քանի որ էակն ինքը չէ կարող իր ծագումն ընտրել —*
*Իրենց խառնուածքի որոշ հակումի զօրանալովը,*
*Որ դատողութեան բերդ ու պարիսպը վար է տապալում,*
*Կամ ունենալով մի սովորութիւն,*
*Որ հաւանելի քաղաքավարութեան որ եւ է ձեւը*
*Զափազանցում է, այդ մարդիկ, ասում եմ, —*
*Մի հատ թերութեան դրոշմը կրելով,*
*Լինի դա բնութեան տուած համազգեստ, լինի բախտի աստղ —*
*Նրանց բոլոր միւս արժանիքները —*
*Թէկուզ անարատ ինչպէս սրբութիւն,*
*Եւ անթիւ, որքան տրուած է մարդուն —*
*Դարձեալ ընդհանուր կարծիքի առաջ*
*Այդ մէկ մասնաւոր պակասութիւնից կ'արատաւորուին։*
*Մի մանրիկ ժանգը բոլոր ազնիւ նիւթն ապականում է*
*Եւ իջեցնում իր անարգութեան։*

Գալիս է Ուրուականը։

*Հոր.* *Նայեցէք, տէր իմ. գալիս է . . .*
*Համ.* *Հրեշտակներ, շնորհի սպասաւորներ, պաշտպանեցէք մեզ։*
*Ինչ էլ լինես դու, փրկուած ոգի, թէ դեւ դժոխքի,*
*Երկնքից հետըդ բոյր բերած լինես, գեհենից խորշակ,*
*Թէկուզ չար լինին նպատակներըդ, թէկուզ բարեգութ,*

*Այնպէս հարցայոյզ դէմքով ես գալիս,*
*Որ պէտք է խօսեմ, պէտք է կանչեմ քեզ, Համլէտ, Թագաւոր,*
*Հա՛յր, Վեհափառ տէր Դանեմարքայի. պատասխան տուր ինձ.*
*Մի՛ թողնիր պայթեմ անգիտութիւնից.*
*Այլ ասա, ինչո՞ւ քո սուրբ ոսկորքը, մահուան աւանդուած,*
*Պատռել են իրենց վարշամակները.*
*Ինչո՞ւ շիրիմըդ, որտեղ քեզ տեսանք հանգիստ ամփոփուած,*
*Բացել է իր ծանր, մարմար երախը եւ քեզ դուրս ժայթքել։*
*Ի՞նչ միտք ունի այս, որ դու, մեռած դի, ամբողջ զրահապատ,*
*Վերայցելում ես լուսնի շողքերը,*
*Դարձնելով գիշերն այսպէս ահռելի,*
*Որ մենք, բնութեան խաղալիքներըս սոսկահար եղած*
*Ցնցւինք խոհերով, որոնց անհաս են մեր հոգիները։*
*Ասա, ի՞նչ է այս, ինչո՞ւ համար է, ի՞նչ պէտք է անենք։*

Ուրուականը գլխով նշան է անում Համլէտին։

Հոր. *Նշան է անում որ գընանք իր հետ.*
*Կարծես ուզում է ձեզ առանձնապէս մի բան հաղորդել։*

Մարց. *Նայեցէք ինչպէս սիրալիր ձեւով հրաւիրում է ձեզ*
*Դէպի աւելի մենաւոր մի տեղ. բայց չերթաք, տէր իմ։*

Հոր. *Ոչ, ամենեւին։*

Համ. *Չէ ուզում խօսել.*
*Պէտք է ուրեմըն հետեւեմ նրրան։*

Հոր. *Ոչ, չերթաք, տէր իմ։*

Համ. *Ինչո՞ւ, վախս ի՞նչ է. կեանքըս ինձ համար մի ասեղ չարժէ.*
*Իսկ գալով հոգուս՝ ի՞նչ կարող է նա իմ հոգուն անել,*
*Քանի որ իր պէս նա էլ անմահ է։*
*Էլի կանչում է. պէտք է հետեւեմ։*

Հոր. *Իսկ եթէ, նա ձեզ քարշ տայ դէպի ծով,*
*Կամ թէ գագաթը այն քարաժայռի,*
*Որ կորացել է իր սորոտից, կախուել ծովի վրայ,*
*Եւ այնտեղ ինքը ուրիշ ահռելի մի ձեւ ստանայ,*
*Որ դատողութեան իշխանութիւնը խլէ ձեզանից,*

Եւ ձեզ հասցընէ խելագարութեան.
Խորհեցէք, իշխան, այն տեղը ինքը, առանց այլ բանի,
Խելագարութեան հովեր կը փչէ ամեն ուղեղի,
Որ այնքան կանգուն վար նայէ ծովին
Եւ լսէ ներքեւ նորա գոռոցը։

Համ. Դարձեալ կանչում է։ — Գնա, գալիս եմ։

Մարց. Չըպէտք է գնաք, իմ ազնիւ տէրս։

Համ. Ձեռքներդ յետ քաշէք։

Հոր. Լսեցէք, տէր իմ, չըպէտք է գնաք։

Համ. Թողէք, օրհասս ինձ ձայն է տալիս,
Եւ մարմնիս ամեն մի փոքրիկ նեարդը զօրեղացնում է,
Ինչպէս Նեմէյեան առիւծի ջիղը։
Դարձեալ կանչում է. Թողէք, պարոններ.
Երկինքն է վկայ, ուրու կը դարձնեմ ինձ արգելողին.
Հեռո՛ւ, ասում եմ։ — Գնա, գալիս եմ։

Ուրուականը եւ Համլէտը դուրս են գնում։

Հոր. Իր մտքի թափից խելագարւում է։

Մարց. Գնանք ետեւից. յարմար չէ այսպէս հնազանդել նորան։

Հոր. Գնանք ետեւից։ Ո՞ւր է հասնելու այս բանի վերջը։

Մարց. Մի բան է փտել Դանեմարքայում։

Հոր. Աստուած կը շիտկէ։

Մարց. Հետեւենք նորան։

Դուրս են գնում։

## ՏԵՍԱՐԱՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

*Հարթավայրի մի այլ մասը.*
*Գալիս են Ուրուականը եւ Համլէտ:*

Համ. Ո՞ւր ես տանում ինձ. խօսիր, չեմ գալիս աւելի հեռու:
Ուր. Լսիր:
Համ. Լսում եմ:
Ուր. Մօտ է իմ ժամը,
Երբ ծծմբային տանջող բոցերին,
Պէտք է որ կրկին անձնատուր լինեմ:
Համ. Աւա՜ղ, խեղճ ոգի:
Ուր. Մի՛ խղճար վրաս, այլ լսիր ուշով յայտնելիքներըս:
Համ. Պարտքըս լսել է:
Ուր. Եւ վրէժ հանել լսելուց յետոյ:
Համ. Ի՞նչ:
Ուր. Հօրըդ ոգին՝ եմ.
Դատապարտուած եմ որոշ ժամանակ գիշերը շրջել
Եւ ցերեկները փակուած՝ ծոմ պահել կրակների մէջ,
Մինչեւ որ բոլոր կեանքիս օրերի պիղծ ոճիրները
Այրուին ու սրբուին: Եթէ իմ վրայ արգելք չլինէր
Իմ բանտանոցի գաղտնիքներն յայտնել՝
Օ՜հ, կարող էի քեզ մի այնպիսի պատմութիւն անել,
Որի ամենէն թեթեւ բառն անգամ հոգիդ կը տանջէր.
Մատաղ արիւնըդ կը սառեցնէր. երկու աչքերըդ,
Աստղերի նման դուրս կը թռցնէր իրենց ոլորտից.
Հիւսուած ու գանգուած այդ գիսակներըդ կը հիւսարձակէր.
Եւ ամէն մի մազ՝ բարկացկոտ ոզնու փուշերի նման
Ցից կը կանգնեցնէր. բայց յաւիտեանի այս յայտնութիւնը
Միս ու արիւնէ ականջի համար անկարելի է:
Լսի՛ր, ո՜հ, լսի՛ր. եթէ իսկապէս սիրել ես հօրըդ . . .
Համ. Աստուա՜ծ իմ . . .
Ուր. Նորա հրէշային, ժանտ սպանութեան վրէժը հանիր:

Համ. Ի՞նչ, սպանութեա՞ն։
Ուր. Այո, եւ խիստ ժանտ մարդասպանութեան։
Ամենայնուն էլ թէեւ այդպէս է,
Բայց սա խիստ ժանտ էր, խիստ տարօրինակ, խիստ անբնական։
Համ. Պատմիր շուտ, պատմիր, որ ես թեւերով,
Աւելի արագ քան մտքի թռիչք կամ սիրոյ խոհեր
Ի վրէժ սլանամ։
Ուր. Այո՛, տեսնում եմ, որ զգայուն ես.
Հեղգ կը լինէիր քան այն ճարպ խոտը,
Որ հանգստօրէն արմատ է ձգում Լէթէի ափին,
Թէ չը յուզուէիր։ Արդ, լսիր, Համլէտ.
Լուր են տարածել, թէ պարտէզիս մէջ քնած միջոցիս
Օձ է ինձ խայթել։ Ամբողջ Դանիայի ականջն այս կերպով
Մահուանըս ձեւի շինծու պատմութեամբ մոլորեցուած է.
Բայց դու իմացիր, ազնիւ պատանի,
Ինձ խայթող օձը նա՛ է, որ հիմա իմ թագն է կրում։
Համ. Մարգարէ՜ հոգիս. հօրեղբա՞յրս . . .
Ուր. Այո, այդ շնացող, աղտապիղծ լիրբը
Իր ճարտար խելքի կախարդանքներով եւ նենգ ձիրքերով
— Անէծք այն խելքին եւ այն ձիրքերին,
Որ այս աստիճան զօրութիւն ունին մոլորեցնելու —
Իր ամօթալի ցանկամոլութեան համամիտ արաւ
Արտաքուստ այնպէս առաքինացոյց թագուհուս կամքը։
Համլէ՛տ, ինչպիսի մի անկում էր այդ,
Ինձնից, որի սէրն այնպէս ազնիւ էր,
Որ գնում էր միշտ իմ ամուսնական ուխտից անբաժան,
Ինձնից վար ընկնել եւ ստորանալ մի ապիրատի,
Որի բնատուր արժանիքները այնքան խեղճ էին
Ինձ հետ բաղդատած։
Բայց ինչպէս երբէք առաքինութիւնը չի թուլանայ
Թէկուզ տռփանքը երկնային դէմքով նրան տարփած է,
Պագշոտութիւնն էլ, թէկուզ լուսափառ հրեշտակի կցուի,
Շուտ կը յագենայ երկնային մահճից

Եւ լէշի վրայ ճարակ կը փնտռէ։
Բայց կաց, զգում եմ վաղորդեան սիւքը.
Կարճ պէտք է խօսեմ։ Այն ինչ պարտէզում, կէսօրից յետոյ,
Ըստ ամենօրեայ իմ սովորութեան քընած էի ես,
Ապահով ժամիս՝ հօրեղբայրդ գաղտ մօտենում է ինձ,
Անիծեալ բանգի քամուկը լցրած մի սրուակի մէջ,
Եւ բորոտաբեր հիւթը թափում է իմ ականջներում.
Եւ այն աստիճան թշնամի է դա մարդու արեան հետ,
Որ այնպէս արագ ինչպէս սնդիկը՝
Վազում է մարմնի բնական անցքերով եւ բաւիղներով,
Եւ րոպէական իր ներգործութեամբ թանձրացընում է
Մարդկային առողջ եւ նօսր արիւնը.
Նոյնը պատահեց եւ իմ արեան հետ,
Եւ յանկարծահաս մի բորոտութիւն թեփ տըւաւ դըսից,
Եւ գարշ ու զազիր կեղեւով պատեց ողորկ մարմինըս,
Ղազարոսի պէս։ Այսպէս՝ քընի մէջ մի եղբօր ձեռքով
Զրկուեցայ կեանքից, թագից, թագուհուց.
Քաղուեցայ մեղքիս բողբոջանքի մէջ՝
Անհաղորդ, անծէս, առանց օծութեան, հաշիւ չըմաքրած,
Այլ ուղարկուեցայ համարատուութեան
Բոլոր մեղքերըս գլխիս վրայ դիզած։

Համ. Սոսկալի՜, սոսկալի՜, օ՜հ, խիստ սոսկալի։

Ուր. Եթէ կայ քո մէջ որդիական սէր, մի՛ տանիր դու այդ.
Մի՛ թողնիր Դանիոյ թագաւորական վեհ անկողինը
Քընանոց դառնայ անառակութեան եւ պիղծ շընութեան.
Բայց ինչ կերպով էլ հետամուտ լինես այս նպատակին,
Չըպէտք է միտքըդ արատաւորես, կամ թոյլ տաս հոգուդ,
Որ նա մօրըդ դէմ դաւադիր լինի.
Երկնքի վճռին յանձնիր դու նըրան,
Եւ այն փշերին, որ բընակւում են նըրա կրծքի մէջ.
Թող նըրանք խոցեն ու խայթեն նըրան։ Ցտե՛ս, մընաս բարեաւ.
Լուսատտիկը յայտնում է արդէն որ լուսանում է,
Եւ սկսում է իր անզօր բոցը գունաթափ անել։

Մնաս բարեւ, մնաս բարեւ, մնաս բարեւ, յիշէր ինձ։

Ուրուականը չքանում է։

Համ. Ով դուք երկնային բոլոր բանակներ, ով երկիր, էլ ինչ,
Դժոխքն էլ կկցեմ։ Օ՜հ, թո՛ւհ։ Ամուր կաց, ամուր կաց, սիրտ իմ,
Եւ դուք, իմ ջիղեր, մի՛ պառաւանաք մի ակնթարթում,
Այլ ինձ կուռ ու պինդ կանգուն պահեցէք։
Յիշե՞մ քեզ. այո՛, դու խեղճ ուրուական,
Կը յիշեմ քանի յիշողութիւնը աթոռ ունենայ
Այս խելայեղուած գնտակի միջում։
Յիշե՞մ քեզ, այո. իմ յիշողութեան գրատախտակից
Կը ջնջեմ բոլոր փուճ ու աննշան պատահարները,
Գրքերի բոլոր ասացուածները, ամեն ձեւ ու դէմք,
Անցեալի ամեն տպաւորութիւն,
Որ պատանութիւնն ու դիտողութիւնն այնտեղ գրել են,
Եւ քո պատուէրը կ'ապրի մեն մենակ
Ուղեղիս գրքի եւ հատորի մէջ՝
Առանց խառնուելու աւելի ստոր ուրիշ նիւթի հետ։
Ա՜հ, երկինքը վկայ . . . Ա՛խ, չարագո՜րծ կին.
Եւ դու, սրիկայ, սրիկայ, ժպտադէմ, անիծեալ սրիկայ,
Տետրակը՛ս. պէտք է յուշագրեմ այստեղ,
Թէ մարդ կարող է ժպտալ, եւ ժպտալ, եւ սրիկայ լինել.
Գոնէ, վստահ եմ կարելի է այդ Դանեմարքայում։

Գրում է։

Այսպէս, հօրեղբայր, հիմա այստեղ ես.
Իմ կարգախօսը՛. "Մնաս բարով, մնաս բարով, յիշէր ինձ"։
Երդուեցի։

Հորացիօ եւ Մարցելլոս դրսից։

Հոր. Տէ՛ր իմ, տէ՛ր իմ։

Ներս են գալիս։

Մարց. Հէյ, իշխան Համլէտ։
Հոր. Երկինքը փրկէ նրան փորձանքից։
Համ. Ամէն։

Մարց. Ըհէ՜յ, հէ՜յ, իշխան։
Համ. Ըհէ՜յ, հէ՜յ, տղայ. եկ, թռչուն, եկ, եկ։
Մարց. Լաւ, ի՞նչ պատահեց, իմ ազնիւ տէրըս։
Հոր. Ի՞նչ եղաւ, իշխան։
Համ. Օ՜հ, զարմանալի՜։ 121
Հոր. Դէ՜հ, պատմեցէք մեզ, սիրելի տէրըս։
Համ. Ոչ. դուք կը յայտնէք։
Հոր. Ե՞ս, երբէք, տէր իմ, երկինքն է վկայ։
Մարց. Ոչ էլ ես, տէր իմ։
Համ. Լաւ, ի՞նչ կ'ասէիք, ո՞ր ադամորդու մտքովը կ'անցնէր . . .
Գաղտնի կը պահէ՞ք։
Հոր. ու Մարց. Կը պահենք, տէր իմ, երկինքն է վկայ։
Համ. Չըկայ մի սրիկայ ամբողջ Դանիմարքայում, 126
Որ . . . մի անզգամ դաւաճան չլինի։
Հոր. Պէտք չըկար, տէր իմ, որ մի ուրուական գերեզմանից գար
Մեզ այդ ասելու։
Համ. Այո, իրաւ է, իրաւունք ունիք։
Այսպէս ուրեմըն, առանց այլ եւ այլ դարձըւածքների, 130
Յարմար եմ գտնում, որ ձեռք տանք իրար, եւ թողնենք գընանք,
Դուք, ուր ձեր գործը կամ ձեր փափագը կանչում լինեն ձեզ, —
Քանի որ անշուշտ ամեն մարդ մի գործ եւ փափագ ունի՝ —
Իսկ ես, խղճալիս, տեսէք, գընում եմ աղօթք անելու։ 134
Հոր. Դըրանք անհեթեթ, տարտամ խօսքեր են, սիրելի իշխան։
Համ. Ցաւում եմ որ ձեզ վիրաւորում են, ցաւում եմ սրտանց։
Հոր. Վիրաւորելու բան չըկայ, տէր իմ։
Համ. Կայ, կայ, Հորացիօ, սուրբ Պատրիկ վկայ,
Եւ նոյնիսկ շատ խիստ վիրաւորանք կայ։
Ինչ այս տեսիլքին վերաբերում է՝ այսքանն ասեմ ձեզ,
Թէ նա բարեմիտ մի ուրուական է. 141
Իսկ եթէ երբէք ուզէք իմանալ ինչ անցաւ մեր մէջ,
Լաւ է որ զսպէք ձեր այդ փափագը, ինչպէս կարող էք։
Այժըմ, սիրելի բարեկամներըս,
Իբրեւ բարեկամ, իբրեւ դասընկեր, իբրեւ զինակից՝ 145

Մի՛ չնչին աղէրս շնորհեցէք ինձ։
Հոր. Ի՞նչ բան, ազնիւ տէր, ամենայն սիրով։
Համ. Չը յայտնել ինչ որ այս գիշեր տեսաք։
Հոր. եւ Մարց. Չենք յայտնի, տէր իմ։
Համ. Ոչ, ոչ, երդուեցէք։
Հոր. Ազնիւ խօսք, տէր իմ, ոչինչ չեմ յայտնի։
Մարց. Ոչ էլ ես, տէր իմ, պատուիս վրայ երդւում։
Համ. Իմ սրիս վրայ։
Մարց. Երդուեցինք արդէն, սիրելի իշխան։
Համ. Ո՛չ, սրիս, վրայ, լուրջ, սրիս վրայ։
Ուր. (գետնի տակից) Երդուեցէք։
Համ. Հա՛, մանչուկ. դու ես. այդ դու ես խօսում, ա՛յ դու, ազնիւ մարդ.
— Եկէք, լսեցի՞ք այս մարդու ձայնը գետնափորից։
Զիջեցէք երդուել։
Հոր. Շատ լաւ, ասացէք թէ ինչպէս երդուենք։
Համ. Երբէք չը յայտնել ձեր այս տեսածը,
Երդուեցէք սրիս վրայ։
Ուր. (գետնի տակից) Երդուեցէք։
Համ. Hic et ubique? պէտք է ուրեմըն տեղներըս փոխենք։
Եկէք, պարոններ, ձեռքներըդ մէկ էլ դրէք սրիս վրայ.
Երբէք չըխօսել ձեր լսածի վրայ,
Երդուեցէք սրիս վրայ։
Ուր. (գետնի տակից) Երդուեցէք։
Համ. Լաւ, ծերուկ խլուրդ. ինչպէս արագ ես գետնի տակ գործում։
Քա՜ջ ռահվիրայ ես։ — Մէկ էլ տեղ փոխենք, բարեկամներըս։
Հոր. Տէր, Աստուած. սա ինչ օտարոտի է։
Համ. Դու էլ ընդունիր, ինչպէս կ'ընդունեն օտարականին.
Որքան բաներ կան, Հորացիո, երկնքում եւ երկրի վրայ,
Որ երբ եւ իցէ փիլիսոփայութիւնդ չէ իսկ երազել։
— Բայց եկէք. այստեղ, ինչպէս քիչ առաջ, երդուեցէք կրկին,
— Եւ թող ձեզ Աստուած օգնական լինի — որ ես որքան էլ
Անհասկանալի եւ տարօրինակ վարմունք ունենամ,
Եւ կարելի է որ յարմար դատեմ

*Արտառոց ձեւեր ցոյց տալ արտաքուստ,*
*Եւ դուք, այդպիսի պարագաներում եթէ ինձ տեսնէք,*
*Չը պէտք է երբէք, այսպէս թեւներըդ խաչաձեւելով,* 175
*Եւ կամ թէ այսպէս գըլուխ շարժելով,*
*Կամ կասկածելի մի խօսք ասելով,*
*Ինչպէս "Լաւ է, լաւ, մենք այդ լաւ գիտենք",*
*Կամ "Կարող էինք, եթէ ուզէինք",* 179
*Կամ "Եթէ խօսենք", կամ թէ "Մարդիկ կան որոնք կարող են"...*
*Կամ թէ այդպիսի երկմիտ ակնարկով այնպէս ձեւացնէք,*
*Թէ որեւէ բան գիտէք իմ մասին։*
*Երդուեցէք չանել, եւ թող Աստուծոյ ողորմութիւնը*
*Ձեր ամենէն շատ կարօտ րոպէին օգնութեան գայ ձեզ։* 184
*Երդուեցէք։*

*Ուր.* (գետնի տակից) *Երդուեցէք։*

*Համ.* *Հանդարտուիր, հանդարտուիր, վրդովուած ոգի։*

Երդւում են։

*Այսպէս, պարոններ, իմ բոլոր սիրով հրաժեշտ եմ առնում.*
*Եւ ամեն ինչ որ Համլէտի նման չքաւոր մի մարդ,*
*Կարող է անել՝ ձեզ իր սրտի սէրն արտայայտելու,*
*Աստուած կամենայ, անտես չեմ անի։*
*Եկէք ներս գընանք բոլորս միասին, եւ աղաչում եմ* 190
*Դըրէք ձեր մատը ձեր շըրթունքի վրայ.*
*Ժամանակն իր շաւղից դուրս է սայթաքել. օ՜հ, բախտ իմ դժխեմ,*
*Ինչու՞ ծընուեցայ որ հէնց ես ուղղեմ։*
*Եկէք բոլորս գընանք միասին։*

Դուրս են գնում։

□ □ □

# ԱՐԱՐՈՒԱԾ ԵՐԿՐՈՐԴ

—

## ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Մի սենեակ Պոլոնիուսի տանը.*
*Գալիս են Պոլոնիուս եւ Ռէյնալդօ:*

Պոլ. *Ահա, Ռէյնալդօ, տուր նրրան այս փողն ու այս թղթերը։*
Ռէյն. *Շատ բարի, տէր իմ։*
Պոլ. *Եւ խելացի բան արած կը լինես, բարի Ռէյնալդօ,*
*Եթէ նախ քան թէ նրրան այցելես՝*
*Հարց ու փորձ անես նրա վարքի մասին։*
Ռէյն. *Տէր իմ, այդպէս էլ մտադիր էի։*
Պոլ. *Հա՛, լաւ ասացիր. շատ լաւ ասացիր։ Ինձ նայիր, պարոն,*
*Նախ տեղեկացիր թէ Փարիզի մէջ ի՛նչ Դանիացիք կան,*
*Եւ ի՛նչպէս, եւ ո՛վ, ի՛նչ միջոցներով, եւ ո՛ւր են ապրում,*
*Ի՛նչ ընկերութիւն, եւ ո՛րքան ծախքով,*
*Եւ երբ այսպիսի ոլոր ու մոլոր քո հարցուփորձով*
*Տեսնես որ նրրանք ծանօթ են որդուս,*
*Այդպէս աւելի մօտ կը գաս խնդրին,*
*Քան թէ ուղղակի հարցումներ տալով։*
*Ցոյց տուր, որպէս թէ հարեւանցօրէն ծանօթ ես իր հետ.*
*Օրինակ, այսպէս, "ծանօթ եմ հօր հետ, ընկերների հետ,*
*Մասամբ էլ իր հետ„։ Հասկացա՞ր, Ռէյնալդօ։*
Ռէյն. *Այո, լաւ, տէր իմ։*
Պոլ. *"Մասամբ էլ իր հետ„, "բայց„, կ'ասես, "ոչ շատ„.*
*"Թէ իմ ասածն է, շատ գիժն է„, կ'ասես։ "Այսպէս է, այնպէս„։*

Յետոյ դիր վըրան ի՛նչ չինծու բաներ որ յարմար դատես.
Բայց ոչ այնպիսի խայտառակ մի բան, որ արատ բերէ.
Զգոյշ կաց դրանից. այլ միայն, պարոն,
Այնպիսի շուայտ, խօլ, սովորական մոլորութիւններ,
Որ ջահիլութեան եւ ազատութեան.
Ծանօթ ու յայտնի ընկերներն են միշտ։

Ռէյն. Ինչպէս թուղթ խաղալ։

Պոլ. Այո, կամ խմել, կամ զինամարտել, հայհոյել, կռուել,
Պոռնիկներ պահել. մինչեւ այդքանը կարող ես գնալ։

Ռէյն. Տէր իմ, դա նըրան անպատիւ կ՚անէ։

Պոլ. Չէ, հոգիս վկայ.
Միայն թէ պէտք է մեղադրանքներըդ քիչ բարեխառնես.
Պէտք չէ այնպիսի խայտառակ մի բան վերագրես նըրան,
Որպէս թէ իրաւ նա հակամէտ է անժուժկալութեան.
Ոչ, այդ չեմ ուզում. այլ պէտք է այնպէս ճարտար արուեստով
Դուրս բերես նըրա թերութիւնները,
Որ ազատութեան արատներ թըւան,
Կըրակոտ ոգու բոցն ու պոռթկումը,
Դեռ անզուսպ արեան վայրենութիւնը,
Որ գրոհ է տալիս ամեն մարդու մէջ։

Ռէյն. Բայց, ազնիւ տէրըս . . .

Պոլ. Կ՚ասես, ի՛նչ հարկ կայ այդպէս վարուելու։

Ռէյն. Այո, կ՚ուզէի հէնց այդ իմանալ։

Պոլ. Լաւ, պարոն, այս է իմ ծըրագիրը.
Ու, համոզուած եմ, դա թոյլատրելի վարպետութիւն է.
Մինչդեռ դու այդպէս թեթեւ յանցանքներ ձգես որդուս վըրայ,
Ինչպէս արատներ, որ գործածումից լինեն գոյացած,
Քո խօսակիցը, որից ուզում ես խօսք քաշել, ուշ դի՛ր,
Եթէ երբ եւ է քո ամբաստանած երիտասարդին
Քիչ առաջ ասած յանցանքների մէջ նկատած լինի՝
Վստահ կաց, խօսքիդ այսպէս վերջ կը տայ.
“Յարգելի՛ պարոն„, կամ թէ “բարեկա՛մ„, կամ “ազնիւ պարոն„,
Նայելով երկրի յարգանքի ոճին եւ մարդու դիրքին։

Ռէյն. Շատ բարի, տէր իմ։
Պոլ. Եւ յետոյ, պարոն, նա կ'առէ... կ'առէ... ի՞նչ էի ասում.
Համ, խաչը վկայ, ասում էի թէ... խօսքըս ո՞ւր մընաց։
Ռէյն. Ասում էիք թէ «Այսպէս վերջ կը տայ», 54
«Յարգելի պարոն», կամ թէ «բարեկամ», կամ «ազնիւ պարոն»։
Պոլ. «Այսպէս վերջ կը տայ», ճիշդ է, միտս եկաւ.
Այսպէս կ'առէ քեզ «Ես այդ պարոնին լաւ ճանաչում եմ.
Հէնց երեկ տեսայ, կամ թէ անցեալ օր,
Կամ թէ այս ինչ օր, այն ինչ մարդու հետ, 59
Կամ թէ այս ինչ տեղ, ինչպէս ասում էք, նա թուղթ էր խաղում.
Կամ թէ այս ինչ տեղ արբած ընկած էր,
Կամ թէ այն ինչ տեղ թէնիս խաղալիս կռիւ էր սարքել»։
Կամ գուցէ կ'առէ «Տեսայ երբ մտաւ մի վաճառատուն».
Ուզում եմ ասել վատահամբաւ տուն, եւ այլն, հասկացա՞ր.
Քո սուտի խայծը այսպէս կը բռնէ ճշմարտութեան ձուկը.
Եւ ահա այսպէս մենք խելացիներս ու վարպետներըս 66
Կարողանում ենք խոտոր հարցերով եւ շեղ փորձերով
Անուղղութիւնից ուղղութիւն գտնել.
Նոյնպէս էլ եւ դու իմ ասած ձեւով եւ խորհուրդներով
Կարող կը լինես դուրս բերել որդուս որպիսութիւնը։ 70
Հասկացա՞ր միտքըս։
Ռէյն. Հասկացայ, տէր իմ։
Պոլ. Բարի ճանապարհ, եւ Աստուած քո հետ։
Ռէյն. Շնորհակալ եմ։
Պոլ. Աչքովդ դիտիր նորա հակումը։
Ռէյն. Այո, ազնիւ տէր։
Պոլ. Եւ թող տուր որ նա իր մուզիկն ածէ։
Ռէյն. Շատ բարի, տէր իմ։
Պոլ. Բարի ճանապա՛րհ։

Ռէյնալդօ գնում է. ներս է մտնում Օֆէլիան։

Ի՞նչ կայ, Օֆէլիա, ի՞նչ է պատահել։ 75
Օֆ. Ա՜հ, հայր իմ, հայր իմ, ա՜յնպէս վախեցայ։

Պոլ. Ի՞նչ է պատահել, ի սէր Աստուծոյ։
Օֆ. Տէր իմ, սենեակումս կար էի անում,
Երբ իշխան Համլէտ՝ բաճկոնի կոճակներն ամբողջ արձակած,
Առանց գլխարկի, եւ գուլպաները սաստիկ կեղտոտուած,
Անկապ, կախ ընկած մինչեւ ոտքերը,
Իր շապկից գունատ, երկու ծնկները իրար բաղխելէն,
Եւ մի այնպիսի խղճալի նայւածք իր աչքերի մէջ,
Կարծես դժոխքից արձակւած լինէր
Արհաւիրքները պատմելու համար՝ եկաւ իմ առաջ։
Պոլ. Քո՞ սիրուց գժւած։
Օֆ. Չը գիտեմ, տէր իմ.
Բայց անկեղծն ասած, շատ եմ վախենում որ այդպէս լինի։
Պոլ. Եւ քեզ ի՞նչ ասաց։
Օֆ. Ձեռքիս դաստակից բռնեց, պինդ պահեց,
Եւ իր բազուկի հեռաւորութեամբ յետ յետ գնալով
Եւ իր միւս ձեռքը այսպէս դնելով ունքերի վերայ՝
Սկսեց այնպէս երեսըս զննել,
Որպէս թէ ուզէր պատկերըս քաշել.
Եւ երկար այսպէս նա կանգնած մնաց.
Ի վերջոյ, թեւըս մի քիչ ցնցելով
Եւ երեք անգամ այսպէս գլուխը վերեւ տանելով՝
Այնպիսի մի խոր ու սրտաճմլիկ հառաչ արձակեց,
Որ կարծես թէ այդ ջարդեց ու փշրեց նրրա ողջ կազմը,
Եւ նրրա կեանքին վերջ տըւաւ մէկէն։ Այդ անելուց յետ
Ձեռքըս բաց թողեց եւ գլուխը շրջած իր ուսի վերայ՝
Կարծես գտնում էր իր ճանապարհը առանց աչքերին,
Եւ առանց նրրանց օժանդակութեան դռնից դուրս գնաց,
Մինչեւ վերջ նայւածքն իմ վերայ յառած։
Պոլ. Եկ ինձ հետ գնանք. ուզում եմ երթալ թագաւորի մօտ.
Դա սիրոյ բուռն յափշտակումն է,
Որի թունդ թափը հէնց ինքն է դառնում իր կործանիչը,
Եւ կամքը մղում դէպի յուսահատ ձեռնարկութիւններ,
Ինչպէս ամեն կիրք այս աշխարհի մէջ,

Որ բռնանում է մեր հոգու վրայ։ Սաստիկ ցաւում եմ։
Արդեօք վերջերըս նըրան որ եւ է խիստ բան ես ասել։

Օփ. Ոչ, բարի հայր իմ, միայն, ինչպէս ինձ պատուիրել էիք,
Իր նամակները յետ ուղարկեցի,
Եւ թոյլ չը տուի որ ինձ այցելէ։

Պոլ. Հէնց դա է նըրան այսպէս խենթացրել. ցաւում եմ սաստիկ,
Որ աւելի լաւ նախազգուշութեամբ եւ դատողութեամբ
Չեմ դիտել նըրան. վախենում էի
Թէ նըրա կողմից դա մի քըմայք էր,
Եւ կամենում էր քեզ անբախտացնել։
Անիծուած լինեն իմ կասկածները։
Երկինքը վկայ, այնքա՛ն յատուկ է մեր ծերութեանը
Մեր կասկածները շատ հեռու մղել,
Որքան յատուկ է դեռահասներին անխոհեմ լինել։
Գընանք միասին թագաւորի մօտ.
Պէտք է այդ մասին նըրան լուր տրուի.
Ինչ որ ծածկելը մեզ շատ աւելի գըլխացաւ կը տայ,
Քան թէ յայտնելը՝ դժկամակութիւն։

գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Փողահարութիւն. գալիս են Թագաւորը, Թագուհին, Ռոզենկրանց, Գիլդենշտերն եւ Սպասաւորներ:*

Թագ. Բարով էք եկել, սիրելի Ռոզենկրանց, եւ դուք, Գիլդենշտերն։
Բացի նըրանից որ ձեր տեսութեան կարօտել էինք,
Պէտք ունինք նաեւ ձեր աջակցութեան.
Այս պատճառով է որ ձեզ շտապով կանչեցինք այստեղ։
Անշուշտ Համլէտի այլափոխումը լսած կը լինէք,

Թող այդպէս ասենք. քանի որ, իրաւ, ոչ ներքին մարդը,
Ոչ էլ արտաքինն այն է, ինչ որ էր։
Թէ ինչ ուրիշ բան, բացի հօր մահից,
Զրկել է նրան գիտակցութիւնից,
Երեւակայել անգամ չեմ կարող։
Այժմ աղաչում եմ ձեզ երկուսիդ էլ,
Որ մանկութիւնից նրա հետ մէկտեղ դաստիարակուել էք
Եւ ընտանի էք նրա բնութեան եւ բարք ու վարքին,
Որ բարեհաճէք կարճ ժամանակով գալ հանգստանալ
Մեր արքունիքում. եւ այդպէս, շնորհիւ ձեր ընկերութեան,
Նրան հրապուրէք զբօսանքների,
Եւ օգտուելով պատեհ առիթից, երբ հնար լինի,
Հասկանանք թէ ինչ մեզ անյայտ մի բան տանջում է նրան,
Որին ճար անել կարողանայինք։
Թագ՚. Ազնիւ պարոններ, յաճախ ձեր մասին նա խօսք է արել,
Եւ, հաստատ գիտեմ, չը կայ աշխարհում երկու ուրիշ մարդ,
Որոնց աւելի նուիրուած լինի։ Թէ հաճոյ է ձեզ
Այնքան սիրալիր եւ բարեացակամ լինել դէպի մեզ,
Որ մի ժամանակ հիւր մնաք մեր մօտ
Եւ մեր յոյսերի իրականացման աջակից լինէք՝
Ապա ձեր այցը կը ստանայ այնքան շնորհակալիք,
Որքան վայել է մի թագաւորի բարեյիշութեան։
Ռոզ. Ձեր Մեծութիւնքը՝ վեհապետական այն իշխանութեամբ,
Որ ունին մեր վրայ՝ կարող են իրենց ահեղ հաճոյքը
Պարտադիր անել, ոչ իբրեւ խնդրանք, այլ իբրեւ հրաման։
Գիլդ. Բայց հնազանդ ենք ձեզ, եւ ահա այստեղ պարտաւորւում ենք
Դնել մեր բոլոր ծառայութիւնը ձեր ոտքի առաջ,
Եւ սպասում ենք ձեր հրամաններին։
Թագ. Շնորհակալ ենք, ազնիւ Ռոզենկրանց, եւ ձեզ, Գիլդենշտերն։
Թագ՚. Շնորհակալ ենք, ազնիւ Գիլդենշտերն, եւ ձեզ, Ռոզենկրանց,
Եւ խնդրում եմ ձեզ իսկոյն այցելէք խիստ փոխուած որդուս։
— Հէյ, եկէք, տարէք այս պարոններին որդուս սենեակը։
Գիլդ. Տա՛յ Աստուած որ մեր ներկայութիւնը եւ ձեռնարկները

Նրանց օգտաւէտ եւ հաճոյ լինեն։
Թագհ. Ամէ՛ն։

Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտէրն եւ մի քանի պալատականներ գնում են.
Գալիս է Պոլոնիոս։

Պոլ. Ողորմած տէր իմ, մեր դեսպանները գոհունակութեամբ
Վերադարձել են Նորվեգիայից։
Թագ. Միշտ հայր էք եղել բարի լուրերի։
Պոլ. Իսկապէ՞ս, տէր իմ. Թող վեհապետըս հաւատի լինի,
Որ նուիրում եմ հոգիս ու պարտքըս,
Մէկը՝ Աստծուս, միւսը ողորմած իմ Թագաւորին.
Եւ, համոզուած եմ, — եթէ ուղեղըս ընդունակ է դեռ
Վարչագիտութեան շաւղով ամեն հետք
Այնպէս անվրէպ հետապնդելու, ինչպէս սովոր էր, —
Որ ես գտել եմ Համլէտի ցաւի ստոյգ պատճառը։
Թագ. Ասա՛, ասա՛ շուտ. խիստ անհամբեր եմ լսելու համար։
Պոլ. Նախ դեսպաններին ունկնդրութիւն տուէք.
Պէտք է իմ լուրը այս մեծ խնջոյքի պտուղը լինի։
Թագ. Գնացէք նրանց պատուասիրեցէք, յետոյ ներս բերէք։

Գնում է Պոլոնիոս։

Սիրելի Գերտրուդ, նա ինձ ասում է թէ հասկացել է
Քո որդու բոլոր անհանգստութեան բուն իսկ աղբիւրը։
Թագհ. Իսկ ես կարծում եմ որ մէկ գլխաւոր պատճառ կայ միայն,
Այն է, հօր մահը եւ մեր խիստ հապճեպ ամուսնանալը։
Թագ. Այո, բայց պէտք է նրան լաւ մաղենք։

Մտնում է Պոլոնիոս, Վոլտիմանդի եւ Կոռնելիուսի հետ։

Ձեզ բարի գալուստ, բարեկամներս.
Ասա՛, Վոլտիմանդ, մեր Նորվեգիացի եղբօրից ի՞նչ լուր։
Վոլ. Փոխադարձ ողջոյն եւ շատ մաղթանքներ։
Սկզբից եւեթ՝ նա մարդ ուղարկեց որ դադարեցնեն
Իր եղբօրորդու զօրահաւաքը, որը, կարծում էր
Թէ պատրաստւում է Լեհաստանի դէմ։ Բայց երբ ստուգեց,

Տեսա, որ իրօք դա ուղղուած էր Ձեր Բարձրութեան դէմ։
Սաստիկ վշտացած, որ այնպէս նորա հիւանդութիւնը,
Տկարութիւնը եւ ծերութիւնը շահագործուել են՝
Ձերբակալութեան հրաման արձակեց Փորտինբրասի դէմ.
Իսկ սա, կարճ, սեղմ, հնազանդուեց իսկոյն,
Եւ թագաւորից խիստ յանդիմանուեց,
Եւ, վերջը, երդուեց հօրեղբօրն առաջ, որ երբէք այլ եւս
Զէնք չը վերցնէ Ձեր Մեծութեան դէմ։
Այս բանի վրայ ծերուկ Նորվեգը շատ ուրախացած՝
Երեք հազար կրօն տարեկան ռոճիկ շնորհեց նորան,
Եւ պաշտօն յանձնեց որ իր հաւաքած բոլոր բանակը,
Այնպէս ինչպէս կայ, այժըմ գործածէ Լեհաստանի դէմ,
Խնդրելով ձեզնից, ինչպէս կը տեսնէք իր այս նամակից,

*Տալով մի նամակ*

Որ նորա զօրքին ազատ անցք տաք ձեր երկրի միջից՝
Ապահովութեան եւ արտօնութեան այն պայմաններով,
Որոնք գրուած են այդ նամակի մէջ։

Թագ. Հաւան ենք դորան,
Եւ պատեհ ժամի կարդալուց յետոյ՝ պատասխան կը տանք,
Եւ կը մտածենք այդ խնդրի վրայ։
Ձեր արդիւնաւոր ջանքերի համար շնորհակալ ենք.
Այժմ հանգստացէք. այս գիշեր ձեզ հետ լաւ խնջոյք կ՚անենք։
Բարի վերադարձ։

*Վոլտիմանդ եւ Կոռնելիուս դուրս են գնում։*

Պոլ. Ահա այս գործն էլ յաջող վերջացաւ։
Իմ տէր վեհապետ, եւ դուք, տիրուհի,
Տրամաբանել թէ վեհափառը ինչ պէտք է լինի,
Թէ ինչ է պարտքը եւ ինչու համար ցերեկը ցերեկ,
Գիշերը գիշեր, եւ ժամանակը՝ ժամանակ է,
Կը լինէր վատնել գիշերը, ցերեկն ու ժամանակը։
Այժըմ, քանի որ համառօտութիւնը խօսքի հոգին է,
Եւ ճապաղութիւնը՝ նորա անդամներն ու դրսի զարդը,

Ես կարճ կը խօսեմ։ Ձեր ազնիւ որդին խելագարուած է.
Այո, խելագար կարող եմ ասել.
Քանի որ եթէ բուն խենթութիւնը որակել ուզենք,
Ի՞նչ է այն, թէ ոչ՝ լինել ոչ այլ ինչ, թէ ոչ խելագար։
Բայց թողնենք դեռ այդ։

Թագ. Աւելի նիւթ տուր եւ պակաս արուեստ։

Պոլ. Երդւում եմ, տիկին, որ բնաւ արուեստ չեմ բանեցնում։
Այն, որ նա խենթ է, ճիշդ է. որ ճիշդ է, շատ ցաւալի է,
Եւ ցաւալի է, որ այդպէս ճիշդ է.
Ահա մի անմիտ շրջաբանութիւն.
Բայց այդ էլ թողնենք. բնաւ չեմ ուզում արուեստ բանեցնել.
Ուրեմն ընդունենք որ խելագար է.
Այժըմ մընում է այս հետեւանքի պատճառը գտնել,
Կամ լաւ է ասել, այս թեթեւանքի.
Քանի որ անշուշտ այդ թեթեւական հետեւանքն անգամ
Իր պատճառն ունի. մընում է ուրեմն, եւ մնացորդն այս է...
Լաւ ուշ դարձրէք. ես մի դուստր ունիմ,
— Ունիմ, այսինքըն քանի նա իմն է —
Որ, որդիական պարտականութեամբ եւ հնազանդութեամբ,
Լաւ մտիկ արէք, այս բանն ինձ տուաւ։

Ցոյց է տալիս մի նամակ։

Այժմ ամփոփեցէք եւ եզրակացրէք։

կարդում է

Առ իմ երկնային, հոգեւին պաշտելի, չքնաղագեղ Օֆէլիան։

Ի՞նչ անպիտան ոճ, հասարակ ոճ է, չքնաղագե՛ղ, շատ հասարակ ոճ է, բայց հիմա կը լսէք. այսպէս.

կարդում է

"Իր սքանչելի սպիտակ կուրծքին...

Թագ. Համլէ՞տն է գրել։

Պոլ. Սիրելի տիրուհիս, մի քիչ սպասէք, բոլորը կ'ասեմ։

կարդում է

Կասկածիր աստղերի փայլելու վըրայ,
Կասկածիր արեւի շրջելու վըրայ,
Ճշմարտութեան վրայ նոյն իսկ կասկածիր,
Բայց սիրուս վըրայ դու մի՛ կասկածիր։

Սիրելի Օֆէլիա, ոտանաւոր գրելու մէջ անվարժ եմ. հեծեծանքներս չափաբերելու արուեստը տրուած չէ ինձ. բայց որ քեզ ամէն բանից աւելի եմ սիրում, ո՜հ, ամէն բանից աւելի, հաւատա դըրան, մնաս բարով.

Ընդ միշտ քոյդ, ամենասիրելի օրիորդ, որչափ որ այս մեքենան ինձ պատկանի՝

Համլէտ։,,

Դուստրըս ամենայն հըլնազանդութեամբ ցոյց տըւաւ ինձ այս.
Եւ դեռ աւելին՝ Համլէտի բոլոր սիրախօսանքը,
Տեղը, ժամանակն ու միջոցները, յանձնեց ականջիս։
Թագ. Իսկ ինքն ի՞նչպէս է այդ սէրն ընդունել։
Պոլ. Ի՞նչ կարծիք ունիք արդեօք իմ մասին։
Թագ. Որ հաւատարիմ եւ ազնիւ մարդ էք։
Պոլ. Հէնց այդ կ'ուզէի ձեզ ապացուցել։ Ի՞նչ կը կարծէիք,
Եթէ այդ սէրը տեսած լինէի՝ երբ թեւ էր հանում,
— Եւ պէտք է ասեմ, թէ արդէն ես այդ նկատել էի
Աղջիկըս չասած, — ի՞նչ կը կարծէիք, կամ ի՞նչ կը կարծէր
Իմ այս սիրելի վեհափառուհիս եւ ձեր թագուհին,
Թէ թղթակալի կամ գրասեղանի դերն ստանձնէի,
Կամ սրտիս աչքը փակած լինէի, լռիկ ու մնջիկ,
Կամ թէ անտարբեր նայած լինէի այս սիրոյ վըրայ։
Ի՞նչ կը խորհէիք։ Ոչ, ես ուղղակի գործի դիմեցի,
Եւ օրիորդիս այսպէս խօսեցի.
"Իշխան Համլէտը թագաւորազն է, բարձր է քո աստղից.
Երբէք այդ բանը չը պէտք է լինի,,։
Յետոյ ես նըրան խրատներ տըւի,
Որ խոյս տայ նըրա այցելութիւնից,
Ոչ նամակ առնէ, եւ ոչ ընծաներ.
Այսպէս վարուելով՝ նա իմ խորհուրդի պտուղը քաղեց,

Համլէտ մերժուելով, շատ չերկարացնեմ,
Ենթակայ եղաւ մելամաղձութեան, եւ յետոյ ծոմի,
Յետոյ անքնութեան, յետոյ՝ թուլութեան, 154
Եւ կամաց կամաց թեթեւմտութեան, եւ այս վայրէջքով
Նա եկաւ հասաւ այն խենթութեանը, որից տանջւում է,
Եւ որի վրայ ողբում ենք բոլորս։

Թագ. Ա՞յդպէս էք կարծում։

Թագն. Կարող է լինել. հաւանական է։

Պոլ. Ասացէք խնդրեմ, եղա՞ծ է երբէք,
Որ ասած լինեմ դրրականապէս "Այս բանն այսպէս է", 160
Եւ հակառակը պատահած լինի։

Թագ. Ոչ, որքան գիտեմ։

Պոլ. (Իր գլուխը եւ ուսը ցոյց տալով) Առէք այս սրանից, թէ ճիշդ չը լինի։
Թէ հանգամանքներն առաջնորդեն ինձ՝
Ես դուրս կը բերեմ, թէ ճշմարտութիւնն ո՞ւր է թաքնուած,
Թէպէտ եւ երկրի արգանդի մէջն էլ ծածկուած լինի։ 165

Թագ. Ի՞նչպէս կարող ենք աւելի ստուգել։

Պոլ. Գիտէք, երբեմըն ամբողջ ժամերով զբօսնում է նա
Այստեղ, դաւթի մէջ։

Թագ. Այո, այդպէս է։

Պոլ. Մի օր այդ ժամին դուստրըս նորա հետ մենակ կը թողնեմ.
Պէտք է դուք եւ ես մի եւ նոյն ժամին թաքնուած լինենք
Արրասի ետեւ, որ դիտենք նորանց տեսակցութիւնը։ 171
Թէ ճիշդ չը լինի որ նա աղջկան սիրահարուած է,
Եւ հէնց դրանից խելքը կորցրրած,
Ջուր է ուրեմըն որ ես պետութեան օգնական լինեմ,
Այլ թող ագարակ եւ սայլեր պահեմ։

Թագ. Շատ լաւ, կը փորձենք։

Թագն. Բայց տեսէք ինչպէս խեղճ ողորմելին գալիս է տրտում 176
Մի բան կարդալէն։

Պոլ. Հեռացէք, խնդրեմ, երկուսդ էլ, թողէք ես խօսեմ իր հետ։

Թագաւորը, թագուհին եւ պալատականները հեռանում են.
Գալիս է Համլէտ՝ մի բան կարդալով։

Պոլ. Թո՛ղ տուէք, խնդրեմ, ինչպէս է արդեօք իմ բարի իշխան Համլէտը։ 180

Համ. Լաւ, փառք Աստուծոյ։

Պոլ. Ճանաչո՞ւմ էք ինձ, տէր իմ։

Համ. Շատ լաւ. դուք ձկնավաճառ էք։

Պոլ. Ոչ, տէր իմ։

Համ. Երանի թէ մի ձկնավաճառի չափ պարկեշտ մարդ լինէիք։ 185

Պոլ. Պարկե՞շտ. տէր իմ։

Համ. Այո, պարոն. այս օրուան օրը պարկեշտ մարդ լինել՝ նշանակում է տասը հազարից մէկը լինել։

Պոլ. Իրա՛ւ է, տէր իմ։ 189

Համ. Որովհետեւ, եթէ արեգակը մի սատկած շան մէջ որդեր է ծնեցնում, նա, որ աստուած լինելով հանդերձ՝ լէշ է համբուրում... դու աղջի՞կ ունիս։

Պոլ. Այո, տէր իմ։

Համ. Չը թողնես որ արեւի տակ ման գայ. յղացումը օրհնութիւն է, բայց ոչ թէ այնպէս ինչպէս աղջիկդ կարող է յղանալ... բարեկամ, աչքդ բաց արա՛։ 196

Պոլ. (Առանձին) Ի՞նչ է ուզում ասել. էլի աղջկաս երգն է երգում. բայց սկզբում չը ճանաչեց ինձ. ասաց ձկնավաճառ եմ. բանը բանից անցել է. իրաւ է որ երիտասարդ ժամանակս իմ գլխից էլ սէրը շատ փորձանք բերեց. քիչ էր մնացել հէնց այս վիճակին ընկնէի. նորէն խօսեմ հետը։ — Ի՞նչ էք կարդում, տէր իմ։

Համ. Բառեր, բառեր, բառեր։

Պոլ. Նիւթն ի՞նչ է, տէր իմ։

Համ. Ի՞նչ բանի նիւթը։ 205

Պոլ. Ձեր կարդացածի նիւթը, տէր իմ։

Համ. Զրպարտութիւններ, պարոն. որովհետեւ այս երգիծաբան թշուառականն ասում է այստեղ, թէ ծեր մարդիկ սպիտակ մօրուք ունին, եւ կնճռոտ երես, թէ նրանց աչքերից մի տեսակ թանձր ռետին կամ սալորենու խէժ է ծորում, թէ ուղեղի մեծ պակասութիւն ունին, միանգամայն շատ թոյլ

գլխաւոր։ Թէեւ այդ բոլորին ես շատ զօրեղապէս եւ կարողապէս հաւատում եմ, պարոն, բայց եւ այնպէս կարծում եմ, թէ պարկեշտութիւն չէ այդ տեսակ բաները գրի առնել. որովհետեւ դուք էլ, պարոն, մի օր իմ տարիքին կը հասնէք, եթէ խեցգետնի նման կարողանայիք դէպի յետ գնալ։ 216

Պոլ. (Առանձին) Թէեւ խենթութիւն է, բայց մէթոդ կայ մէջը։ — Տէր իմ, չէ՞ք կամենում մի քիչ այս օդից դուրս գնալ։

Համ. Դէպի գերեզմա՞նս։ 219

Պոլ. Ճիշդ է, գերեզմանը օդից դուրս է։ (Առանձին.) Ինչպէս իմաստալից են երբեմն իր պատասխանները. մի բախտ է դա, որ յաճախ վիճակւում է խելագարութեան, այն ինչ դատողութիւնը եւ ողջմտութիւնը չէին կարող այնպէս յաջող յղանալ։ Թողնեմ գնամ, եւ մի ճար մտածեմ որ սրան եւ աղջկաս իրարու հանդիպեցնեմ։ — Յարգելի տէրս, ամենայն խոնարհութեամբ հրաժեշտ եմ խնդրում։ 226

Համ. Ոչինչ չէիք կարող խնդրել ինձնից, պարոն, որ աւելի յօժարութեամբ տայի, բացի իմ կեանքից, բացի իմ կեանքից, բացի իմ կեանքից։

Պոլ. Մնաք բարով, իշխան։ 230

Համ. Ա՜խ այս ձանձրալի պառաւած յիմարները։

Գալիս են Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտերն։

Պոլ. Իշխան Համլէտին էք փնտռում. ահա այնտեղ է։

Ռոզ. Աստուած ձեզ հետ, տէր իմ։

Պոլոնիուս դուրս է գնում։

Գիլդ. Յարգելի իշխան։

Ռոզ. Ամենասիրելի տէր իմ։ 235

Համ. Բարեւ, պատուական բարեկամներ. ինչպէս ես, Գիլդէնշտերն։ Ա՜հ, Ռոզէնկրա՜նց. ինչպէս էք, տղերք։

Ռոզ. Աշխարհի աննշան զաւակների պէս։

Գիլդ. Բախտաւոր նրանով, որ շատ բախտաւոր չենք։ Բախտի գլխարկի մէջտեղի կոճակը չենք։ 240

Համ. Ոչ էլ նրա կօշկի ներբանը։

Ռոզ. Ոչ էլ այն, տէր իմ։

Համ. Ուրեմն ապրում էք նրա գօտու մօտերքում, կամ թէ նրա շնորհի կենտրոնում։

Գիլդ. Ճիշդ է, շատ մօտերիմ ենք նրա հետ։ 245

Համ. Բախտի թագուհու մասերի հետ. շատ ճիշդ է. նա հօ պոռնիկ է։ Ի՞նչ լուր։

Ռոզ. Ոչինչ, տէր իմ. այն միայն, որ աշխարհը պարկեշտացել է։

Համ. Ուրեմն վերջին դատաստանը մօտեցել է. բայց ձեր լուրը ճիշդ չէ. թոյլ տուէք աւելի որոշ հարցնեմ. բախտին ինչ վնասութիւն էք արել, որ նա ձեզ բանտ է ուղարկել այստեղ։

Գիլդ. Բա՞նտ, տէր իմ։

Համ. Դանեմարքան հօ բանտ է։

Ռոզ. Ուրեմն աշխարհն էլ մի բանտ է։ 254

Համ. Եւ օրինաւո՜ր բանտ, որի մէջ կան զանազան արգելանոցներ, փականներ եւ նկուղներ. իսկ Դանեմարքան ամենէն վատերից մէկն է։

Ռոզ. Մենք այդպէս չենք մտածում, տէր իմ։

Համ. Լաւ, ուրեմն ձեզ համար բանտ չէ. որովհետեւ աշխարհում ոչ լաւ կայ, ոչ վատ. մեր միտքն է այդպէս թւում. ինձ համար բանտ է։ 261

Ռոզ. Ուրեմն ձեր փառասիրութիւնն է որ Դանեմարքան ձեզ համար բանտ է դարձնում. շատ անձուկ է նա ձեր հոգու համար։

Համ. Աստուա՜ծ իմ, ես կարող էի մի ընկուզի կեղեւի մէջ անգամ տեղաւորուիլ, եւ ինքս ինձ անհուն տիեզերքի թագաւորը համարել, միայն թէ այնպէս վատ երազներ չը տեսնէի, ինչպէս այժմ։

Գիլդ. Եւ այդ երազները փառասիրութիւն են, որովհետեւ փառասիրութեան բուն իսկ էութիւնը երազիստուերն է սոսկ։

Համ. Երազն ինքը ստուեր է միայն։ 270

Ռոզ. Ճիշդ, եւ փառասիրութիւնը այնքան թեթեւ եւ օդային բան եմ համարում, որ կարող եմ ասել թէ նա ստուերի ստուերն է միայն։

Համ. Ուրեմն մեր մուրացկաններն իրական մարմիններ են, եւ մեր

թագաւորներն ու կոկոզավիզ հերոսները՝ մուրացկանների ստուերները։ Չէ՞ք ուզում արքունիք գնանք, որովհետեւ, ճիշդն ասած, չեմ կարողանում պարզ մտածել։

Ռոզ. եւ Գիլդ. Ծառայ ենք ձեզ։

Համ. Քաւ լիցի. չեմ ուզում ձեզ միւս ծառաներիս կարգում դասել. որովհետեւ, անկեղծ խօսելով, սարսափելի վատ սպասաւորներ ունիմ. այլ, բարեկամութեան ծեծուած ճանապարհով գնանք. ինչու էք եկել Էլսինոր։

Ռոզ. Ձեզ այցի ենք եկել, տէր իմ, ուրիշ բան չը կայ։

Համ. Ու ի՜նչ չքաւորն եմ ես, որ շնորհակալութեան մէջ անգամ աղքատ եմ. լաւ, շնորհակալ եմ. բայց ճիշդը, սիրելի բարեկամներ, իմ շնորհակալութիւնները մէկ սեւ փող չարժեն։ Ասացէք, ձեզ յատկապէս չե՞ն կանչել. ինքնակա՞մ էք եկել. ազա՞տ այցելութիւն է սա։ Հայդէ՜, անկեղծ վարուեցէք ինձ հետ, հայդէ՜, հայդէ՜. խօսեցէք։

Գիլդ. Ի՞նչ ասենք, տէր իմ։

Համ. Ինչ որ ուզէք, բայց ոչ խնդրից դուրս։ Ձեզ յատկապէս կանչել են, գիտեմ. եւ ձեր աչքերի մէջ մի տեսակ խոստովանութիւն կայ, որ ձեր անկեղծութիւնը չէ կարողանում թագցնել. հաստատ գիտեմ որ բարի թագաւորը եւ թագուհին մարդ են ուղարկել եւ ձեզ կանչել են։

Ռոզ. Ի՞նչ նպատակով, տէր իմ։

Համ. Այդ դո՛ւք պէտք է ինձ ասէք. բայց երդուեցնում եմ ձեզ յանուն մեր ընկերութեան, յանուն մեր պատանեկան մտերմութեան, յանուն մեր յարատեւ սիրոյ, էլ ինչ ասեմ, յանուն աւելի սուրբ բաների, որոնցով իմ լեզուից աւելի ճարտասան լեզուն կարող էր ձեզ երդուեցնել, անկեղծ ու շիտակ եղէք ինձ հետ, արդեօք կանչե՞լ են ձեզ, թէ ոչ։

Ռոզ. (Առանձին Գիլդենստերնին) Ի՞նչ ես ասում։

Համ. (Առանձին) Հա՛, հա՛. պէտք է ուրեմն աչքս ձեր վրայ բաց պահեմ։
(Բարձր) — Եթէ սիրում էք ինձ, մի թագցնէք։

Գիլդ. Այո, տէր իմ, կանչել են մեզ։

Համ. Թէ ինչու համար, այդ ես կասեմ, այնպէս որ ես ձեզ կան-

խնդրով՝ դուք ոչ մի գաղտնիք յայտնած չէք լինի, եւ ձեր գաղտնապահութիւնը դէպի Թագաւորը եւ Թագուհին մի փետուրի չափ անգամ թերացած չի լինի։ Վերջերս չը գիտեմ ինչ պատճառով ես կորցրել եմ ուրախ տրամադրութիւնս, բոլորովին բաց եմ թողել սովորական մարզանքներս, եւ այնպէս մելամաղձոտ եմ դարձել, որ այս հոյակապ կառուցւածքը, երկիրը, ինձ մի ամայի հրւանդան է թւում. այս սքանչելի ամպհովանին, եթերքը, նայեցէք, մեր գլխին կախւած այս հրաշալի երկնակամարը, այս վեհաշուք ձեղունը՝ ոսկի կայծերով նախշւած՝ այս բոլորը աչքիս ուրիշ բան չէ, եթէ ոչ պղտոր ու ժահահոտ գոլորշիների մի համադրութիւն։ Ի՞նչ հրաշակերտ է մարդը. որչափ ազնիւ է նրա դատողութիւնը. որչափ անսահման են նրա ընդունակութիւնները. կազմւածքը եւ շարժումը որչափ բարեձեւ եւ հիանալի. կաց ու նիստով կարծես մի հրեշտակ. խոհականութեամբ, կարծես մի աստուած. աշխարհի գեղեցկութիւնը. կենդանիների կատարելատիպը. այդ բոլորով հանդերձ՝ ի՞նչ է իմ աչքիս հողի այդ գերագոյն զտւածքը. մարդը չէ հիացնում ինձ. ո՛չ, ոչ էլ կինը, թէեւ քմծիծաղովդ երեւի այդ ես ուզում ասել։ 326

Ռոզ. Տէր իմ, այդպիսի բան մտքովս էլ չանցաւ։

Համ. Ուրեմն ինչու ժպտացիր, երբ ասացի թէ մարդը ինձ չէ հիացնում։ 329

Ռոզ. Տէր իմ, մտածեցի որ եթէ մարդը ձեզ չէ հիացնում, ինչ պաս օրւայ ընդունելութիւն են գտնելու ձեր մօտ այն դերասանները. մենք հիմա ճանապարհին հանդիպեցանք նրանց. գալիս են այստեղ իրենց ծառայութիւնը առաջարկելու։

Համ. Թագաւորի դերակատարը լաւ ընդունելութիւն կը գտնէ. նորին վեհափառութիւնը ինձնից պարտ ու պատշաճ տուրք կը ստանայ. բախտախնդիր ասպետը իր սուրն ու վահանը ի զուր գործի չի դնի. սիրահարը ձրի չի հառաչի. մելամաղձոտին համբերութեամբ թոյլ կը տրւի, որ իր դերը վերջացնէ. միմոսը դիւրագրգիռ թոքեր ունեցողներին լաւ կը ծիծաղեցնէ, եւ տիկինը իր սրտի ուզածն ազատօրէն կ'ասէ. այլապէս, ան-

յանգ ոտանաւորի ոտքը կաղ կը մնայ։ Ի՞նչ դերասաններ են։

Ռոզ. Հէնց նրանք, որ ձեզ այնքան դուր էին գալիս. քաղաքի դերասանները։

Համ. Ի՞նչ է պատահել, որ հիմա նրանք շրջում են. չէ՞ որ կայուն բնակութիւնը աւելի ձեռնտու է թէ՛ համբաւի տեսակէտից, թէ՛ շահի կողմից։ 346

Ռոզ. Կարծեմ թէ նրանց վրայ դրուած արգելքը վերջին նորամուծութեան պատճառով է։

Համ. Արդեօք նրանք նոյնչափ գնահատուած են, որչափ երբ ես քաղաքումն էի. յաճախող շա՞տ է լինում։ 350

Ռոզ. Ճիշդն ասած, ոչ այնքան։

Համ. Ի՞նչ է պատճառը, ժանգոտե՞լ են, ի՞նչ է։

Ռոզ. Ոչ, նրանց դերակատարութիւնը իր սովորական բարձրութեան վրայ է. բայց հիմա, տէր իմ, մի խումբ երեխաներ են թուխսից դուրս եկել, նոր ձուից ելած բազէի ճուտեր, որոնք մէկ գլուխ զռռում գոչում են, եւ հասարակութիւնը բռնակալօրէն ծափահարում է հէնց դրա համար. նրանք են այժմ օրուայ նորութիւնը. եւ նրանք այնպէս վատաբանում են հասարակ բեմերը, — այդպէս են կոչում սովորական թատրոնները — որ շատ սուր կրողներ այսօր վախենում են սագի փետուրից, եւ չեն համարձակւում այդ թատրոնները յաճախել։

Համ. Իսկապէս երեխանե՞ր են նրանք. ո՞վ է նրանց պահում, ո՞վ է ծախքերը վճարում. միթէ ա՞յնքան ժամանակ միայն պիտի խաղան, որքան որ երգել գիտեն. իսկ յետոյ, երբ իրենք էլ մեծանան եւ սովորական դերասաններ դառնան, — ինչ որ շատ հաւանական է, եթէ ապրուստի ուրիշ միջոց չունենան — չե՞ն ասի թէ, այդ գրողները նրանց ինչ մեծ վնաս են հասցրել, նրանց ստիպելով իրենց իսկ ապագայի դէմ բարբառել։ 369

Ռոզ. Ճիշդն ասած, երկու կողմերն էլ շատ աղմուկ հանեցին, իսկ ժողովուրդը մեղք չէ համարում նրանց իրարու դէմ գրգռել. մի ժամանակ կար, որ ոչ ոք թատրոնի փող չէր տայ՝ եթէ բանաստեղծ ու դերասան բանը բռունցքի չը հասցնէին։

*Համ.* Կարելի բան է։

*Ռոզ.* Ա՜հ, այնքան է պատահել որ գանգեր են ջախջախուել։ 375

*Համ.* Եւ այդ տղերքը գործը առաջ են տանում։

*Ռոզ.* Եւ ինչպէս, տէր իմ. Հերկուլէսին էլ իր բեռան հետ միասին։

*Համ.* Զարմանալի չէ, քանի որ հօրեղբայրս է այժմ Դանեմարքայի Թագաւորը. եւ նոյն մարդիկ որ հօրս կենդանութեան ժամանակ հօրեղբօրս վրայ բերան էին ծռում, հիմա նրա մի մանրանկարի համար քսան, քառասուն, յիսուն, նոյն իսկ հարիւր դուկատ են տալիս։ Խա՜չը, ահա՛ մի բան որ բնականից դուրս է, եթէ միայն փիլիսոփայութիւնը բացատրել կարենար։

Փողերի հնչիւն դրսից։

*Գիլդ.* Դերասաններն են։ 384

*Համ.* Պարոններ, ուրախ եմ որ եկել էք Էլսինոր։ Եկէք, ձեր ձեռքը. բարի գալուստ մաղթելը քաղաքավարութեան ձեւ ու ծէս է. թոյլ տուէք որ ես էլ ձեզ հետ նոյն ձեւով վարուիմ. Եթէ ոչ, իմ վարմունքը դերասանների հետ, — որ կանխապէս ասեմ, պէտք է արտաքուստ շատ քաղաքավար լինի, — կարող է աւելի սիրալիր թուալ քան թէ ձեզ հետ։ Բարով էք եկել, բայց հօրեղբայր-հայրս, եւ հօրեղբօրկինմայրս սխալուել են։

*Գիլդ.* Ի՞նչի մէջ, տէր իմ։

*Համ.* Ես այն ժամանակ միայն խելագար եմ, երբ քամին հիւսիս-հիւսիս-արեւմուտք է փչում. իսկ երբ հարաւային է՝ կարող եմ բազէն ճայից զանազանել։ 396

Նորից գալիս է Պոլոնիոսը։

*Պոլ.* Բարեւ ձեզ, պարոններ։

*Համ.* Լսիր, Գիլդենշտերն. (Ռոզէնկրանցին) դու էլ նոյնպէս. ամեն մէկ ականջիս մէկ լսող. այդ մեծ երեխան, որ տեսնում էք այստեղ, խանձարուրից դեռ դուրս չէ եկել։ 400

*Ռոզ.* Գուցէ երկրորդ անգամն է խանձարուրի մէջ ընկել. ասում են, ծերերը երկրորդ անգամ երեխայ են դառնում։

Համ. Կարող եմ գուշակել որ նա հիմա կը գայ դերասանների գալուստն ինձ յայտնելու։ Այո, պարոն, իրաւունք ունիք. երկուշաբթի առաւօտն էր. ճիշդ է, այդպէս էր։

Պոլ. Տէր իմ, լուր ունիմ ձեզ հաղորդելու։

Համ. Տէր իմ, լուր ունիմ ձեզ հաղորդելու։ Երբ Ռոսցիուս դերասան էր Հռովմում...

Պոլ. Դերասաններն եկել են, տէր իմ։

Համ. Բը՜զ, բը՜զ...

Պոլ. Պատուիս վրայ։

Համ. “Եւ յետոյ եկաւ ամէն դերասան իր էշի վրայ:„

Պոլ. Աշխարհի ամենալաւ դերասաններն են, թէ՛ ողբերգութեան համար, թէ՛ կատակերգութեան, թէ՛ պատմութեան, հովուերգութեան, հովուերգա-զաւեշտական, պատմա-հովուերգական, ողբերգա-պատմական, ողբերգա-զաւեշտա-պատմա-հովուերգական, տեսարան անբաժանելի, կամ քերթուած անսահմանափակ։ Սենեկան նրանց համար շատ ծանր չի լինի, ոչ էլ Պլաւտոսը՝ շատ թեթեւ։ Թէ՛ կանոնաւորութեան օրէնքի կողմից, թէ՛ ազատութեան տեսակէտից՝ սրանց նմանը չը կայ։

Համ. Ով Յեփթայէ, դատաւոր Իսրայէլի, ի՜նչպիսի գանձ ունէիր։

Պոլ. Ի՞նչպիսի գանձ ունէր, տէր իմ։

Համ. Հը՜,

“Մի սիրուն աղջիկ, եւ ուրիշ ոչինչ,
Մի աղջիկ որին սաստիկ սիրում էր„։

Պոլ. (Առանձին) Դեռ աղջկաս վրայ։

Համ. Ճիշդ չե՞մ ասում, ծերուկ Յեփթայէ։

Պոլ. Եթէ ինձ Յեփթայէ կոչէք, տէր իմ, ապա մի աղջիկ ունիմ, որին սաստիկ սիրում եմ։

Համ. Ոչ, այդ չէ հետեւում։

Պոլ. Ուրեմն ի՞նչ է հետեւում, տէր իմ։

Համ. “Եւ վիճակն ընկաւ Աստուծոյ կամքով„

Մնացածը գիտէք,

“Եւ այնպէս եղաւ, որ պէտք է լինէր„:

*Շարունակութիւնը կը գտնէք "Սրբազան երգերի" առաջին շարքի մէջ, որովհետեւ, տեսէք, խօսքիս կարճումը գալիս է։*

Գալիս են չորս հինգ Դերասան։

*Բարով էք եկել, պարոններ. ամենքդ էլ։ Ուրախ եմ ձեզ առողջ տեսնելուս. բարով էք եկել, սիրելի բարեկամներ։ Ա՛յ, իմ հին բարեկամ. մեր վերջին հանդիպումից ի վեր երեսդ ծոպաւորուել է. չը լինի՞ թէ եկել ես Դանեմարքա ինձ հետ մօրուք մօրուքի տալու։ Իսկ դու, սիրելի օրիորդ եւ տիկին, վերջին անգամ քեզ տեսնելուցս ի վեր ձերդ տիկնութիւնը աւելի է մօտեցել երկնքին, մի բարձր կրունկի չափով։ Տա՜յ Աստուած, որ ձայնդ, ոչ-բանուկ ոսկու պէս, օղակից ներս ճաքած չը լինի։ Հայդէ՛, Փրանսիացի բազէ-պանների պէս անենք. ինչ որ տեսնենք, իսկոյն վրան յարձակւինք. հէնց իսկոյն մի մենախօսութիւն. տեսնենք, տաղանդիցդ մի նմուշ տուր մեզ. հայդէ՛, մի ազդու մենախօսութի՛ւն։*

Ա. Դեր. *Ի՞նչ մենախօսութիւն, տէր իմ։*

Համ. *Մի անգամ ինձ համար մի բան արտասանեցիր, որը երբէք չէ ներկայացուել. կամ եթէ ներկայացուել է, մէկ անգամ միայն. որովհետեւ, որքան յիշում եմ խաղը ամբոխին դուր չեկաւ. խավիար էր խուժանի համար. բայց իմ կարծիքով, նոյնպէս եւ ուրիշների կարծիքով, որոնց դատողութիւնը այդ բաներում աւելի բարձր է իմինից՝ մի սքանչելի խաղ էր դա, լաւ դասաւորուած տեսարաններով, նոյնքան բնական, որքան ճարտարութեամբ կազմուած։ Յիշում եմ, մի մարդ ասում էր, թէ տողերի մէջ թթունդ համեմներ չը կային նիւթը համովցնելու համար, ոչ էլ ոճի մէջ մի բան, որով կարելի լինէր հեղինակին մեղադրել, թէ արուեստականութիւն է բանեցրել. այլ, ասում էր, դա մի պարկեշտ մեթոդ էր, նոյնքան առողջ, որքան հաճելի. աւելի սիրուն քան թէ յարդարուն. մի հատուած կար մէջը, որ ինձ յատկապէս դուր եկաւ, Էնէասի պատմութիւնը Դիդոնին, եւ մանաւանդ այն*

**կտորը, ուր Պրիամի սպանուելն է պատմում։ Եթէ յիշում ես, սկսիր այս տողից, տեսնեմ, տեսնեմ...**

*Խուժմագ Պիւռհոսն, նա որ Հիրկանեան գազանի նման,*
**Չէ, այդպէս չէ, սկսում է "Պիւռհոսով"։**
*Խուժմագ Պիւռհոսն, նա, որի զէնքերն այնպէս սեւ էին*
*Ինչպէս խորհուրդը, եւ նման էին այն մութ գիշերին,*
*Երբ կուչ էր եկել չարաղէտ ձիու որովայնի մէջ,*
*Այժմ իր սոսկալի եւ սեւ երեսը*
*Աւելի դժալին թոյրով է օծել.*
*Գլխից մինչեւ ոտք նա ալ է հիմա.*
*Ահռելի կերպով բոսոր ներկուած*
*Հայր ու մայրերի, ուստր ու դուստրերի ճապաղ արիւնով,*
*Որ փողոցների բոցերից եփուել ու խորովուել էր,*
*Այն փողոցների, որ իրենց տիրոջ սպանութեանը*
*Բռնակալաբար լոյս էին տալիս, դժոխային լոյս:*
*Կատաղութիւնից ու բոցից կարմրած,*
*Մակարդուած արեան շաղախով օծուած,*
*Աչքերը նման կարկեհանների,*
*Դիւային Պիւռհոսն այժմ փնտռում է ծերուկ Պրիամին:*
**Դէ՜հ, շարունակիր։**

Պոլ. **Աստուած վկայ, տէր իմ, շատ լաւ արտասանեցիք, լաւ շեշտով եւ շատ օրինաւոր։**

Ա.Դեր. *Եւ գտաւ նրան. Պրիամ կռւում է Հէլլէնների դէմ,*
*Բայց իր զարկերը շատ կարճ են գալիս. Հինաւուրց սուրը,*
*Բազկին անհնազանդ՝ մնում է այնտեղ, ուր վար է իջնում:*
*Պիւռհոս վազում է Պրիամի վրայ. անհաւասար զոյգ.*
*Կատաղութիւնից հեռու է զարկում.*
*Բայց իր զօռ սրի հողմից ու սուլից*
*Անջիղ նահապետն ընկնում է գետին:*
*Անզգայ Իլիոնն զգում է կարծես անգութ հարուածը,*
*Եւ իր բոցավառ գլուխը թեքելով մինչեւ հիմունքը՝*
*Ահռելի ճայթով Պիւռհոսի ականջը սոսկացնում է.*
*Եւ ի՜նչ, իր սուրը որ ցած էր իջնում*

Այն պատկառելի ծերուկ Պրիամի կաթնաթոյր գլխին,
Կարծես մնում է օդի մէջ զամուած.
Ահա, նկարուած բռնակալի պէս՝ Պիւռհոս կանգնած է,
Եւ որպէս չէզոք սեփական կամքի եւ գործի միջեւ՝
Անգործ կեցած է:
Բայց ինչպէս յաճախ տեսնում ենք որ մեծ փոթորկից առաջ
Լուռ է երկինքը, ամպերը՝ հանդարտ, հողմերը՝ անձայն,
Եւ երկրագունտը այնպէս անշշունչ ինչպէս Մահն ինքը,
Եւ մէկ էլ յանկարծ ճայթոււն որոտը պատռում է օդը,
Նոյնպէս Պիւռհոսի դադարից յետոյ՝
Զարթնած վրէժը դրդում է նորան կրկին դէպի գործ:
Երբէք Կիկլոպներն իրենց մուրճերով չը կռանեցին
Մարսի զըրահը, որ դարբնուած է անմաշ յաւիտեան,
Այնպէս անխընայ, ինչպէս Պիւռհոսի արիւնոտ սուրը
Այժըմ զարկում է Պրիամի գլխին:
Թո՛ւհ, թո՛ւհ, պոռնի՛կ բախտ: Ո՛վ դուք աստուածներ,
Առէք նորանից համախմբօրէն իր զօրութիւնը,
Ջարդուփշուր արէք իր անւի օղերն ու շառաւիղներն,
Եւ գլտորեցէք կլոր առանցքը երկնքի լեռնից
Մինչեւ դեւերի բընակարանը:

Պոլ. **Շա՛տ երկար է:**

Համ. **Կ'ուղարկենք սափրիչի մօտ մօրուքիդ հետ միասին: — Շարունակիր, խնդրեմ. սրան մի ղաւեշտ է պէտք, կամ մի լկտի պատմութիւն, թէ ոչ քունը կը գայ. շարունակիր. հասիր Հէկուբին:**

Ա. Դեր. «Բայց սւաղ, ով որ տեսնէր թագուհուն գլուխը փաթաթած:»

Համ. **«Գլուխը փաթաթա՛ծ:»**

Պոլ. **Ի՛նչ լաւ է ասել, «գլուխը փաթաթած»:**

Ա. Դեր. Որ ոտնաբոբիկ վեր ու վար վազում, եւ սպառնում էր
Իր կուրացընող արտասուքներով մարել բոցերը,
Մի լաթի կտոր այն գլխի վըրայ,
Ուր մի քիչ առաջ իր թագն էր շողում. պատմուճանի տեղ՝
Երկունքից մաշուած զիստերի վըրայ մի վերմակ ձըգած,

*Որ խումբակի մէջ հազիւ էր զատել. ով որ տեսնէր այս,*
*Թունալից լեզւով անիրաւ բախտի իշխանութեան դէմ*
*Դաւաճանութեան վճիռ կ'արձակէր.*
*Եւ, անշուշտ, եթէ աստուածներն իրենք ներկայ լինէին*
*— Միայն թէ նըրանք անզգայ չլինեն մարդկային ցաւին —*
*Երբ Հէկուբը տեսաւ թէ ինչպէս Պիւռհոս, ժանտ զւարճութեամբ,*
*Յօշում էր սըրով նըրա ամուսնի անդամը՝*
*Այն յանկարծակի պոռթկացող ճիչը, որ նա արձակեց*
*Նոյնիսկ երկնքի հրավառ աչքերից ցօղ կը թորեցնէր,*
*Եւ աստուածներին կիրք կը ներշնչէր:*

Պոլ. ***Մէկ տեսէք ինչպէս գոյնը թռել է, աչքերը լցուել են: — Բաւական է, խնդրեմ:***

Համ. ***Լաւ է. մնացորդը մի ուրիշ անգամ արտասանել կը տամ: (Պոլոնիուսին) Սիրելի տէր իմ, խնդրեմ հոգ տանէք որ այս դերասաններին լաւ բնակարան տրուի: Հասկանո՞ւմ էք, պէտք է սրանց հետ լաւ վարուիլ, որովհետեւ սրանք ժամանակի խտացումը եւ համառօտ տարեգրութիւնն են. աւելի լաւ է մահից յետոյ վատ տապանագիր ունենաք, քան թէ կենդանութեան ժամանակ սրանց կողմից վատ յիշատակուել:***

Պոլ. ***Տէր իմ, ես նրանց կը հիւրասիրեմ իրենց արժանիքի համեմատ:***

Համ. ***Մեծ բան կ'անես. մա՛րդ Աստուծոյ, շա՛տ աւելի լաւ. եթէ ամեն մարդու հետ իր արժանիքի համեմատ վարուինք՝ ո՞վ զերծ կը մնայ մտրակուելուց. վարուիր նրանց հետ քո պատուի եւ քո մեծութեան համեմատ. որքան նրանք աւելի անարժան լինեն, այնքան քո բարութիւնը աւելի գովելի կը դառնայ: Ներս տար նրանց:***

Պոլ. ***Եկէք, պարոններ:***

Համ. ***Գնացէք նրա հետ, բարեկամներ. վաղը կը տեսնենք ձեր ներկայացումը:***

Պոլոնիուս եւ բոլոր դերասանները դուրս են գնում,
բացի Ա. դերասանից:

Լսիր, իմ հին բարեկամ. կարո՞ղ էք «Գոնզագոյի Սպանութիւնը» խաղալ։

Ա. Դեր. Այո, տէր իմ։

Համ. Լաւ, վաղը գիշեր ներկայացրէք. կարո՞ղ ես, եթէ պէտք լինի, տասներկու կամ տասնըվեց տողից բաղկացած մի հատուած, որ ես կը գրեմ, անգիր անել եւ մէջը զետեղել. կարո՞ղ ես, չէ՞։

Ա. Դեր. Այո, տէր իմ։

Համ. Լաւ, առ այժմ գնա այդ պարոնի հետ. նայիր, չը լինի թէ դրան ծաղրէք։ (Ա. Դերասանը դուրս է գնում։) Սիրելի բարեկամներ, ցտեսութիւն մինչեւ այս գիշեր. բարով էք եկել Էլսինոր։

Ռոզ. Ազնիւ տէր։

Համ. Դէհ, գնաք բարով։ (Ռոզ. եւ Գիլդ. դուրս են գնում։)
Այժըմ մենակ եմ.
Օհ, ինչ սինլքոր եւ ինչ գիւղացի մի ստրուկ եմ ես։
Անբընական չէ՞, որ այս դերասանը,
Միայն մի վէպով, մի բուռըն կրքի սուտ երազումով
Կարենայ հոգին այնպէս ենթարկել իր յղացումին,
Որ լոկ իր մտքի գործելու շնորհիւ դէմքը գունատուի,
Արցունք գայ աչքին, երեսն այլայլուի, ձայնը կերկերուի,
Իր ամբողջ կազմը համապատասխան իր յղացումին.
Եւ այս բոլորը ոչնչի՞ համար, Հեկուբի՞ համար.
Հեկուբ նրա ինչն է, կամ նա Հեկուբի,
Որ նրա համար արտասուք թափէ։ Ապա ինչ կ՚անէր,
Եթէ նա կրքի այնպիսի պատճառ, դրդիչ ունենար,
Ինչպէս ես ունիմ. բեմը կ՚ողողէր իր արտասուքով,
Հասարակութեան ունկը կը պատռէր սոսկալից խօսքով,
Ցանցաւորներին կը խենթացընէր,
Եւ անմեղներին կը զարհուրեցնէր,
Անտեղեակներին կը շշմեցընէր, այո, եւ նոյնիսկ
Աչք ու ականջի ունակութիւնը կը խառնաշփոթէր։
Իսկ ե՞ս, թանձրամիտ եւ ցեխահողի թշուառականըս,
Հալւում, մաշւում եմ, եւ մտամոլոր խեղճ Ջոնի նըման՝

Անփոյթ իմ դատիս՝ ոչ մի բան ասել չեմ կարողանում.
Օ՜հ, ոչ իսկ ի սէր մի թագաւորի, որի գոյքի դէմ,
Որի կեանքի դէմ այնպէս դիւային ոճիր է գործուել։
Վախկոտ եմ, ի՞նչ է. ո՞վ է ուզում ինձ սըրիկայ կանչել,
Գանգըս ջախջախել, մօրուքըս փետտել, զարկել երեսիս,
Քիթըս տրորել, սուտըս յետ կոխել կոկորդիս մէջը,
Մինչեւ թոքերըս. ո՞վ է անում այդ.
Հա՛, այդ բոլորին կը հանդուրժէի.
Քանզի անպատճառ ես աղաւնու լեարդ պէտք է ունենամ.
Պէտք է որ լեղի չը լինի իմ մէջ,
Քանի որ այդքան անիրաւումը չէ դառնացնում.
Այլապէս, վաղուց այդ սըրիկայի փորոտիքներով
Օդի ցիներին կը գիրցընէի։
Ա՜յ դու արիւնռու՜շտ, պագշո՛տ սըրիկայ,
Անխի՛ղճ, անօրէ՛ն, անանո՛ւն որիկայ,
Օ՜հ, վրէ՛ժ...
Ի՜նչ աւանակն եմ. ի՛նչ քաջութիւն է,
Որ ես զաւակըս մի սպանուած հօր,
Որին անդադար երկինք ու երկիր ի վրէժ են կանչում,
Մի բոզի նըման իմ սրտի մաղձը բառերով թափեմ,
Հայհոյանք անեմ մի պոռնիկի պէս, մի աղախնի պէս։
Թո՛ւհ, թո՛ւհ. ամօ՜թ ինձ։ Դէ՛հ, գործիր, ուղե՛ղ։
Հը՛մ. ես լսել եմ որ յանցագործներ, թատրոնում նստած,
Լաւ ներկայացուած մի տեսարանից այնպէս ցնցուել են,
Որ իրենց ոճիրն իրենք յայտնել են։
Սպանութիւնը, թէեւ անլեզու,
Հրաշախօս լեզուով արտայայտւում է։
Պէտք է այս նորեկ դերասաններին հօրեղբօրս առաջ
Մի բան խաղալ տամ, որ նըման լինի իմ հօրըս մահուան.
Իսկ ես կը նայեմ նըրա աչքերին, վէրքը կը խառնեմ,
Ու ցնցուի թէ չէ՝ գիտեմ ի՛նչ կ'անեմ։
Իմ տեսած ոգին գուցէ դեւն ինքն է.
Ու յաճախ դեւը գըրաւիչ մի ձեւ կարող է առնել.

*Այո, եւ գուցէ օգուտ քաղելով իմ թուլութիւնից*
*Եւ մելամաղձիկ բնաւորութիւնից,*
*— Եւ նա այսպիսի ոգիների վրայ շատ զօրաւոր է —*
*Մոլորցնում է ինձ, որ դժոխային մեղքի մէջ ձգէ։*
*Աւելի հաստատ հիմքեր պէտք են ինձ.*
*Ներկայացումն է այն որոգայթը,*
*Որով կը բռնեմ արքայի խիղճը։*

Դուրս է գնում։

□ □ □

# ԱՐԱՐՈՒԱԾ ԵՐՐՈՐԴ

—

## ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Մի սենեակ դղեակում.*

*Գալիս են Թագաւորը, Թագուհին, Պոլոնիուս, Օֆէլիա, Ռոզենկրանց եւ Գիլդենշտերն:*

Թագ. Չէ՞ք կարող արդեօք ոչ մի դարձուածքով մի կերպ հասկանալ,
Թէ ինչու է նա սարքել այս բոլոր իրարանցումը,
Իր հանգիստ կեանքը այսպէս բրտօրէն խռովեցնելով
Այս աղմկալից եւ վտանգալից խելագարութեամբ։
Ռոզ. Խոստովանում է թէ նա իր միտքը ցրուած է զգում,
Բայց ինչ պատճառից, ոչ մի պայմանով չէ ուզում յայտնել։
Գիլդ. Եւ թոյլ չէ տալիս որ հարցաքննենք.
Այլ, հնարագէտ խելագարութեամբ, միշտ խոյս է տալիս,
Երբ փորձ ենք անում որ իր իսկական վիճակի մասին
Մի բան յայտնէ մեզ։
Թագհ. Ձեզ լա՞ւ ընդունեց։
Ռոզ. Այո, կատարեալ ճէնտլմէնի պէս։
Գիլդ. Բայց ինքն իր վրայ ճիգ գործ դնելով։
Ռոզ. Խօսքի մէջ ժլատ՝ բայց մեր հարցերին շատ ազատօրէն
Պատասխանում էր։
Թագհ. Փորձեցի՞ք նըրան զւարճացնել։
Ռոզ. Դէպքն այնպէս բերեց որ ճանապարհին
Մենք հանդիպեցանք դերասանների,
Եւ երբ այս մասին նըրան յայտնեցինք՝

Կարծես այս լուրը նըրան մի տեսակ հրճուանք պատճառեց.
Դերասանները արդէն այստեղ են, եւ, որքան գիտեմ,
Հրաման է առել, որ հէնց այս գիշեր իր առաջ խաղան։

Պոլ. Այո, շատ ճիշդ է, եւ ինձ պատուիրեց
Որ խնդրեմ Ձերդ Վեհափառութեանց,
Տեսնել եւ լսել ներկայացումը։

Թագ. Ամենայն սիրով.
Գոհ եմ լսելով, որ նա այժմ այդպէս տրամադրուած է։
Ազնիւ պարոններ, դուք էլ աւելի մղեցէք նըրան,
Քաջալերեցէք դէպի այդպիսի զուարճութիւններ։

Ռոզ. Այո, տէր արքայ։

Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտէրն դուրս են գնում։

Թագ. Սիրելի Գերտրուդ, դու էլ հեռացիր.
Քանզի գաղտնապէս մարդ ենք ուղարկել Համլէտին բերէ,
Որ Օֆէլիային որպէս դիպուածով հանդիպի այստեղ.
Իր հայրը եւ ես իբր իրաւացի հետազօտիչներ,
Այնպիսի մի տեղ ուզում ենք թագչել, որ անտես՝ տեսնենք,
Եւ դատենք նըրանց տեսակցութիւնից եւ նրա ձեւից
Թէ սիրուց է նա այդպէս տառապում, թէ ուրիշ բան կայ,

Թագհ. Շատ լաւ, հնազանդ եմ. իսկ դու, Օֆէլիա,
Մաղթում եմ սրտանց որ շնորհալի գեղեցկութիւնդ
Լինի Համլէտի մտացնորութեան բարի պատճառը,
Եւ մեծ յոյս ունիմ որ առաքինի յատկութիւններդ
Ետ բերեն նըրան իր սովորական ճանապարհի վրայ,
Երկուիդ ի պատիւ։

Օֆ. Տա՛յ Աստուած, տիկին։

Թագուհին գնում է

Պոլ. Եկ, Օֆէլիա, եւ շրջիր այստեղ։
Ողորմած տէր իմ, եթէ կը հաճէք, եկէք թաքնուինք։
(Օֆէլիային) Կարդա այս գրքից. թող զբաղմունքի այդ ձեւացումը
Բնական գոյն տայ մենակութեանդ։
Յաճախ այս բանում պարսաւելի ենք, — եւ շատ փորձուած է —

Որ սուրբ երեսով եւ բարեպաշտիկ շարժուձեւերով
Սատանային իսկ շաքարօծում ենք։

Թագ. (Առանձին) Օ՜հ, ճշմարիտ է.
Ինչպէ՜ս այդ խօսքը խարազանում է իմ խղճմտանքը.
Պոռնիկի այտը՝ շպարի շնորհիւ գեղեցկացրած՝
Այնքան տգեղ չէ իր անգոյրի մօտ,
Որքան իմ գործը՝ սաստիկ ներկըւած իմ խօսքերի մօտ։
Օ՜հ, ի՜նչ ծանր բեռ։

Պոլ. Ահա գալիս է. Թագնուինք, տէր իմ։

*Թագաւորը եւ Պոլոնիոս գնում են. գալիս է Համլէտ։*

Համ. Լինել թէ չլինել, այս է խնդիրը.
Ո՞րն է հոգեպէս աւելի ազնիւ,
Տանել դառն բախտի պարսաքարերը եւ նետերը,
Թէ զէնք վերցնել ցաւ ու վիշտերի մի ծովի ընդդէմ,
Եւ, դիմադրելով՝ վերջ տալ բոլորին։
Մեռնել, քընանալ, ոչինչ աւելի.
Եւ մտածել, թէ մի պարզ քընով մենք վերջ ենք տալիս
Այն սրտացաւին եւ բիւր բընական անձկութիւններին,
Որոնց ժառանգն է մեր հէգ մարմինը,
Մի վախճան է դա՝ հոգով բաղձալի։
Մեռնել, ննջել. ննջե՜լ... գուցէ երազել.
Ա՜յ, ցաւն այդտեղ է. քանզի այդ մահուան քընի ժամանակ
Ի՞նչ կերպ երազներ պիտի գան գուցէ՝
Երբ այս մահացու կապանքը մեզնից թօթափած լինենք.
Ահա ինչ որ մեզ խորհել պէտք է տայ. այս նկատումն է,
Որ այսչափ երկար տեւել է տալիս թշուառութիւնը։
Թէ ոչ, ո՞վ արդեօք կ'ուզէր հանդուրժել
Աշխարհի այնքան նախատինքներին եւ մտրակներին,
Հարստահարչի անիրաւութեան,
Մեծամիտ մարդու արհամարհանքին,
Քամահրած սիրոյ տըւայտանքներին,
Օրէնքի բոլոր ձգձգումներին,

Պաշտօնեաների աներեսութեան,
Այն հարուածներին, որ համբերատար արժանաւորը
Ստանում է միշտ անարժաններից,
Այն ինչ կարող էր մարդ իր հաշիւը իր ձեռքով փակել
Մի մերկ դաշոյնով։ Ո՞վ կը յօժարէր այսքան բեռ կրել,
Հեծծել ու քրտնել տաղտուկ կեանքի տակ,
Եթէ երկիւղը մի ինչ որ բանի մահուանից յետոյ,
Այն անյայտ երկրի, որի սահմանից
Ոչ մի ուղեւոր չէ վերադառնում,
Չը ձգէր կամքը երկբայութեան մէջ, եւ մեզ չը ստիպէր
Տանել աւելի այն չարիքները որ այստեղ ունինք,
Քան թէ սաւառնել դէպի նոր ցաւեր, որոնց անգէտ ենք։
Խոհամտութիւնն, այսպէս, ամենքիս վախկոտ է դարձնում.
Եւ հէնց այս կերպով վճռականութեան բընածին գոյնը
Ախտաժէտւում է խորհրդածութեան գունաթափ ցոլքից,
Եւ շատ ձեռնարկներ, մեծ ու կարեւոր,
Շեղւում են այսպէս իրենց հոսանքից,
Եւ գործ կոչւելու անարժան դառնում։
Բայց կա՛ց, ո՛վ է այս։ Սիրուն Օֆէլիա՜ն։ — Ո՛վ յաւերժահարս,
Աղօթքներիդ մէջ թող յիշւին նաեւ բոլոր մեղքերըս։
Օֆ. Ի՞նչպէս է արդեօք Ձեր Բարձրութիւնը այսքան շատ օրեր։
Համ. Շատ խոնարհաբար շնորհակալ եմ. լաւ եմ, լաւ եմ, լաւ։
Օֆ. Տէր իմ, ձեզանից ես յիշատակներ ունիմ ստացած,
Որ վաղուց ի վեր ուզում եմ յետ տալ. ստացէք խնդրեմ։
Համ. Երբէ՛ք. ես ոչինչ չեմ ընծայել քեզ։
Օֆ. Յարգելի տէրըս, դուք շատ լաւ գիտէք որ ընծայել էք,
Եւ հետն էլ բառեր, այնպէս քաղցրաբոյր,
Որ այդ իրերը էլ աւելի թանկ դարձընում էին.
Հիմա որ նըրանց բոյրը թըռել է, յետ առէք կրկին.
Մի ազնիւ հոգու ճոխ ընծաները գձուձ են թըւում,
Երբ պարգեւողը անսէր է դառնում։ Ստացէք, տէր իմ։
Համ. Հա՜, հա՜, առաքինի՞ ես դու։
Օֆ. Տէր իմ...

Համ. Գեղեցի՞կ ես։

Օֆ. Ի՞նչ է ուզում ասել Ձեր Բարձրութիւնը։

Համ. Եթէ առաքինի եւ գեղեցիկ ես, առաքինութիւնդ ոչ մի յարաբերութիւն չը պիտի թոյլ տայ գեղեցկութեանդ հետ։

Օֆ. Բայց, տէր իմ, ո՞ւմ հետ է կարող գեղեցկութիւնը աւելի լաւ յարաբերութիւն ունենալ քան թէ առաքինութեան հետ։

Համ. Այո, ճիշդ ես ասում, որովհետեւ գեղեցկութեան կարողութիւնը աւելի շուտ ընդունակ է առաքինութիւնը լրբութեան փոխելու, քան թէ առաքինութեան ոյժը կարող է գեղեցկութիւնը իր պատկերին նմանցնել. այս բանը երբեմն պարադոքս էր թւում, բայց հիմա ժամանակը հաստատեց որ ճշմարիտ է։ Կար մի ժամանակ որ ես քեզ սիրում էի։

Օֆ. Այո, տէր իմ, ինձ այդպէս էիք հաւատացնում։

Համ. Իսկ դու չը պիտի հաւատայիր. որովհետեւ առաքինութիւնը չէ կարող այնպէս պատուաստուիլ մեր հին ծառաբունի վրայ, որ ոչինչ չը մնայ այդ ծառաբունից. ես քեզ չէի սիրում։

Օֆ. Ուրեմն էլ աւելի խաբուած եմ եղել։

Համ. Մտիր կուսանոց. ինչո՞ւ ես ուզում մեղաւորներ աշխարհ բերել։ Ես ինքս քիչ թէ շատ պարկեշտ մարդ եմ, բայց դարձեալ ինքս իմ մէջ այնպիսի բաներ եմ տեսնում, որ աւելի լաւ էր մայրս ինձ ծնած չը լինէր։ Ես շատ հպարտ եմ, քինախնդիր, փառամոլ. աւելի շատ չարութիւններ ունիմ ձեռքիս տակ, քան միտք՝ նրանց տեղ տալու, քան երեւակայութիւն՝ նրանց ձեւ տալու, քան ժամանակ՝ իրագործելու։ Ինչո՞ւ ուրեմն ինձ նման էակներ քարշ գան երկրի եւ երկնքի միջեւ։ Մենք բոլորս էլ առաջնակարգ սրիկաներ ենք. մեզնից ոչ մէկին չը հաւատաս։ Գնա, մտիր կուսանոց։ Հայրդ ո՞ւր է։

Օֆ. Տանն է, տէր իմ։

Համ. Դռները պինդ փակիր վրան, որ յիմարի դերը միայն իր տան մէջ խաղայ։ Մնաս բարով։

Օֆ. (Առանձին) Օ՜հ, փրկիր սրան, բարերար Աստուած։

Համ. Եթէ երբէք ամուսնանաս՝ քեզ այս անէծքը օժիտ կը տամ. եղիր զգաստ ինչպէս սառուց, մաքուր, ինչպէս ձիւն, դարձեալ

զերծ չես մնայ զրպարտութիւնից։ Մտիր կուսանոց, գնա․ Մնաս բարով։ Եւ կամ, եթէ անպատճառ պէտք է ամուսնանաս, ամուսնացիր մի յիմարի հետ, որովհետեւ խելացիները լաւ գիտեն թէ դուք նրանց ինչ հրէշներ էք դարձնում։ Հայդէ, կուսանոց․ եւ շուտ․ Մնաս բարով։ 146

*Օֆ.* (Առանձին) Երկնային զօրութիւններ, բուժեցէք սրան։

*Համ.* Ձեր ներկարարութեան մասին էլ շատ եմ լսել, այո, շատ։ Աստուած ձեզ մի երես է տուել, իսկ դուք ձեզ համար մի այլ երես էք շինում․ օրօրւում էք, շօրօրւում էք, լեզուներդ էք ծռում, Աստուծոյ արարածներին մականուններ էք կպցնում, եւ ձեր լկտութեանը անգիտութեան երեւոյթ էք տալիս։ Գնա, էլ չեմ ուզում այդ բաները տանել․ դրանք ինձ խենթացրել են։ Նրանք որ արդէն ամուսնացած են, բացի մէկից, թող ապրեն․ միւսները թող մնան ինչպէս կան։ Մտիր կուսանոց։

Դուրս է գնում։

*Օֆ.* Ի՜նչ ազնիւ հոգի փչացաւ այսպէս․
Դրանիկի աչքը, գիտունի լեզուն, զինւորի սուրը,
Այս պերճ պետութեան յոյսը եւ վարդը,
Տարազի հայելին, ձեւի կաղապարը, 160
Բոլոր դիտողների դիտման առարկան, այսպէս փչանայ։
Եւ ես, կանանց մէջ ամենէն լքւած եւ տարաբախտըս,
Որ ծծում էի նրա գեղգեղուն ուխտերի մեղրը,
Այժըմ տեսնում եմ այն ազնիւ եւ վեհ դատողութիւնը
Կոտրած զանգի պէս խժալուր դարձած եւ աններդաշնակ․
ծաղկած հասակի այն անզուգական դէմքն ու տիպարը 166
Խենթութեամբ խամրած։ Օ՜հ, վա՜յ թշւառիս,
Որ այն էլ տեսայ, այս էլ տեսնում եմ։

Թագաւորը եւ Պոլոնիոս գալիս են։

*Թագ.* Սէ՞ր․ նրա մտքերն այդ կողմ չեն հակւած, 169
Եւ ասածները, թէեւ քիչ անկապ, խենթի խօսքեր չեն։
Նրա հոգու մէջ մի որոշ բան կայ,

Որի վրայ վիշտը թուխսի է նստել,
Եւ վախենում եմ թուխսից ելածը մի վտանգ լինի,
Որի առաջը առնելու համար՝ շուտափոյթ վճռով
Այ'ս որոշեցի. պէտք է անյապաղ Անգլիա գնայ
Անվճար տուրքը գանձելու համար։ Գուցէ ծովերը,
Տարբեր երկիրները, իրենց այլազան առարկաներով,
Վանեն կարենան նորա սրտի մէջ բոյն դրած նիւթը,
Որի վրայ ուղեղն անվերջ բաղխելով՝
Նորան այս ձեւով փոխակերպել է։ Ձեր կարծիքն ինչ է։
Պոլ. Լաւ է, բայց դարձեալ համոզուած եմ ես
Որ նորա ցաւի ծագումն ու սկիզբը
Մերժուած սէրն է։ — Եկ այստեղ, Օֆէլիա.
Պէտք չունիս կրկնել իշխան Համլէտի քեզ ասածները.
Արդէն լսեցինք։ Տէր արքայ, արէք ինչպէս կամենաք,
Եւ սակայն, տէր իմ, թէ յարմար դատէք, թող խաղից յետոյ
Թագուհի մայրը նորան առանձին թախանձանք անէ
Որ իր ցաւն ասէ. թող շիտակ խօսէ իր զաւակի հետ.
Եւ, եթէ թոյլ տաք, ես կը թագնուիմ այնպիսի մի տեղ
Որ լսեմ բոլոր խօսակցութիւնը։
Եթէ իր մայրն էլ անյաջող դուրս գայ,
Ապա Անգլիա ղրկեցէք նորան,
Կամ թէ փակեցէք ուր յարմար դատէ ձեր իմաստութիւնը։
Թագ. Թող այդպէս լինի. մեծաւորների խելառութիւնը
Չը պէտք է մնայ առանց հսկողի։

Դուրս են գնում։

---

# ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի դահլիճ դղեակում:*

Գալիս է Համլէտ մի քանի դերասանների հետ։

Համ. *Խնդրեմ հառաչածն այնպէս արտասանիր, ինչպէս ես քեզ համար արտասանեցի, թեթեւ եւ սահուն. բայց եթէ դու էլ մեր դերասաններից շատերի պէս գոռգոռաս, այդպա աւելի լաւ կը լինէր որ իմ տողերը քաղաքի մունետիկներին արտասանել տայի։ Ոչ էլ կարիք կայ շարունակ ձեռքովդ օդը սղոցելու, այսպէս. այլ, ամէն բանի մէջ չափաւոր եղիր. որովհետեւ, կրքի հեղեղի, փոթորկի, եւ, այսպէս ասենք, հողմապտոյտի մէջն անգամ պէտք է սովորես մի տեսակ բարեխառնութիւն պահել, որ հարթութիւն տայ խօսքիդ։ Ահ, հոգիս փշաքաղւում է, երբ լսում եմ ինչպէս մի յաղթանդամ կեղծամաւոր արարած մի զօրեղ զգացում ծուէն ծուէն է անում, հէնց լաթ է շինում, գետնայարկի հասարակութեան ականջը պատռելու համար. հասարակութիւն, որի մեծ մասը ընդունակ չէ ուրիշ բան ըմբռնելու, բայց միայն անբացատրելի մնջկատակներ եւ աղմուկ։ Մտրակել տալ կ'ուզէի այդ տեսակ արարածին, որ Տէրմագանտին էլ գերազանցում է, Հէրովդէսից էլ հերովդանում է։ Խոյս տուր, խնդրեմ, այդ բանից։*

Ա. Դեր. *Խօսք եմ տալիս Ձերդ Բարձրութեան։* 19

Համ. *Ոչ էլ շատ մեղկ պէտք է լինես. այլ, սեփական ճաշակդ պէտք է ղեկավարդ լինի. շարժումներդ բառերին յարմարեցրու, եւ բառերը շարժումներին, յատկապէս ուշադիր լինելով որ բնական չափաւորութիւնից դուրս չելնես. որովհետեւ ամէն բան որ չափազանցւած է, խաղի նպատակին հակառակ է, ինչ որ թէ՛ հնում եւ թէ՛ հիմա միշտ եղել է եւ է, այսպէս ասած, մի հայելի պահել բնութեան առաջ. ցոյց տալ առաքինութեան իր սեփական դէմքը, մոլութեան՝ իր պատկերը, եւ ժամանակի դէմքին ու մարմնին՝ իր տեսքն*

*ու տիպը։ Արդ, եթե դա շատ խիստ դուրս բերվի, կամ շատ թույլ, գուցե անգետներին ծիծաղեցնե, բայց բանիմացներին միայն անախորժ կարող է լինել. իսկ մեկ բանիմաց մարդու կարծիքը ձեր աչքին ավելի մեծ կշիռ պետք է ունենա, քան թե մյուսների մի ամբողջ թատրոն։ Ա՛հ, դերասաններ եմ տեսել խաղալիս, և լսել, թե մարդիկ նրանց ի՛նչպես էին գովաբանում, որոնք, մեղք չը լինի ասել, ոչ քրիստոնեի խոսվածքն ունեին, ոչ քրիստոնեի կեցվածքը, ոչ էլ հեթանոսի, ոչ նույն իսկ տղամարդու, և այնպես ուռում և պոռում էին, որ մտածում էի, թե պետք է բնության բանվորները նրանց ստեղծած լինեն, և այն էլ՝ ոչ շատ լավ, այն աստիճան գարշելի նմանություններ էին դրանք մարդկային ցեղի։*

*Ա. Դեր.* *Այդ բոլորը մեզ մոտ քիչ թե շատ բարեփոխել ենք, տեր իմ։*

*Համ.* *Պետք է հիմնովին փոխեք. թող ձեր միմոսի դեր կատարողները այն միայն ասեն, ինչ որ իրենց համար գրված է. դերասաններ կան որ մի քանի ապուշ հանդիսատեսների ծիծաղեցնելու համար իրենք են սկսում ծիծաղել, այն ինչ հենց այդ ժամանակ խաղի մի կարևոր կետը ուշադրություն է պահանջում. դա շատ խայտառակ բան է, և ցույց է տալիս այդ ձևով վարվող դերասանի ողորմելի մնափառությունը։ Գնացեք և պատրաստվեցեք։*

Դերասանները դուրս են գնում։

Գալիս են Պոլոնիուս, Ռոզենկրանց և Գիլդենստերն։

*Ի՞նչ եղավ, տեր իմ, թագավորը գալու՞ է արդեոք այս գլուխ-գործոցը տեսնելու։*

*Պոլ.* *Այո, թագուհին էլ միասին. հենց հիմա գալիս են։*

*Համ.* *Ուրեմն դերասաններին ասացեք որ շտապեն։*

Պոլոնիուս դուրս է գնում։

*Դուք էլ օգնեցեք որ շտապեն։*

*Ռոզ. և Գիլդ.* *Այո, տեր իմ։*

Ռոզենկրանց և Գիլդենստերն դուրս են գնում։

Համ. Ըհէ՜յ, Հորացիօ։

Գալիս է Հորացիօն։

Հոր. Պատրաստ եմ, տէր իմ, ձեր ծառայութեան։

Համ. Լսիր, Հորացիօ. քեզնից աւելի ուղղամիտ մարդու
Դեռ չեմ հանդիպել ծանօթներիս մէջ։

Հոր. Սիրելի՛ տէր իմ։

Համ. Չը կարծես թէ քեզ շողոքորթում եմ.
Ի՞նչ շահ կարող եմ յուսալ քեզանից,
Որ բացի ուրախ բնաւորութիւնից մի հարստութիւն չունիս
Ապրուստ ու հագուստ հոգալու համար։
Ինչո՞ւ փայփայել չքաւոր մարդուն.
Ոչ, շողոքորթի մեղրածոր լեզուն
Անմիտ պերճութեա՛ն ոտքը թող լիզէ,
Եւ իր ծնկների ճկուն յօդուածներն այնտեղ կորացնէ,
Ուր որ քծնանքին վարձ է սպասում։
Լսո՞ւմ ես, Հորացիօ. այն օրից ի վեր որ մատաղ հոգիս
Իր ընտրութեան մէջ ինքնիշխան դարձաւ,
Եւ հասու եղաւ մարդկանց իրարից զանազանելու,
Նա քե՛զ որոշեց, կնքեց իր համար.
Քանզի դու յաւէտ մի մարդ ես եղել,
Որ ամենայն ինչ կրելով հանդերձ՝ ոչինչ չես կրում,
Եւ բախտի՛ ամեն վարձն ու հարուածը
Ընդունել ես միշտ միահաւասար շնորհակալութեամբ։
Օրհնեալ են նրանք, որոնց մէջ արիւնն ու դատողութիւնն
Այնպէս համաչափ զուգախառնուած են,
Որ լոկ շուի չեն բախտի մատներին,
Որ ինչպէս ուզէ վրան նուագէ։
Տուր ինձ այն մարդը, որ իր կիրքերի գերին չը լինի,
Եւ ես սրտիս մէջ տեղ կը տամ նրան, սրտիս սրտի մէջ,
Ինչպէս այժըմ քեզ։ Բայց այս շատ եղաւ։
Լսիր. այս գիշեր արքայի առաջ ներկայացում կայ.
Եւ մի տեսարան մօտ է իմ հօրըս մեռնելու կերպին,
Որ պատմել եմ քեզ։ Խնդրում եմ, երբ գայ այդ տեսարանը

*Դու հոգուդ բոլոր խորատեսութեամբ դիտիր հօրեղբօրս.*
*Եթէ մի որոշ ճառի ժամանակ*
*Թաքուն մեղքը յանկարծ իր որջից դուրս չը յարձակուի՝*
*Ապա այն ոգին, որ մենք տեսել ենք մի չար ոգի է,* 91
*Եւ խորհածներըս՝ Վուլկանի սալից աւելի մրոտ:*
*Լաւ դիտիր նրան. ես էլ աչքերըս դէմքին կը յառեմ,*
*Յետոյ երկուսըս մեր կարծիքները կը միացընենք*
*Նրա երեսի արտայայտածը դատելու համար:* 95

*Հոր.* *Լաւ, տէր իմ. եթէ խաղի ժամանակ*
*Փորձէ իմ աչքից մի բան գողանալ եւ չը բռնուի՝*
*Ինքըս կը տուժեմ գողօնի գինը:*

*Համ.* *Ահա գալիս են ներկայացումին.* 99
*Ես պէտք է այստեղ անփոյթ երեւամ. մի տեղ գտիր քեզ:*

Դանիական քայլերգ. Գալիս են Թագաւորը, Թագուհին, Պոլոնիոս, Օֆելիա, Ռոզենկրանց, Գիլդենստերն եւ ուրիշ պալատականներ, եւ պահակներ՝ ջահերով:

*Թագ.* *Ի՞նչպէս է մեր եղբօրորդի Համլէտը:*

*Համ.* *Շատ լաւ, իսկապէս. քամէլէօնի պէս եմ կերակրւում, օդ եմ ուտում, խոստումներով եմ խճողւած. աքլորներին չէք կարող այս կերպով գիրացնել:*

*Թագ.* *Այդ պատասխանը ինձ համար չէ, Համլէտ. այդ խօսքերը ինձ չեն պատկանում:* 106

*Համ.* *Ոչ էլ ինձ արդէն: — (Պոլոնիոսին) Տէր իմ, ասացիք թէ համալսարանում մի անգամ մի բան էք խաղացել, այնպէս չէ՞:*

*Պոլ.* *Այո, տէր իմ, եւ լաւ դերասան էի համարւում:*

*Համ.* *Ի՞նչ էք խաղացել:* 110

*Պոլ.* *Յուլիոս Կեսարի դերը, եւ սպանուեցայ Կապիտոլում. Բրուտոս ինձ սպանեց:*

*Համ.* *Շատ բրտութիւն էր նրա կողմից այդպէս երեւելի կովին Կապիտոլում սպանել: — Դերասանները պատրաստ են:*

*Ռոզ.* *Այո, տէր իմ. ձեր հրամանին են սպասում:* 115

*Թագհ.* *Եկ այստեղ, սիրելի Համլէտս, եկ նստիր կողքիս:*

Համ. Ոչ, սիրելի մայրս, այստեղ աւելի քաշող մետաղ կայ։
Պոլ. (Թագաւորին) Օ՜, հօ՜, լսեցի՞ք ինչ ասաց։
Համ. Օրիորդ, թոյլ կը տա՞ք որ ձեր գոգի մէջ ձգուիմ։

Ձգւում է գետնի վրայ Օֆելիայի ոտքերի առաջ։

Օֆ. Ոչ, տէր իմ։
Համ. Ուզում եմ ասել գլուխս ձեր գոգը դրած։
Օֆ. Այո, տէր իմ։
Համ. Կարծում էք վատ մտքով ասացի։
Օֆ. Ոչինչ չեմ կարծում, տէր իմ։
Համ. Լաւ գաղափար է՝ աղջիկների ոտուեքների մէջ ձգուիլ։
Օֆ. Ի՞նչ, տէր իմ։
Համ. Ոչինչ։
Օֆ. Շատ ուրախ էք, տէր իմ։
Համ. Ո՞վ, ես։
Օֆ. Այո, տէր իմ։
Համ. Ի՞նչ արած. ձեր զաւեշտաբանն եմ ես։ Մարդ ուրախ չլինի, ինչ անէ. մէկ այնտեղ նայիր, տես մայրս ինչպէս ուրախ է, եւ երկու ժամ չը կայ որ հայրս մեռել է։
Օֆ. Ոչ, երկու անգամ երկու ամիս է, տէր իմ։
Համ. Այդքան երկա՞ր. ուրեմն, թող սատանան սեւ հագնի, ես մի ձեռաք սամոյր եմ հագնելու։ Տէ՜ր Աստուած, մարդ երկու ամիս առաջ մեռնի եւ դեռ չը մոռացուի՜։ Ուրեմն կարելի է յուսալ, որ մի մեծ մարդու յիշատակը դեռ վեց ամիս իր մահից յետոյ կարող է ապրել. բայց, Սուրբ Կոյսը վկայ, պէտք է եկեղեցիներ շինէ, թէ ոչ՝ կը մոռացուի ինչպէս այն փայտէ ձին, որի տապանագիրն էր.
“Ա՜խ ափսոս, ա՜խ ափսոս, փայտէ ձին մոռացուեց։„

Երաժշտութիւն. Համրախաղի դերասանները։

Գալիս են մի թագաւոր եւ մի թագուհի, շատ սիրով. նախ թագուհին համբուրում է թագաւորին, յետոյ նա նրան. թագուհին ծունկ է չոքում թագաւորի առաջ եւ սիրային

ցոյցեր է անում։ Թագաւորը նրան վեր է բարձրացնում, եւ իր գլուխը թեք է տալիս նրա վզին. յետոյ թագաւորը պառկում է ծաղիկների վրայ. թագուհին տեսնելով որ նա քնեց՝ հեռանում է։ Մի քիչ յետոյ ներս է գալիս մի մարդ, վեր է առնում թագաւորի թագը, համբուրում է. թոյն է ածում թագաւորի ականջի մէջ եւ դուրս է գնում. թագուհին վերադառնալով թագաւորին գտնում է մեռած եւ ողբ ու կոծ է անում։ Թունաւորողը կրկին գալիս է երկու երեք մունջերի հետ, եւ այնպէս է ձեւացնում, որպէս թէ մասնակցում է թագուհու վշտին։ Մեռելին տանում են դուրս։ Թունաւորողն աշխատում է ընծաներով թագուհու սէրը շահել. թագուհին սկզբում դժկամութեամբ է ցոյց տալիս, բայց վերջը ընդունում է նրա սէրը։ Դուրս են գնում։

Օֆ. Ի՞նչ միտք ունի այս, տէր իմ։

Համ. Miching mallecho, այսինքն չարագործութիւն։

Օֆ. Երեւի մնջկատակը խաղի նիւթն է ներկայացնում։

Գալիս է Նախերգակը։

Համ. Հիմա սա մեզ կ'ասէ. դերասանները գաղտնիք պահող մարդիկ չեն. ամեն բան կը յայտնեն։

Օֆ. Կարծո՞ւմ էք թէ տեսարանի նշանակութիւնը կ'ասէ։

Համ. Այո, եւ ամեն տեսարանի, որ նրան ցոյց տաք. դուք մի ամաչէք ցոյց տալուց, նա էլ չի ամաչի նշանակութիւնն ասելուց։

Օֆ. Շատ չարն էք, շատ չարը. լաւ է խաղին մտիկ տամ։

Նախերգակ. Թէ մեր ողբերգի եւ թէ մեզ համար
Ներում ենք խնդրում շատ խոնարհաբար,
Եւ աղաչում ենք որ համբերութեամբ
Հաճէք պատւել մեզ ձեր ունկնդրութեամբ:

Համ. Նախերգա՞նք է այս, թէ մատանու մակագիր։

Օֆ. Այո, շատ կարճ է, տէր իմ։

Համ. Կնոջ սիրոյ պէս։

Գալիս են երկու դերասան, իբրեւ թագաւոր եւ թագուհի։

Բեմի Թագ. Երեսուն անգամ Փէբոսի կառքը արել է շրջան
Տէլլոսի շուրջը, եւ Պոսիդոնի աղի ալեւոււթեան,
Երեսուն անգամ տասներկու լուսին պտոյտ են գործել,
Տասներկու անգամ երեսուն գիշեր երկրի շուրջ դարձել,
Այն օրից ինչ սէրն մեր սրտերն իրար զուգաւորած է,
Եւ ինչ Հիմէնէն մեր ձեռքերն իրար միաւորած է:
Բեմի Թագհ. Ճամտ այդքան անգամ արեւ ու լուսին թող գան ու գընան,
Եւ մեր սրտերը միշտ անկեղծ սիրով անբաժան մընան.
Բայց վա՜յ, վերջերըս հիւանդ ես թըւում, եւ այնպէս տըրտում,
Սովորութեանըդ այնպէս հակառակ, որ վախ ես ազդում.
Բայց երկիւղներըս ինչ էլ որ լինեն
Թող նըրանք, տէր իմ, քեզ չը վրդովեն.
Կանանց սրտի մէջ երկիւղն ու սէրը միշտ համաչափ են,
Կամ նըրանք բընաւ գոյութիւն չունին, եւ կամ անչափ են.
Թէ որքան մեծ է իմ սրտի սէրը
Քեզ ցոյց են տըւել ձիգ տարիները.
Եւ ի՜նչ չափով որ չափւում է սէրը,
Չափւում են նաեւ իմ երկիւղները.
Ուր սէրը մեծ է, փոքրիկ կասկածը մեծ վախ է դառնում.
Երբ մեծանում են փոքրիկ վախերը՝ սէրն է մեծանում:
Բեմի Թագ. Աւա՜ղ, սիրելիս, պէտք է բաժանւինք, այն էլ քիչ օրից.
Մարմնիս ոյժերը յոգնել են այլ եւս իրենց պարտքերից.
Եւ ինձնից յետոյ սիրուն աշխարհում պէտք է դեռ ապրես,
Յարգըւած, սիրւած, եւ գուցէ նոյնիսկ դու նորէն սիրես:
Եւ նոր ամուսին . . .
Բեմի Թագհ. Օ՜հ, մի՜ վերջացնի. Անիծւած ոչ անէ՛,
Որ սիրտըս այդպէս քեզ դաւաճանէ.
Եթէ ես երկրորդ ամուսին առնեմ՝
Թող որ յաւիտեան անիծեալ լինեմ.
Երկրորդ ամուսին չէ առել մի կին,
Եթէ չէ դաւել առաջնի կեանքին:
Համ. (Առանձին) Օշի՜նդր է, օշի՜նդր։
Բեմի Թագհ. Երբ այրի կինը փնտռում է կրկին մի նոր կողակից,

Սիրուց չէ բընաւ, այլ միայն շահի ստոր փափագից.
Մեռած ամուսնուս ես երկրորդ անգամ ինքս եմ սպանում,
Երբ իր անկողնում երկրորդ ամուսնուց համբոյր եմ առնում:
ԲԵՄԻ ԹԱԳ. Ես հաւատում եմ թէ այժմ անկեղծ են քո ասածները.
Բայց որքան յաճախ ինքներս ենք կոտրում մեր վճռածները,
Եւ որոշումը մեր յիշողութեան գերին է միայն,
ծնւելիս հուժկու, բայց տոկունութեամբ խիստ աղքատ է այն.
Եւ հիմա որպէս մի տհաս պտուղ ծառին կպած է,
Բայց ցած է ընկնում առանց թափ տալու՝ երբ որ հասած է:
Զարմանալի չէ, որ մոռանում ենք
Մենք մեզ վճարել, ինչ որ մեզ պարտ ենք.
Ինչ որ կրքի մէջ վճռում ենք գործել՝
Երբ որ կիրքն անցաւ, անմիտ է դարձել.
Թէ՛ քուռըն վիշտը, թէ՛ քուռըն խինդը բաւ է որ հանգչեն,
Իրենց սեփական որոշումները իրենք կը ջնջեն.
Ուր խնդութիւնը հրճւում է սաստիկ, վիշտը կսկծում,
Չնչին մի դէպքից հրճւում է վիշտը, եւ խինդն է լացում.
Յաւերժական չէ մեր այս աշխարհը, եւ շատ պարզ բան է,
Որ մեր բախտի հետ եւ մարդկանց սէրը փոփոխական է.
Եւ մինչեւ այսօր դեռ եւս անլոյծ է այս հարցը խրթին,
Թէ բախտն է արդեօք սիրոյ առաջնորդ, թէ սէրը բախտին.
Մեծ մարդն ընկնելիս՝ մտերիմները թողնում փախչում են.
Փոքրը մեծնալիս՝ թշնամիները գալիս, փակչում են,
Եւ մինչեւ հիմա բախտին հետեւող եղած է սէրը.
Ով չէ կարօտել՝ նըրան պակաս չեն բարեկամները.
Եւ ով փորձում է կարօտութեան մէջ փուչ բարեկամին՝
Նա ինքն իր ձեռքով դարձնում է նըրան իր թունդ թշնամին.
Բայց թող որ կարգով եզրակացնեմ ինչ սկսել եմ.
Մեր բախտն ու կամքը միշտ ընթանում են այնպէս հակընդդէմ,
Որ տապալւում են մեր խորհուրդները բախտի բերմունքից,
Մերն է խորհուրդը, բայց նըրա ելքը անկախ մեր կամքից:
Դու մըտածում ես, որ չես լինելու մի երկրորդի կին.

Մեռնում է միտքըդ, երբ որ մեռնում է քո տէրը նախկին:
Բեմի Թագհ. Թո՛ղ որ երկիրը ինձ սընունդ չը տայ, եւ երկինքը՝ լոյս,
Գիշեր ու ցերեկ հանգիստ ու համոյք չը տան խղճալուս,
Թո՛ղ որ փոխարկւին յոյս ու հաւատըս յուսահատութեան,
Ճգնաւորի պէս մատնըւած լինեմ բանտի տըրտմութեան,
Եւ ուրախութեան դէմքը խամրեցնող ցաւերն անհամար
Խուժեն խմբովին, կործանեն ինչ որ թանկ է ինձ համար,
Ոչ այս աշխարհում, ոչ հանդերձեալում ինձ դադար չը տան՝
Թէ այրի լինեմ եւ ցանկամ կրկին նոր ամուսնութեան:
Համ. (Օֆելիային) Թէ հիմա դրժէ՞ իր երդումները։
Բեմի Թագ. Ահեղ երդումներ. այժըմ, սիրելիս, թող ինձ մի րոպէ.
Ոգիս թմրում է, թող քունը մի քիչ տաղտուկըս խաբէ:
Բեմի Թագհ. Քունը ուղեղիդ թող օրօր անէ,
Եւ ոչ մի փորձանք մեզ չը բաժանէ:

Թագուհին գնում է։

Համ. Մայր իմ, ինչպէս ես գտնում այս խաղը։
Թագհ. Տիկինը շատ է երդւում, կարծեմ։
Համ. Օ, բայց խօսքը կը պահէ։
Թագ. Նիւթին ծանօ՞թ ես. վատ բան չը կա՞յ մէջը։
Համ. Ոչ, ոչ. կատակ են անում. կատակով թոյն. ոչ մի վատ բան չը կայ։
Թագ. Խաղի անունն ի՞նչ է։
Համ. Մկան Թակարդ։ Ինչպէ՞ս. այլաբանօրէն։ Այս խաղը մի մարդասպանութիւն է ներկայացնում, որ կատարուել է Վիեննայում. Գոնզագօ է դուքսի անունը. կնոջ անունն էլ՝ Բապտիստա. հիմա կը տեսնէք. սրիկայութեան մի գլուխ-գործոց է. բայց մեզ ի՞նչ փոյթ. դա չի կարող դիպչել Ձերդ Վեհափառութեանը, ոչ էլ մեզ. մենք մաքուր խիղճ ունինք. վէրքոտ ձին թող խրտչի, մեր մէջքը պինդ է։

Գալիս է մի Դերասան, Լուցիանոսի դերում։

Ահա մի մարդ, որի անունը Լուցիանոս է, թագաւորի եղբօրորդին է։

Օֆ. Դուք այնպէս լաւ էք մեկնաբանում, ինչպէս խաղի նախերգակը։
Համ. Ես շատ լաւ կարող եմ քո եւ սիրականիդ մէջ մեկնաբանի դեր կատարել, միայն թէ խամաճիկների կատակաւորը տեսնէի։
Օֆ. Շատ սուրն էք, տէր իմ, շատ սուրն էք։
Համ. Ցաւից կը գոռայիր մինչեւ սայրս բթացնէիր։
Օֆ. Աւելի լաւ, եւ աւելի վատ։
Համ. Այդպէս էք սխալւում ամուսին ընտրելիս։ — Դէ՜հ, սկսիր, մարդասպան. գլուխդ տանէ քեզ, մո՛րդ. բաց թող այդ ծամածռութիւնները, եւ սկսիր։ Ն՛կ. կռկռան ագռաւը վրէժ է պահանջում։
Լուց. Խորհուրդներ խաւար, եւ ձեռքեր ճարպիկ եւ թոյներ ազդու,
Ոչ մի արարած իմը ականատես, եւ ժամ ձեռնտու.
Դու դժխեմ խառնուրդ, կէս գիշերային խոտերից քամուած,
Եւ Հէկատէի անէծքով նիւթուած, երիցըս նեխուած.
Բընական թովքըդ, մահաբեր ոյժըդ թող շուտ ներգործէ,
Արշաւէ իսկոյն առողջ կեանքի վրայ, աւերմունք գործէ:

Թոյնը լցնում է քնողի ականջի մէջ։

Համ. Պարտէզի մէջ թունաւորում է մարդուն, թագաւորութիւնը ձեռք ձգելու համար. անունը Գոնզագօ է. պատմուածքը իսկապէս գոյութիւն ունի, եւ շատ ընտիր իտալերէն գրուած. հիմա կը տեսնես թէ մարդասպանը ինչպէս է ձեռք բերում Գոնզագօյի կնոջ սիրտը։
Օֆ. Թագաւորը վեր կացաւ։
Համ. Ի՞նչ է, սուտ հրդեհից վախեցա՞ւ։
Թագհ. Ի՞նչ պատահեց ձեզ, տէր իմ։
Պոլ. Դադարեցէք խաղը։
Թագ. Ճրա՛գ, ճրա՛գ, գնանք։
Պոլ. Ճրա՛գ, ճրա՛գ, ճրագ։

Ամէնքը դուրս են գնում բացի Համլէտից եւ Հորացիոյից։

Համ. Խոցուած եղնիկը թող ցաւից ողբայ
Առողջ եղջերուն ուրախ թռչկոտէ,

Մէկը թող քնի, միւսն արթուն մնայ,
Այս հին աշխարհի օրէնքը այդ է:

Եւ սրա հետ միասին, պարոն, մի անտառ փետուր գլխարկիս, եւ երկու մեծ կարմիր վարդ կօշիկներիս, միթէ բաւական չէ՞ լինի, որ ինձ մի տեղ տան դերասանների մի խումբի մէջ, եթէ մի օր ամբողջ գոյքս մախիր դառնայ։

Հոր. Գուցէ կէս բաժին կը տան ձեզ։

Համ. Ոչ, մի ամբողջ բաժին։

Գիտես, Դամոն, իմ սիրելի,
Այս զահն եղաւ աւերակ.
Դիոսի տեղ ո՞վ է նստել,
Մի իսկական ... խեղկատակ:

Հոր. Աւելի լաւ էր իր յանգով վերջացնէիք։

Համ. Սիրելի Հորացիօ, հազար ոսկի գրաւ կը դնեմ, որ ուրուականի ասածը ճշմարիտ էր։ Նկատեցի՞ր։

Հոր. Այո, տէր իմ։

Համ. Երբ թունաւորելու խօսքը եկաւ՝ տեսա՞ր։

Հոր. Շատ լաւ դիտեցի։

Համ. Ա՜հ, հա՛։ Եկէք մի բան նուագեցէք. եկէք, սրնգահարներ։

Եթէ այս արքան խաղը չը սիրեց,
Պատճառն այն է ... որ չը հաւանեց:

Գալիս են Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտերն։

Հայդէ՛, մի քիչ երաժշտութիւն։

Գիլդ. Ազնիւ տէր, թոյլ տուէք ձեզ երկու խօսք ասեմ։

Համ. Մի ամբողջ պատմութիւն, կարող ես, պարոն։

Գիլդ. Թագաւորը, տէր իմ...

Համ. Հը, ի՞նչ կայ։

Գիլդ. Քաշուել է իր սենեակը եւ սաստիկ յուզուած է։

Համ. Շա՞տ խմելուց։

Գիլդ. Ոչ, տէր իմ, բարկութիւնից։

Համ. Եթէ խելացի մարդ լինէիք՝ բժշկին կը յայտնէիք, ոչ թէ ինձ.

եթէ ես նրան լուծողական տամ՝ գուցէ այդ նրան էլ աւելի կը մաղձոտացնէ։

Գիլդ. Անխիւ տէր, մի քիչ աւելի կարգ ու կանոն դրէք ձեր խօսքերի մէջ, եւ այդպէս մի խրտչէք խօսքիս նիւթից։

Համ. Ես հանդարտ եմ, պարոն. խօսիր։

Գիլդ. Թագուհին, ձեր մայրը, սաստիկ վրդովուած՝ ինձ ուղարկել է ձեզ մօտ։

Համ. Բարով ես եկել։

Գիլդ. Ոչ, տէր իմ. այդ քաղաքավարութիւնն անտեղի է։ Եթէ կը բարեհաճէք ինձ օրինաւոր պատասխան տալ՝ ձեր մօր պատուէրը կը կատարեմ. թէ ոչ, ձեր ներողութիւնը եւ իմ վերադարձը կը լինեն պաշտօնիս վերջաւորումը։

Համ. Պարոն, չեմ կարող։

Գիլդ. Ի՞նչ չէք կարող։

Համ. Օրինաւոր պատասխան տալ։ Խելքս խանգարուել է. բայց ինչ պատասխան որ կարող եմ տալ, կը տամ քեզ, կամ աւելի ճիշդ, մօրս. ուրեմն, կարճ, բանն ինչ է, ասում ես մայրս...

Ռոզ. Ձեր մայրն՝ ասում է թէ ձեր վարմունքը նրան շատ զարմացրեց եւ ապշեցրեց։

Համ. Զարմանալի՜ որդի, որ կարողանում է իր մօրը այսպէս զարմացնել։ Բայց սա ասենեմ, այդ մայրական զարմացքը ուրիշ պոչ էլ ունի թէ ոչ. այդ ասա։

Ռոզ. Ուզում է քնելուց առաջ խօսել ձեզ հետ իր առանձնարանում։

Համ. Կը հնազանդեմ, թէկուզ տասն անգամ էլ մայրս լինի։ Ուրիշ գործ էլ ունիս ինձ հետ։

Ռոզ. Տէր իմ, մի ժամանակ դուք ինձ սիրում էիք։

Համ. Հիմա էլ սիրում եմ, երդւում եմ այս գողերով եւ շորթողներով։ (Ձեռքերն է ցոյց տալիս։)

Ռոզ. Սիրելի իշխան, ինչ է ձեր այդ վրդովմունքի պատճառը. ինքներդ ձեր ձեռքով փակում էք ձեր ազատութեան դուռը, երբ ցաւերդ թաքցնում էք ձեր բարեկամից։

Համ. Պարոն, յառաջադիմելու մարմաջն է ինձ տանջում։

Ռոզ. Ինչպէս կարելի է, երբ թագաւորն ինքը ձեզ է նշանակել Դանիմարքայի գահաժառանգ։

Համ. Այո, պարոն, բայց "մինչեւ խոտը բուսնի,,...։ Առակը մի քիչ մգլոտել է։ 350

Գալիս են Դերասաններ եւ Երաժիշտներ։

Ա՜հ, երաժիշտները. տուէք ինձ այդ սրինգներից մէկը։ (Գիլդէնշտէրնին) Եկ, քեզ մի բան ասեմ... Ինչու ես այդպէս ետեւիցս ընկել, եւ չես թողնում որ շունչ քաշեմ. կարծես որոշած լինես ինձ թակարդի մէջ ձգել։ 354

Գիլդ. Ա՜հ, տէր իմ, եթէ անձնուիրութիւնս շատ խիզախ է, պատճառն այն է, որ սէրս դէպի ձեզ քաղաքավարութեան ուշ չի դարձնում։

Համ. Լաւ չեմ հասկանում. կարո՞ղ ես այս սրինգի վրայ մի բան նուագել։

Գիլդ. Ոչ, տէր իմ։

Համ. Խնդրում եմ։ 360

Գիլդ. Հաւատացէք, չեմ կարող։

Համ. Աղաչում եմ։

Գիլդ. Կեանքումս սրինգ ձեռք չեմ առել, տէր իմ։

Համ. Բայց դա նոյնչափ դիւրին բան է, որչափ սուտ ասելը. մատներդ դիր այս լեզուակների վրայ եւ շարժիր, բերնովդ էլ փչիր, եւ տես ինչ հրաշալի երաժշտութիւն դուրս կը գայ. նայիր, ահա լեզուակները։

Գիլդ. Բայց չեմ կարող մատներս այնպէս շարժել, որ մի ներդաշնակ բան դուրս գայ. այդ ճարտարութիւնը չունիմ։ 369

Համ. Դէ լաւ. հիմա տես թէ ինչ անարժան արարած ես համարում դու ինձ. ուզում ես նուագել իմ վրայ. այնպէս ես ձեւացնում, որպէս թէ ծանօթ ես իմ լեզուակների հետ. ուզում ես իմ գաղտնիքը սրտիցս դուրս քաշել. ուզում ես ձայնս փորձել՝ սկսած ամենացած նոտայից մինչեւ ձայնաշարիս ամենաբարձրը. միւս կողմից՝ շատ երաժշտութիւն եւ հրաշալի հնչիւն կայ այս փոքրիկ գործիքի մէջ, եւ դու չես կարողանում նուագել. մա՞րդ Աստուծոյ, կարծում ես թէ ես մի սրինգի չափ էլ չեմ կա՞մ. անուանիր ինձ, ինչ գործիք որ

կ՚ուզես. թէեւ կարող ես ինձ չարչարել, բայց վրաս նուագել չես կարող։ (Գալիս է Պոլոնիոսը։) Բարեւ ձեզ, պարոն։

Պոլ. Տէր իմ, թագուհին կամենում է խօսել ձեզ հետ, եւ իսկոյն։

Համ. Տեսնո՞ւմ էք այն ամպը, որ կարծես ուղտի ձեւ ունի։

Պոլ. Պատարագը վկայ, ուղտի նման է, ճիշդ որ . . .

Համ. Ինձ թւում է թէ մի աքիսի նման է։

Պոլ. Մէջքը աքիսի է նման։

Համ. Կամ կէտ ձկան։

Պոլ. Շատ նման է կէտ ձկան։

Համ. Ուրեմն շուտով կը գամ մօրս մօտ։ (Առանձին) Սրանք ինձ այնպէս յիմարի տեղ են դնում, որ քիչ է մնում սիրտս տրաքւի։ — Շուտով կը գամ։

Պոլ. Այդպէս էլ կ՚ասեմ։

Գնում է։

Համ. Ի՞նչ դիւրին բան է "շուտով" ասելը։
Մենակ թողէք ինձ, բարեկամներս։

Ամէնքը գնում են բացի Համլէտից։

Ահա գիշերուայ յուռութքի ժամը,
Երբ յօրանջում են գերեզմանները,
Եւ դժոխքն ինքը ժանտախտ է փչում աշխարհի վերայ։
Այժմ կարող էի տաք արիւն խմել,
Եւ այնպէս դաժան գործեր կատարել,
Որ լոյս ցերեկը կը դողահարուէր վերան նայելուց։
Գնամ մօրս մօտ։ Ո՛վ սիրտ, մի կորցնիր քո բնութիւնը.
Ներոնի հոգին թող մուտք չը գտնէ այս պինդ կուրծքի մէջ.
Թող անգութ լինիմ, բայց ոչ հրէշային.
Պէտք է մօրս հետ դաշոյններ խօսեմ, բայց ոչ գործածեմ.
Լեզուս ու հոգիս թող այս բանի մէջ կեղծաւոր լինեն.
Որչափ էլ նրան խօսքով նախատեմ,
Հոգիս, մի թոյլ տար, որ գործով դատեմ։

Գնում է դուրս։

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐՐՈՐԴ

*Դղյակ և Թագավորը, Ռոզենկրանց և Գիլդենշտերնը:*

*Թագ.* Չեմ սիրում նրան, ոչ էլ մեզ համար ապահով բան է
Թույլ տալ, որ նրա խելագարությունն ազատ թափառի։
Գնացեք ուրեմն և պատրաստվեցեք.
Իսկույն կ'ուղարկեմ ձեր հանձնագիրը.
Պետք է նա ձեզ հետ Անգլիա գնա.
Մեր տերության նկատառումները չեն կարող թույլ տալ,
Որ վտանգը մեզ այնպես մոտ կենա,
Ինչ որ ամեն ժամ ծագում է նրա լուսնոտությունից։
*Գիլդ.* Շուտ կը պատրաստվենք. շատ նվիրական և սուրբ երկյուղ է
Հոգալ այնքան շատ անձերի մասին,
Որ Ձեր Մեծության շնորհից ապրում և սնանվում են։
*Ռոզ.* Սոսկ և մասնավոր անհատն էլ պարտ է
Իր հոգու բոլոր թափով ու զորով
Իրեն զերծ պահել ամեն փորձանքից.
Որքան առավել այն անձը, որի բարօրությունից
Կախված է մնում շատերի կյանքը.
Վեհափառության վախճանը երբեք մենակ չէ լինում.
Այլ հորձանքի պես քաշում է իր հետ մերձավորներին.
Մի ծանր անիվ է, բարձրաբերձ լեռան ծայրին հաստատված,
Որի վիթխարի շառավիղներին
Տասնյակ հազարով փոքրագույն բաներ զոդված, ագուցված են.
Եվ երբ ընկնում է, ամեն մի կցորդ, չնչին հետևորդ,
Ընկերանում է ճայթյուն խորտակման.
Երբեք չէ եղել, որ թագավորը մենակ հառաչե,
Այլ միշտ ընդհանուր վայնասունի հետ։
*Թագ.* Դե՛հ, պատրաստվեցեք, խնդրեմ, շտապով ճամփայ ընկնելու.
Պետք է այս ահի ոտքը շղթայենք,
Որ այժմ խիստ ազատ շրջագայում է։
*Ռոզ. եւ Գիլդ.* Կը շտապենք, տեր իմ։

Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտէրն գնում են դուրս.
Գալիս է Պոլոնիուս։

Պոլ. Տէր իմ, գընում է իր մօր սենեակը.
Ես էլ կը մտնեմ արրասի ետեւ, որ ականջ դընեմ.
Խօսք եմ տալիս ձեզ, Թագուհին նըրան խիստ կը պարսաւէ,
Եւ այո՛, ինչպէս ինքներդ ասացիք, եւ լաւ ասացիք,
Յարմար կը լինի որ բացի մօրից մի այլ ունկնդիր,
— Քանզի մօր սիրտը չէ կարող երբէք անաչառ լինել —
Թագաւորից լսէ խօսակցութիւնը։ Մնաք բարով, տէր,
Քընելուց առաջ ես նորէն կը գամ, լսածըս կ'ասեմ։
Թագ. Շընորհակալ եմ, սիրելի տէր իմ։

Պոլոնիուս գնում է։

Օ՜հ, զարշ է մեղքըս, եւ մինչեւ երկինք բուրում է հոտը.
Այն ամենահին, անդրանիկ անէծքն է վըրան դըրած,
Եղբայրասպանութի՜ւն։ Աղօթել, աւա՜ղ, չեմ կարողանում.
Թէեւ փափագըս նոյնչափ սաստիկ է, որչափ որ կամքըս.
Աւելի զօրեղ մեղքըս յաղթում է զօրեղ դիտումիս.
Եւ մի մարդու պէս, որ կատարելու երկու գործ ունի,
Վարանոտ կանգնած՝ չը գիտեմ արդեօք որից սկսեմ,
Անտես անելով թէ մին թէ միւսը։
Նոյն իսկ եթէ այս անիծեալ ձեռքը
Եղբօր արիւնով թանձրացած լինէր՝
Միթէ՞ գըթառատ երկնքում չը կայ բաւական անձրեւ,
Որ լըւայ նըրան, ձիւնի պէս ճերմակ։
Ի՞նչ բանի է պէտք ողորմութիւնը,
Եթէ ոչ մեղքին դիմագրաւելու.
Եւ աղօթքի մէջ ի՞նչ կայ, բայց միայն երկու զօրութիւն. —
Փորձանքից պահուիլ, քանի չենք ընկած,
Եւ ներում գտնել՝ ընկնելուց յետոյ։ Վեր նայեմ ուրեմն.
Մեղքս անցա՜ւ. բայց ո՜հ, աղօթքի ի՞նչ ձեւ ինձ կը ծառայէ.
"Ներիր ինձ իմ ժանտ սպանութիւնը"։
Ոչ, դա յարմար չէ, քանի դեռ իմս են այն արդիւնքները,

*Որոնց համար է, որ ես գործեցի սպանությունը, —*
*Թագըս, թագուհիս, ձեռք բերած փառքըս։*
*Կարող է մի մարդ ներում ստանալ*
*Պահելով հանդերձ մեղքի արդյունքը.*
*Այո, աշխարհի եղծ կարգերի մեջ՝*
*Կարող է մեղքի ոսկելից ձեռքը*
*Մեկդի վտարել արդարությունը.*
*Սակայն այդպես չէ այնտեղ, վերևում.*
*Այնտեղ այդպիսի ձեռնածություններ բանի չեն գալիս.*
*Այնտեղ ամեն գործ դըրւում է մեջտեղ հարազատ ձայնով,*
*Ու մենք ինքներըս հարկադըրւում ենք ճակատ առ ճակատ,*
*Ատամ առ ատամ մեր մեղքերի դեմ վըկայություն տալ։*
*Էլ ինչ ուրեմըն, էլ ինչ է մընում.*
*Մընում է փորձել թե ինչ է կարող ապաշխարանքը.*
*Ու ինչ չէ կարող. բայց ինչ, երբ որ մարդ զղջալ չէ կարող.*
*Օհ, թշվառ վիճակ, կուրծք, սև ինչպես մահ,*
*Սոսնձոտ հոգիս, որքան ճգնում ես քեզ ազատելու,*
*Այնքան ավելի կաշկանդում ես քեզ։*
*Օգնեցե՛ք, հրեշտակնե՛ր, մի փորձ փորձեցեք.*
*Վա՛ր, յամառ ծնկներ. սի՛րտ պողպատալար,*
*Փափկացիր ինչպես նորամանուկի մատաղ ջիլերը։*
*Գուցե ճար կայ դեռ։*

*Հեռանում է ու ծունկ չոքում. գալիս է Համլետ։*

Համ. *Ա՛յ, կարող էի ճիշդ հիմա անել. աղօթք է անում.*
*Ու հիմա կ՚անեմ. և նա այս կերպով երկինք կը գընայ.*
*Բայց արդեօք այդպէս վրէժըս կը հանուի. պէտք է լաւ կշռել.*
*Մի պիղծ սըրիկայ հօրըս սպաննէ, և փոխարէնը,*
*Ես, միակ որդին, նոյն սըրիկային երկինք ուղարկեմ.*
*Բա՛հ, շնորհ է դա, վարձ է, ոչ թե վրէժ։*
*Նա հօրըս բռնեց անազնիւ կերպով, լաւ կերած խմած,*
*Բոլոր մեղքերը լըրիւ բողբոջած, վառ, ինչպես Մայիս.*
*Ու թե իր հաշիւն ինչ վիճակում է,*

Ով է իմանում, բայց միայն Աստուած․
Սակայն դատելով մեր հանգամանքով եւ մտածութեամբ,
ծանր է վիճակը․ Ուրեմն ինչ վրէժ է, որ զարկեմ նորան
Մինչ երբ իր հոգին սրբելու վրայ է,
Երբ որ յարդարուած եւ պատրաստուած է իր անցքի համար։
Ոչ, յետ գնա, սուր․ ընտրիր աւելի սոսկալից առիթ,
Երբ գինով քնած, կամ կատաղութեամբ բորբոքուած լինի,
Կամ իր անկողնի ազգապղծական վայելչութեան մէջ,
Կամ թուղթ խաղալիս, կամ հայհոյելիս, մի գործի վերայ,
Որից փրկութեան հոտ անգամ չը գայ,
Եւ այնպէս զարկիր, որ կրունկները երկնքին դիպչեն,
Եւ հոգին այնպէս պիղծ ու սեւ դառնայ
Ինչպէս այն դժոխքն ուր գնալու է։ Մայրս սպասում է...
Այդ դեղը միայն երկարացնում է հիւանդ օրերդ։

Թագ. (Զոքած) Բառերըս թէեւ թռչում են վերեւ,
Սակայն մտքերըս մնում են ներքեւ,
Երբեք բառերը առանց մտքերի երկինք չեն հանի։

Գնում է։

---

## ՏԵՍԱՐԱՆ ՉՈՐՐՈՐԴ

*Թագուհու առանձնարանը:*

Գալիս են Թագուհին եւ Պոլոնիոսը։

Պոլ. Նա իսկոյն կը գայ․ խիստ եղէք իր հետ․
Ասացէք նորան թէ իր խաղերը մի տեղ են հասել,
Որ էլ հանդուրժել անկարելի է,
Եւ թէ շատ անգամ Ձեր Մեծութիւնը միջամտել է,
Եւ պատուար եղել արքայի ցասման եւ նորա միջեւ։
Ես կը թաքնուիմ հէնց այստեղ։ Խնդրեմ, խիստ եղէք իր հետ։

Համ. (Դրսից) Մայր, մայր, մայր։

Թագ. (Պոլոնիոսին) Ապահով եղէք. իմ մասին երբէք վախ մի ունենաք։
Հեռացէք. լսում եմ իր ոտքի ձայնը։

Պոլոնիոս թաքնւում է սրբասի ետեւ. գալիս է Համլէտ։

Համ. Արա, մայր, ի՞նչ կայ։
Թագ. Համլէտ, դու հօրըդ խիստ վշտացրել ես։
Համ. Մայր իմ, դու հօրըս խիստ վշտացրել ես։
Թագ. Ամօթ է, ամօթ. դու վատ լեզւով ես պատասխան տալիս։
Համ. Ամօթ է, ամօթ. դու չար լեզւով ես հարցումներ անում։
Թագ. Վա՜հ, ի՞նչ է, Համլէտ։
Համ. Ի՞նչ է պատահել։
Թագ. Չե՞ս ճանաչում ինձ։
Համ. Ինչո՞ւ չէ, շատ լաւ,
Թագուհին ես դու, տագրորդ կինն ես, ոչ բարով մայրըս։
Թագ. Եթէ այդպէս է մարդիկ կը կանչեմ քեզ խելքի բերեն։
Համ. Թող, թող, եկ նստիր. չը պէտք է շարժւիս,
Չը պէտք է գնաս մինչեւ դիմացըդ հայելի պահեմ,
Որի մէջ տեսնես հոգուդ ներքինը։
Թագ. Ի՞նչ ես անելու. ինձ սպանել ես ուզում. օգնութիւն,
Ըհէյ, օգնութի՜ւն։
Պոլ. (Սրբասի ետեւից) Ըհէյ, օգնութիւն, հասէք, օգնութիւն։
Համ. (Սուրը քաշելով) Այս ի՞նչ է, մո՞ւկ է։

Սուրը խրում է սրբասի մէջ։

Մեռա՜ւ. մէկ դուկա՜տ, որ մեռաւ պրծաւ։
Պոլ. (Ետեւից) Օ՜հ, սպանեց ինձ։

Ընկնում է գետին եւ մեռնում։

Թագ. Վա՜յ ինձ, ի՞նչ արիր։
Համ. Չը գիտեմ դեռ ինչ. թագաւո՞րն է նա։
Թագ. Օ՜հ, ի՞նչ յախուռն, արիւնահեղ գործ։
Համ. Արիւնահեղ գո՞րծ. գրեթէ նոյնչափ վատ, սիրելի մայր իմ,
Որչափ սպանել մի թագաւորի
Եւ ամուսնանալ նորա եղբօր հետ։

Թագ. Որչափ սպանել մի Թագաւորի՜։
Համ. Հէնց այդպէս, տիկին. այդպէս ասացի։

Արրասը բարձրացնում է եւ տեսնում է որ Պոլոնիուսն է։

Ա՜յ թշուառ, յախուռն, միջամուխ յիմար. բարի ճանապարհ.
Քեզնից մեծի տեղ ենթադրեցի քեզ. ստացիր բախտդ.
Տես ինչ վտանգ կայ ուրիշի գործին խառնուելու մէջ։

Թագուհուն։

Հերիք ձեռքերդ այդպէս գալարես. հանդարտ կաց, նստիր,
Եւ թող տուր որ ես սիրտդ գալարեմ.
Եւ պիտի անեմ՝ թէ կակուղ նիւթից յօրինուած լինի.
Եթէ անիծեալ սովորութիւնը
Պղնձացրած չը լինի նրան,
Եւ թումբ ու պատնէշ դարձրած ամեն զգացմունքի դէմ։
Թագ. Ես ի՞նչ եմ արել, որ յանդգնում ես այդպէս աղմուկով
Բարբառել իմ դէմ։
Համ. Ա՜յնպիսի մի գործ,
Որ համեստութեան շնորհքն ու շիկնումն աղաւաղում է,
Առաքինութիւնը կեղծ է անուանում,
Եւ անմեղ սիրոյ սիրուն ճակատից պոկում է վարդը
Եւ նրա տեղը մի պալար դնում.
Որ դարձնում է պսակի ուխտը
Խաղամոլների սուտ երդումներից աւելի խարդախ.
Որ ամուսնութեան դաշինքի միջից քաղում է ոգին,
Եւ դարձնում է անուշ կրօնը բառերի հագներգ։
Երկնքի դէմքը բոցավառուած է,
Այո, եւ այս պինդ, կայուն զանգուածը, թախծալից դէմքով,
Որպէս մօտեցած աշխարհի վերջին՝
Վշտահարուած է արարքիդ վրայ։
Թագ. Վա՜յ ինձ, ի՞նչ արարք, որ հէնց նախերգից
Այսպէս գոռգոռում եւ որոտում ես։
Համ. Նայիր դու այստեղ, նախ այս պատկերին, եւ ապա սրան,
Այս երկու եղբօր դիմագիրներին.

*Տես ի՜նչ շնորհք կայ այս դէմքի վերայ.*
*Ի՛սկ Հիպերիոնի գանգուր վարսերը,*
*Ճակատը կարծես Արամազդինն է,*
*Աչքը՝ Արէսի, սպառնալու համար եւ հրամայելու.*
*Կեցուածքը նման բանբեր Հերմէսին,*
*Որ երկնահամբոյր մի լեռան վերայ նոր իջած լինի.*
*Մի համադրութիւն, մի ձեւ, իսկապէս,*
*Որի վերայ կարծես ամէն մի աստուած իր կնիքն է դրել՝*
*Իր հաւատալիքը աշխարհին տալու, թէ ահա մի մարդ։*
*Այս էր ամուսինդ. իսկ այժըմ նայիր, այս միւսին նայիր.*
*Այս է ամուսինդ. բորբոսնած մի հասկ,*
*Որ վարակում է առողջ եղբօրը։ Աչքեր ունի՞ս դու,*
*Եւ կարողացար այս շքեղ լեռան արօտից իջնել,*
*Եւ պարարտանալ այս ճահիճի մէջ։ Հա՛, աչքեր ունիս։*
*Դու հօ չես կարող սէր անուանել այդ.*
*Քո տարիքի մէջ արեան բորբոքը մեղմ է եւ խոնարհ,*
*Եւ դատողութեան սպասարկու է։*
*Եւ ի՞նչ դատողութիւն կարող է անցնել սրանից սրան։*
*Զգացում ունիս. այլապէս իղձեր չէիր ունենայ.*
*Բայց անտարակոյս այդ զգացումը կաթուած է ստացել.*
*Քանի որ երբէք խենթութիւնն այդքան չէր դուրս գայ ճամբից,*
*Ոչ էլ զգացումն այդչափ ցնորքի գերին կը դառնար,*
*Որ ընտրողութեան մի փոքրիկ քանակ պահած չը լինէր*
*Այդքան ահագին մի տարբերութիւն զանազանելու։*
*Ի՞նչ դեւ է եղել, որ աչքակապուկ խաղալով քո հետ՝*
*Շորթել է խելքըդ։ Աչքերը առանց շօշափելիքի,*
*Շօշափելիքը առանց տեսութեան,*
*Ականջները առանց ձեռքի կամ աչքի,*
*Հոտառութիւնը առանց միւսների,*
*Կամ հաւատարիմ մի զգայարանի հիւանդ մասնիկն էլ*
*Չէր կարող այդքան անզգայ լինել։*
*Ամօթխածութի՛ւն, ո՞ւր է շիկնանքըդ։ Ո՜վ ըմբոստ դժոխք*
*Եթէ կարող ես տարիքաւոր կնոջ ոսկորների մէջ*

*Այսքան հետամնալ՝ թող հրաբորբոք ջահիլութեան մօտ*
*Առաքինութիւնն ինչպէս մոմ լինի, եւ բոցից հալուի։*
*Ամօթ մի՛ կոչէր, երբ գրոհ է տալիս բռնակալ հրայրքը,*
*Երբ սառուցն անգամ այնպիսի թափով բոցավառւում է,*
*Եւ դատողութիւնն ինքն էլ դառնում է կրքի կաւատը։*

Թագհ. *Օհ, Համլէտ, լռիր. աչքերս ուղղում ես դէպ հոգուս խորքը*
*Որտեղ տեսնում եմ սեւ, խորը բիծեր,*
*Որոնք չեն ուզում գունաթափ լինել։*

Համ. *Եւ ինչ, եւ ապրել մի ճարպոտ մահճի գարշ քրտինքի մէջ,*
*Աղտի մէջ խաշուած՝ իրար գգուելով եւ սիրուելով*
*Մի խոզանոցի աղբիւսի վրայ։*

Թագհ. *Օհ, էլ մի՛ խօսիր, Համլէտ, մի՛ խօսիր.*
*Ամէն մի բառդ մի դաշոյնի պէս ականջս է խրւում։*
*Էլ բաւական է, անուշիկ Համլէտ։*

Համ. *Մի սրիկա՛յ, մարդասպա՛ն, մի անարգ ստրուկ,*
*Որ հին ամուսնուդ մէկ տասներորդի քսաներորդն էլ չէ,*
*Թագաւորների այդ խեղկատակը,*
*Թագաւորութեան եւ իշխանութեան քսակահատը,*
*Որ պահարանից թագը գողացաւ, դրեց գրպանը։*

Թագհ. *Ա՛խ, բաւակա՛ն է։*

Համ. *Ցնցոտիների, կարկատանների այդ թագաւորը...*

Գալիս է Ուրուականը։

*Ա՜հ, փրկեցէք ինձ, եւ ձեր թեւերով ճախրեցէք վրաս,*
*Երկնային պահակներ։ — Ի՞նչ է ցանկանում սրբազան ոգիդ։*

Թագհ. *Աւա՜ղ, ցնդել է։*

Համ. *Չէ՞ որ եկել ես դանդաղկոտ որդուդ յանդիմանելու,*
*Որ վիճացնելով ժամանակ ու կիրք՝ յետաձգում է*
*Ահեղ հրամանիդ ստիպողական գործադրութիւնը։*
*Ո՛հ, ասա՛։*

Ուր. *Մի՛ մոռացիր դու. այցելութիւնս նորա համար է,*
*Որ սրբէ կրկին գրեթէ բթացած մտադրութիւնդ.*
*Նայիր, զարզանդը պատել է մօրդ։*

Օ՜հ, մտի՛ր նրա ոգորող հոգու եւ նրա միջեւ.
Երեւակայութիւնն աւելի խիստ է տկար մարմնի մէջ։
Խօսիր մօրդ հետ։

Համ. Ի՞նչ ունիս, տիկին։

Թագ. Դո՛ւ ի՞նչ ունիս, դո՛ւ, որ աչք ես յառել դատարկութեանը,
Ու խօսակցում ես անհիւթ օդի հետ.
Աչքերիդ միջից ոգիդ խուժում է վայրենի թափով,
Ու, փողի ձայնից քնից վեր թռած զինուորների պէս՝
Պառկած մազերդ, կարծես կեանք առած,
Ցցւում են, կանգնում արմատների վրայ.
Օ՜հ, քաղցրիկ զաւակ, յուզմունքիդ տապի եւ բոցի վրայ
Սառն համբերութիւն պէտք է սրսկես։ Այդ ու՞ր ես նայում։

Համ. Նրան, այ՛, նրան. տես, ինչպէ՜ս գունատ աչք է ոլորում.
Իր տեսքն ու դատը, եթէ քարերին քարոզ կարդային,
Նրանց զգայուն կը դարձնէին։ — Մի՛ նայիր վրաս,
Մի՛ գուցէ քո այդ գթասրտութեամբ
Փոխես իմ դաժան որոշումները. եւ, այն ժամանակ,
Իմ անելիքը թափուր կը լինի իսկական գոյնից.
Արցունքներ գուցէ, փոխանակ արեան։

Թագ. Այդ ու՞մ ես խօսում։

Համ. Չե՞ս տեսնում, այնտեղ։

Թագ. Ոչինչ չեմ տեսնում, թէեւ տեսնում եմ ամէն ինչ որ կայ։

Համ. Ու ոչ էլ լսում։

Թագ. Ու ոչ էլ լսում, բացի մեր ձայնից։

Համ. Վա՜հ, այնտեղ նայիր, տես, հեռանում է.
Հա՛յրս, իր զգեստով, ինչպէս երբ ողջ էր.
Նայիր, հէնց հիմա ելնում է դռնից։

Ուրուականն անհետանում է։

Թագ. Դա քո ուղեղի դարբնածն է միայն.
Այդպէս անմարմին գոյացութիւններ ստեղծելու մէջ
Երեւակայութիւնը շատ ընդունակ է։

Համ. Երեւակայութի՜ւն, երակըս նոյնքան չափով է խփում,

Որքան որ քոնը, եւ նոյնքան առողջ նուագ է անում։
Ոչ, ասածներըս խենթութիւնից չեն.
Կ'ուզես, փորձիր ինձ, եւ ես կարող եմ ասածըս կրկնել,
Իսկ խենթութիւնը շեղումներ կ'անէր։
Ի սէր Աստուծոյ, մայր իմ, մի՛ դնիր քո հոգուդ վրայ
Հանգստացուցիչ այն սպեղանին,
Թէ խենթութիւնս է քեզ հետ խօսողը, ոչ թէ քո մեղքը.
Դա խոցոտ տեղը մաշկով կը ծածկէ, կաշի կը բերէ,
Այն ինչ գարշելի ապականութիւնը, ներսից փորելով,
Պիտի վարակէ անտեսանելի։
Խոստովանիր արա երկնքի առաջ,
Զղջա անցեալը, խոյս տուր գալիքից,
Աղբիւս մի՛ շաղ տար վատ խոտերի վրայ, որ էլ չուռճանան։
Ներիր ինձ իմ այս առաքինութիւնը,
Քանզի այս գիրցած ժամանակների պարարտութեան մէջ
Առաքինութիւնն ինքն է ստիպուած
Մոլութիւնից ներում աղերսել, այո, խոնարհուել,
Եւ հրաման խնդրել՝ նրան բարութիւն անելու համար։
Թագ. Ա՜հ, Համլէտ, սիրտըս միջից կէս արիր։
Համ. Դէն ձգիր քեզնից նրա վատ կէսը,
Եւ միւս կիսովը մաքուր կեանք վարիր։ Բարի գիշեր քեզ։
Բայց հօրեղբօրըս գարշ անկողինը մի՛ մտնիր կրկին.
Առաքինութիւն ստանձնիր գոնէ, թէկուզ չունենաս.
Քանզի այն հրէշ սովորութիւնը,
Որ ճարակում է ամեն զգացում,
Մոլութեանց մէջ դեւ, գոնէ այս բանով հրեշտակ է նա,
Որ նաեւ ազնիւ եւ լաւ գործերի վարժութեան համար
Տալիս է հագուստ կամ մի համազգեստ՝ դիւրաւ հագնելի։
Զսպիր քեզ այս գիշեր, եւ դա մի տեսակ դիւրութիւն կը տայ
Յաջորդ գիշերուայ ժուժկալութեանըդ.
Երրորդն աւելի դիւրին կը լինի. եւ վարժութիւնը
Կարող է, այո, նոյն իսկ բնութեան դրոշմը փոխել,
Կամ յաղթել դեւին, կամ թէ հրաշալի իր կարողութեամբ

Դուրս ձգել նըրանք։ Նորէն, բարի գիշեր,
Եւ երբ դու ուզես օրհնըւած լինել,
Ես էլ կը խնդրեմ քո օրհնութիւնը։

*Պոլոնիոսին ցոյց տալով։*

Այս մարդու համար դառանց զղջում եմ. բայց երկինքն ուզեց,
Նըրան ինձանով եւ ինձ նըրանով պատժելու համար,
Որ ես լինէի իր խարազանը եւ դատաւորը։
Կը տանեմ նըրան, եւ նըրա մահւան
Ինքըս կը լինեմ պատասխանատուն.
Կըրկին եւ կըրկին բարի գիշեր քեզ.
Թող անգութ լինեմ, հէնց միայն բարի լինելու համար։
Վատ է սկսել, բայց դեռ գալու է աւելի վատը։
Մէկ բառ էլ, մայր իմ։

Թագ. Ի՞նչ պէտք է անեմ։

Համ. Ոչ այս բաները որ հիմա կ'ասեմ. ոչ, ամենեւին.
Թող փքուած արքան նորէն քաշէ քեզ իր անկողինը,
Եւ փայփայելով թուշըդ կըմթէ, քեզ "մուկիկ" կանչէ,
Եւ իր գարշահոտ մի զոյգ համբոյրով,
Կամ թէ անիծեալ իր մատներովը վիզըդ շոյելով՝
Բոլոր եղածը խոստովանել տայ,
Թէ ես էապէս խենթ չեմ, այլ խենթ եմ խորամանկօրէն։
Յարմար կը լինի որ յայտնես նըրան. քանի որ ո՞վ է,
Եթէ ոչ միայն մի սիրուն, զգաստ, խոհեմ թագուհի,
Որ մի չղջիկից, կամ մի պաղդոկից, արջակատուից
Այսպէս թանկագին տեղեկութիւններ թագցըրած պահէր։
Ոչ, այլ հակառակ գաղտնապահութեան եւ ողջմտութեան՝
Բաց քո զամբիւղը տանիքի վըրայ,
Թող թռչունները թռչեն, եւ ինքըդ մտիր նըրա մէջ,
Եւ հանրածանօթ կապիկի նըման՝ փորձելու համար,
Կտուրից ընկիր, եւ վիզըդ կոտրիր։

Թագ. Ոչ, վստահ եղիր. եթէ բառերը շունչ են, շունչը՝ կեանք,
Կեանք չը կայ իմ մէջ քո ասածները արտաբերելու։

Համ. Գիտե՞ս որ պէտք է Անգլիա գնամ։
Թագ. Մոռացել էի. այդպէս է վճռած։
Համ. Նամակ է կնքուած. եւ իմ այն երկու դասընկերները,
Որոնց կարող եմ այնքան վստահել, որքան իժերի,
Իրենք են տանում հրամանաթուղթը.
Պէտք է ինձ համար ճանապարհ հարթեն,
Եւ առաջնորդեն դէպի որոգայթ։ Հոգ չէ, թող գործեն.
Զուարճութիւն է ական փորողին
Հէնց իր սեփական պայթուցիկներով օդը թռցնել.
Եւ բանըս վատ է, եթէ ես նրանց ականների տակ
Դեռ մի կանգուն էլ խորունկ չը փորեմ,
Եւ ցատկեցնեմ մինչեւ լուսինը։ Ի՜նչ քաղցր բան է,
Երբ երկու դաւեր գալիս են շիտակ իրար հանդիպում։
Այս մարդն ինձ համար գործ է դառնալու։
Պէտք է փորոտիքը քաշ տամ տանեմ կողքի սենեակը։
Մայր, բարի գիշեր։ Այս խորհրդականն ինչպէս լուռ ու մունջ,
Եւ խորհրդապահ, եւ ծանրախոհ է,
Սա որ իր կեանքում խենթ ու շաղակրատ մի սրիկայ էր։
Եկ, պարոն, պէտք է գործըդ աւարտեմ։ Մայր, բարի գիշեր։

Հակառակ ուղղութեամբ դուրս են գնում. Համլետ քաշ է տալիս Պոլոնիուսի դիակը։

□ □ □

## ԱՐԱՐՈՒԱԾ ՉՈՐՐՈՐԴ

—

## ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Մի սենեակ դղեակում:*

*Գալիս են Թագաւորը, Ռոզենկրանց եւ Գիլդենշտերնը:*

Թագ. Մի բան կայ քո այս հառաչանքների, խոր հեւքերի մէջ.
Պէտք է բացատրես. յարմար է որ մենք պատճառն իմանանք.
Որդին ո՞րտեղ է։
Թագհ. (Ռոզ. եւ Գիլդ.-ին) Խնդրեմ մի րոպէ մեզ մենակ թողնէք։

Ռոզենկրանց եւ Գիլդենշտերնը դուրս են գնում։

Վա՜յ ինձ, այս գիշեր ի՜նչ տեսայ, տէր իմ։
Թագ. Ի՞նչ, Գերտրուդ, ասա՛. Համլէտն ինչպէս է։
Թագհ. Կատաղած ինչպէս հողմը եւ ծովը,
Երբ որ մրցում են թէ ո՞րն է զօրեղ.
Իր սանձակոտոր մոլեգնութեան մէջ՝ լսելով մի բան,
Որ շարժւում էր վարագոյրի ետեւ՝ սուրը դուրս քաշեց,
Եւ "մուկ է, մուկ է" աղաղակելով՝ խօլ խուճապի մէջ՝
Սպանեց այն խեղճ բարի ծերուկին որ թաքնուած էր։
Թագ. Ի՜նչ սոսկալի գործ։ Նոյնը կարող էր եւ մեզ պատահել,
Եթէ ինքներս այնտեղ լինէինք։
Իր ազատութիւնն ամենքիս համար վտանգաւոր է,
Քեզ համար անգամ, մեզ, ամեն մէկիս։
Աւա՜ղ, այսպիսի ժանտ գործի համար ի՞նչ պատասխան տանք։

Այդ էլ մե՛ր վզին պիտի բարդուի, մեզ, որ պարտ էինք
Այդ խենթացընող երիտասարդին, հեռատեսութեամբ,
Սանձըւած, փակւած, մեկուսի պահել.
Բայց աւա՜ղ, մեր սէրն այնքան ամբաւ էր,
Որ չը՛ հասկացանք թէ ինչ էր պատշաճ,
Այլ, վատ ախտի տէր մարդու պէս՝ թաքուն պահելու համար,
Թողինք որ ախտը ճարակէ կեանքի մինչ ուղն ու ծուծը։
Ո՞ւր է գընացել։

Թագհ. Իր սպանածին քաշ տըւաւ տարաւ.
Եւ այդ բանի մէջ իր խենթութիւնն իսկ, հանքի ոսկու պէս,
Որ խառըն լինէր աւելի նըւաստ մետաղների հետ,
Փայլում է մաքուր. նա արտասւում է եղածի վըրայ։

Թագ. Եկ գընանք, Գերտրուդ. պէտք է հենց այսօր,
Նախ քան արեւը լեռան գագաթը շօշափած լինի՝
Նըրան նաւ դըրած եւ ճամբած լինենք.
Յետոյ, մեր բոլոր վեհափառութեամբ եւ ճարտարութեամբ
Այս անարգ գործը թէ՛ գունաւորենք եւ թէ՛ չքմեղենք։
— Էհէ՜յ, Գիլդենշտե՛րն։

Գալիս են Գիլդենշտերն և Ռոզենկրանց։

Բարեկամներըս, գընացէք ձեզ հետ նոր մարդիկ առէք.
Համլէտ խենթութեամբ խեղճ Պոլոնիուսին զարկել է սպանել,
Եւ մօր սենեակից քաշել, դուրս տարել.
Գընացէք գըտէք, քաղցըր խօսեցէք,
Մարմինն էլ տարէք դըրէք մատուռը։ Շուտ արէք, խնդրեմ։

Ռոզենկրանց և Գիլդենշտերն դուրս են գնում։

Եկ գնանք, Գերտրուդ, կանչենք մեր խոհեմ բարեկամներին,
Եւ յայտնենք նըրանց թէ՛ այն, ինչ որ մենք ուզում ենք անել
Թէ՛ ձախող դէպքը... գուցէ այս կերպով, զըրպարտութիւնը,
Որ երկրագնտի տրամագծի մէկ ծայրից միւսը
Այնպէս շեշտակի սըւացընում է իր թունոտ նետը,
Ինչպէս թնդանօթն՝ իր նշանակին,

*Վրիպի եւ անցնի մեր անունիցը,*
*Ու անխոցելի օդը հարուածէ։ Գընանք, սիրելիս.*
*Վշտով ու վախով լցուած է հոգիս։*

գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի ուրիշ սենեակ դղեակում:*
*Գալիս է Համլետ:*

Համ. *Ապահով տեղ պահեստ է դրուած։*

Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտէրն բեմի ներսից։

Ռոզ. *Համլէ՜տ, իշխան Համլէ՜տ։*

Համ. *Կաց, այս ինչ ձայն է. ո՞վ է Համլէտ կանչում։ Ահա եկան։*

Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտէրն գալիս են։

Ռոզ. *Մարմինն ինչ արիք, տէր իմ։*

Համ. *Խառնեցի հողին, իր ազգականին։* 5

Ռոզ. *Ասացէք թէ որտեղ է, որ առնենք մատուռը տանենք։*

Համ. *Մի հաւատաք։*

Ռոզ. *Ի՞նչ բանի չը հաւատանք։*

Համ. *Որ ես կարող եմ ձեր գաղտնիքը պահել, իսկ իմս ոչ։ Բացի դրանից՝ երբ հարց անողը մի սպունգ է, մի արքայորդի ինչ պատասխան կարող է տալ։* 11

Ռոզ. *Ի՞նձ սպունգի տեղ էք դնում, տէր իմ։*

Համ. *Այո, պարոն, մի սպունգ որ ծծում է թագաւորի շնորհը, պարգեւները, պաշտօնները. բայց այդ տեսակ պաշտօնեաները յետոյ են թագաւորին պէտք գալիս. թագաւորը նրանց պահում է իր բերանի անկիւնում, ինչպէս կապիկը ընկոյզն է պահում. սկզբից դնում է բերանը, որ վերջը կուլ տայ. երբ նա պէտք ունենայ ձեր հաւաքածին, մի քիչ հուպ կը*

տայ, եւ դուք, սպունգներդ, նորէն կը ցամաքէք:

Ռոզ. Ձեր ասածը չեմ հասկանում, տէր իմ:

Համ. Ուրախ եմ որ չէք հասկանում. սուր խօսքը քնում է յիմար ականջում:

Ռոզ. Տէր իմ, պէտք է մեզ ասէք թէ մարմինը ո՛րտեղ է, եւ ինքներդ էլ գաք թագաւորի մօտ:

Համ. Մարմինը թագաւորի մօտ է, բայց թագաւորը մարմնի մօտ չէ. թագաւորը մի բան է որ...

Գիլդ. Մի բա՞ն, տէր իմ:

Համ. Ոչ մի բան. տարէք ինձ նրա մօտ: Թաքնուիր, աղուէս, եւ ամէնքը փնտռեն:

*Դուրս են գնում:*

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐՐՈՐԴ

*Մի ուրիշ սենեակ դղեակում:*

*Գալիս է Թագաւորը՝ պալատականների հետ:*

Թագ. Մարդ եմ ուղարկել, որ նրան փնտռեն, մարմինն էլ գտնեն.
Ի՜նչ մեծ վտանգ է, որ այսպէս այդ մարդն ազատ թափառի.
Բայց չենք էլ կարող շատ խիստ օրէնքի ենթարկել նրան.
Նա շատ սիրուած է անմիտ ամբոխից,
Որը չէ սիրում իր դատողութեամբ, այլ իր աչքերով.
Եւ երբ այդպէս է՝ նա յանցաւորի պատիժն է տեսնում,
Բայց ոչ յանցանքը: Որպէս զի գործը հարթ ու հեշտ գնայ,
Պէտք է որ նրա այս յանկարծակի դուրս առաքումը
Չափած ու կշռած որոշում թուայ:
Ծայրայեղ ախտերն կամ բժշկւում են ծայրայեղ ճարով
Կամ ամենեւին:

*Գալիս է Ռոզէնկրանց:*

Ի՞նչ լուր, ի՞նչ եղաւ:

Ռոզ. Տէր իմ, թէ դիակն ուր է թաքցրել,
Չենք կարողանում նրանից առնել տալ։

Թագ. Իսկ ինքը ո՞ւր է։

Ռոզ. Դուրսը, տէր արքայ. հսկողութեան տակ, մինչեւ հրամայէք։

Թագ. Բերէք մեր առաջ։ 15

Ռոզ. Էհէյ, Գիլդենշտերն. ներս բեր իշխանին։

Գալիս են Համլէտ եւ Գիլդենշտերն։

Թագ. Դէ՛ ասա, Համլէտ, Պոլոնիուսն ո՞ւր է։

Համ. Ընթրիքի։

Թագ. Ընթրիքի՜. ո՞րտեղ։ 19

Համ. Ոչ թէ ուր ուտում է, այլ ուր ուտւում է. քաղաքագէտ որդների մի համագումար հէնց այս րոպէիս նրանով է զբաղուած։ Ձեր միակ կայսրը, կերակրի տեսակէտից, ձեր որդն է. բոլոր միւս արարածներին պարարտացնում ենք, որ նրանք էլ մեզ պարարտացնեն. իսկ մենք մեզ գիրցնում ենք ճճիների համար։ Պարարտ թագաւորը եւ նիհար մուրացկանը տեսակ տեսակ կերակուրներ են. երկու կերակուր, բայց մէկ սեղանի համար. այս է վերջը։

Թագ. Աւաղ, աւաղ։

Համ. Մարդ կարող է ձուկ որսալ հէնց այն ճճիով, որ մի թագաւորի միսն է կերել, եւ ուտել հէնց այն ձուկը, որ նոյն ճճիով է կերակրուել։ 31

Թագ. Ի՞նչ ես ուզում ասել դրանով։

Համ. Ոչինչ, միայն ցոյց տալ ձեզ, թէ մի թագաւոր ինչպէս կարող է ճամբորդել մուրացկանի աղիքների միջից։

Թագ. Պոլոնիուսն ո՞ւր է։ 35

Համ. Երկնքում. մարդ ուղարկեցէք տեսնէ. եթէ ձեր մարդը նրան այնտեղ չը գտնէ՝ ապա ինքներդ միւս տեղում փնտռեցէք։ Բայց, հաւատացէք, եթէ մինչեւ մէկ ամիս նրան չը գտնէք՝ հոտը կ'առնէք աստիճաններից դէպի գաւիթը բարձրանալիս։

Թագ. (Ծառաներին) Գնացէք տեսէք թէ այնտե՞ղ է։ 40

Ծառաները գնում են։

Համ. Մը սպասէ այնտեղ մինչեւ որ գընաք։
Թագ. Համլէտ, այս գործըդ,
Հէնց քո սեփական ապահովութեան նկատումներով,
Որին նոյնչափ շատ արժէք ենք տալիս,
Որչափ սրտագին ցաւում ենք քո այս արածիդ վըրայ,
Պէտք է քեզ իսկոյն հրատապ հապճեպով ճամբէ այստեղից.
Ուստի պատրաստուիր. նաւը պատրաստ է եւ հողմը յաջող,
Եւ ընկերներըդ քեզ են սպասում։
Ամեն բան արդէն կարգադրուած է դէպի Անգլիա։
Համ. Դէպի Անգլիա՞։
Թագ. Այո, Համլէտ։
Համ. Լաւ։
Թագ. Իսկապէս լաւ է, եթէ գիտենաս մեր դիտումները։
Համ. Ես տեսնում եմ մի քերովբէ, որ տեսնում է ձեր դիտումները։
— Բայց, եկ, գնանք Անգլիա։ — Մնաք բարով, սիրելի մայր։
Թագ. Ես քո սիրող հայրդ եմ, Համլէտ։
Համ. Մայրս էք. հայր ու մայր, այր ու կին են. այր ու կին մէկ
մարմին են. ուրեմն, մայրս էք։ — Եկէք, Անգլիա գնանք։

Դուրս է գնում։

Թագ. (Ռոզ. եւ Գիլդ.-ին) Հետապնդեցէք նըրան քայլ առ քայլ,
Եւ նըրան փութով տարէք դէպի նաւ. մի՛ ուշացրնէք.
Ուզում եմ որ նա այս գիշեր եւեթ հեռացած լինի.
Մեկնեցէք շուտով։ Ինչ որ այս գործին վերաբերեալ է,
Կնքուած, պատրաստ է։ Խնդրեմ, փութացէք։

Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտէռն դուրս են գնում։

Անգլիա, եթէ բարեկամութիւնս աչքիդ յարգ ունի,
— Ինչպէս որ իմ մեծ կարողութիւնը
Ի վիճակի է քեզ զգալ տալու,
Քանի տակաւին վէրքըդ չէ գոցուել Դանիական սըրից,
Եւ սաստիկ վախըդ հպատակութեան տուրք է ինձ տալիս —
Վեհապետական հրամանըս անտես չես կարող անել,

Որը, ուղղակի, այդ մտքով գրուած իմ նամակի մէջ
Համլէտի մահն է քեզնից պահանջում։
Արա՛, Անգլիա. դա ջերմի նման արիւնս է այրում.
Դու ես բժիշկը. մինչեւ լուր չստանեմ թէ կատարուած է,
Ինչ էլ գլխիս գայ՝ ինձ հանգիստ չը կայ։

գնում է։

---

## ՏԵՍԱՐԱՆ ՉՈՐՐՈՐԴ

*Մի դաշտավայր Դանիմարքայում:*

*Գալիս են Փորտինբրաս, մի Գնդապետ եւ զինուորներ:*

Փորտ. Գնա՛, գնդապետ, եւ տար ողջոյնը Դանիայի արքային,
Եւ ասա նրան, թէ ինչպէս նա ինքն արտօնել է այդ,
Հրաման ենք խնդրում որ մեր զօրքն անցնի իր երկրի միջով։
Ժամադրավայրը գիտես որտեղ է.
Եւ եթէ Նորին Վեհափառութիւնն ասելիք ունի՝
Պատրաստ ենք անձամբ մեր յարգանքները մատուցանելու։
Այս բանն էլ յայտնիր։

Գնդ. Շատ բարի, տէր իմ։

Փորտ. Հանդարտ քայլեցէք։

Փորտինբրաս դուրս է գնում զօրքի հետ.
Գալիս են Համլէտ, Ռոզէնկրանց եւ Գիլդէնշտէրն։

Համ. Ցանկալի պարոն, որի՞ զօրքն է այս։

Գնդ. Նորվէգի, տէր իմ։

Համ. Եւ ո՞ւր են գնում, ասացէք, խնդրեմ։

Գնդ. Դէպի Լեհաստանի մի որոշ մասը։

Համ. Եւ ո՞վ է նրանց հրամանատարը։

Գնդ. Ծերուկ Նորվէգի եղբօրորդին է, իշխան Փորտինբրաս։

Համ. Բուն Լեհաստա՞նի վրայ է վէճը, թէ մի սահմանի։

Գնդ. Անկեղծ խօսելով, պարոն, եւ առանց չափազանցութեան,

Գնում ենք շահել հողի մի շերտիկ,
Որ ինքն ըստ ինքեան ոչ մի շահ չունի, բացի անունից.
Հինգ, հինգ դուկատի չէի վարձի այն.
Ոչ էլ կարող է դա Նորվեգիային կամ Լեհաստանին
Աւելի շահ տալ, իբրեւ կալուած էլ եթէ վաճառուի։

Համ. Եթէ այդպէս է՝ Լեհացիները չեն էլ պաշտպանի։

Գնդ. Ի՜նչպէս չէ. արդէն զօրք են ուղարկել։

Համ. Երկու հազար մարդ, քսան հազար դուկատ
Չեն կարող լուծել այդ չնչին հարցը.
Մի ուռեցք է դա շատ հարստութեան եւ խաղաղութեան,
Որ ներսից պայթում, բայց դրսից բնաւ ցոյց էլ չէ տալիս,
Թէ արդեօք մարդը ինչ բանից մեռաւ։
Շնորհակալ եմ, յարգելի տէր իմ։

Գնդ. Աստուած ձեզ հետ։

գնում է։

Ռոզ. Չէք բարեհաճում մեզ հետ գալ, տէր իմ։

Համ. Իսկոյն գալիս եմ. դուք առաջ անցէք։

Ամէնքը գնում են բացի Համլէտից։

Ի՜նչպէս ամէն դէպք մեղադրական է կարդում իմ գլխիս,
Եւ խթանում է իմ յոյլ վրէժը։ Ի՞նչ բան է մարդը.
Եթէ իր կեանքի գլխաւոր շահը եւ փոխարժէքը
Միմիայն ուտել եւ քնել լինի։
Անասուն միայն, ոչինչ աւելի,
Անտարակոյս, Նա, որ մեզ ստեղծեց այս լայն հանճարով,
Դէպի յետ նայող եւ դէպի առաջ,
Չը պարգեւեց մեզ այնպիսի մի մեծ ընդունակութիւն
Եւ աստուածանման բանականութիւն,
Որ նրանք անպէտք բորբոսնեն մեր մէջ։
Արդ, անասնական մոռացում լինի,
Թէ մի թուլամիտ խղճամտութիւն՝
Դէպքի վրայ շատ ճշգրիտօրէն խորհրդածելու,
Խորհրդածութիւն, որ չորս մաս արած,

Մի մասը միայն խոհեմութիւն է,
Իսկ միւս երեքը անարիութիւն... Չը գիտեմ ինչու
Պէտք է միշտ ապրեմ կրկնելու համար “Այս կայ անելու”;
Երբ ունիմ պատճառ, կամք, ոյժ եւ միջոց անելու համար.
Եւ օրինակներ, երկրագնտի չափ, յորդորում են ինձ.
Վկայ այս զօրքը, այդքան բազմաթիւ, այդքան բազմածախս,
Որի վարիչն է մի մատաղահաս եւ քնքուշ իշխան,
Որ աստուածային փառասիրութեամբ ոգին խանդավառ՝
Բերան է ծռում անտեսանելի գալիքի վրայ,
Ենթարկելով այն, ինչ մահկանացու եւ անհաստատ է,
Բախտի, վտանգի եւ մահացութեան.
Եւ այդ, մի ձուի կճեպի համար։ Իրօք մեծ լինել՝
Նշանակում է ոտքի չը կանգնել առանց մեծ դատի,
Բայց եւ արիաբար կռուի մէջ մտնել մի շիւղի համար՝
Երբ որ խնդիրը պատուի վրայ է։ Հապա ես ինչպէս,
Որ մի հայր ունիմ դաւով սպանուած, մի մայր՝ աղտոտուած,
Գրգիռներ արեան ու դատողութեան,
Եւ թոյլ եմ տալիս ամէն բան քնի, այն ինչ, ամօթ ինձ,
Տեսնում եմ այստեղ քսան հազարի մօտալուտ մահը,
Որոնք համբաւի մի երազանքի, ստուերի համար՝
Քայլում են գնում դէպի գերեզման, ինչպէս անկողին.
Կռուում են հողի մի շերտի համար,
Ուր բանակները տեղ անգամ չունին հարցը վճռելու,
Որ բաւական մեծ հանգստարան չէ կամ ամփոփարան՝
Սպանուածներին ծածկելու համար։ Օ՜հ, այս րոպէից
Թող խորհուրդներըս արիւնաուշտ լինեն, կամ ոչինչ չարժեն։

գնում է։

## ՏԵՍԱՐԱՆ ՀԻՆԳԵՐՈՐԴ

*Էլսինոր. մի սենեակ դղեակում:*

*Գալիս են Թագուհին, Հորացիօ եւ մի Ազնուական:*

Թագ. Չեմ ուզում խօսել այս աղջկայ հետ։
Ազն. Ձանձրացուցիչ է, իսկապէս ցնդած.
Նրա վիճակը շատ գթաշարժ է։
Թագ. Բայց ի՞նչ է ուզում։
Ազն. Իր հօր մասին է խօսում. ասում է, "լսել եմ
Խարդախ բաներ կան այս աշխարհի մէջ"
Բացագանչում է, իր կուրծքն է կծում,
Մի խոտի շիւղից մաղձոտանում է.
Տարտամ բաներ է ասում, կիսով չափ իմաստ ունեցող.
Նրա խօսքերը թէեւ ոչինչ են, բայց անկապ ձեւը
Ունկնդիրներին փորձել է տալիս որ մի միտք հանեն.
Մտքից բաներ են երեւակայում,
Եւ կարկատելով նրա խօսքերը՝
Յարմարեցնում են իրենց սեփական մտածմունքներին.
Եւ դրանք կցւած իր նայւածքների, շարժուձեւի հետ՝
Կարծել են տալիս որ մի իմաստ կայ գուցէ նրանց մէջ,
Թէեւ ոչ հաստատ, բայց դժբախտ մի բան։
Հոր. Աւելի լաւ է որ խօսէք իր հետ,
Նա վտանգաւոր ենթադրութիւններ կարող է ցանել
Չարութիւն ծնող ուղեղների մէջ։
Թագ. Ասացէք ներս գայ։

Ազնուականը դուրս է գնում։

(Առանձին) Յանցաւոր հոգուս, — եւ միշտ այդպէս է մեղքի բնոյթը —
Ամէն չնչին բան նախերգն է թւում մի մեծ աղէտի.
Մեղքն այնպէս լի է անճարակ վախով,
Որ աշկարւում է իր աշկարւելու ահից ու դողից։

Գալիս է Ազնուականը. Օֆէլիայի հետ։

*Օֆ.* Ո՞ւր է Դանիայի չքնաղ թագուհին։

*Թագհ.* Ի՞նչ կայ, Օֆելիա։

*Օֆ.* (Երգելով) "Ի՞նչպէս ճանչեմ ես քո եարին
Այնքան ջահիլներից,
— Իր գլխարկի խեցիներից,
Փայտից, սանդալներից։"

*Թագհ.* Սիրելի օրիորդ, ինչու համար ես այդ երգը երգում։

*Օֆ.* Ի՞նչ ասացիք, չէ՞, լսեցէք խնդրեմ։

Երգում է։

"Մեռաւ գնաց, մեռաւ գնաց,
Ու հող մտաւ, տիկին.
Խոտ է բուսել գլխի վրայ,
Ու մի քար կայ ոտքին։"

Օ՜հ, հօ՜...

*Թագհ.* Օֆելիա՛։

*Օֆ.* Լսեցէք խնդրեմ։

Երգում է։

"Պատանք ունէր ձիւնի նման ...

Գալիս է Թագաւորը։

*Թագ.* Նայեցէք, տէր իմ։

*Օֆ.* Պճնած ծաղիկներով,
Որոնք ցօղուած չիրիմ մտան
Սիրոյ արցունքներով"։

*Թագ.* Ի՞նչպէս ես, սիրուն Օրիորդ։

*Օֆ.* Լաւ, փառք Աստուծոյ։ Ասում են բուն մի հացթուխի աղջիկ էր։ Տէր իմ Աստուած, մեզ յայտնի է թէ ինչ ենք, բայց յայտնի չէ թէ ինչ ենք լինելու։ Աստուած ձեր սեղանը չէն պահէ՜։

*Թագ.* Իր հօրն է երեւակայում։

Օֆ. Խնդրեմ, այդ մասին չը խօսենք. բայց երբ ձեզնից հարցնեն, թէ ինչ միտք ունի, այսպէս ասացէք.

Երգում է։

Էգուց տօն է, սուրբ Վալէնտին,
Կանուխ արեւծագին,
Պատուհանիդ առաջ կանգնած՝
Ես եմ քո Վալէնտին:
Տղան ելաւ, զգեստ հագաւ,
Եւ տան դուռը բացաւ,
Եւ աղջըկան իր մօտ տարաւ,
Որ էլ աղջիկ չելաւ:

Թագ. Սիրուն Օֆելիա։

Օֆ. Հա՛, ճիշդ որ... առանց երդումի, թող վերջացնեմ։

Երգում է։

Յիսուս Քրիստոս, Սուրբ խաչ վկայ,
Դա ինչ ամօթ բան է:
— Ամեն տղայ, ձեռքից որ գայ,
Ինքն էլ նոյնպէս կ'անէ.
Աղջիկն ասաց, "դու խօսք տուիր
Որ ինձ քեզ կին կ'առնես:
Տղան ասաց.
Եթէ ինձ հետ չը պառկէիր
Անշուշտ կ'առնէի քեզ:

Թագ. Որչա՞փ ժամանակ է որ սա այսպէս է։

Օֆ. Յոյս ունիմ որ վերջը բարի լինի. պէտք է համբերութեան ունենանք. բայց չեմ կարողանում լացս զսպել, երբ մտածում եմ որ նրան դրել են սառն հողի մէջ։ Եղբայրս իմաց պէտք է առնէ. և այսպէս, շնորհակալ եմ ձեր բարի խորհուրդի համար։ — Հէյ, կառքս։ — Բարի գիշեր, տիկիններ, բարի գիշեր, սիրելի տիկիններ, բարի գիշեր։

Դուրս է գնում։

Թագ. Խնդրում եմ մոտից հետևեիք նրան, լավ հսկիր վրան։

Հորացիօ դուրս է գնում։

Ա՜խ, դա թույնն է իր խորունկ վշտի,
Որ ծագում է սոսկ իր հոր մահվանից։ Օ՜հ, Գերտրո՛ւդ, Գերտրո՛ւդ,
Ցավերը գալիս՝ չեն գալիս հատ հատ լրտեսների պես,
Այլ հոծ գունդերով։ Նախ, հայրն սպանվեց.
Յետոյ, քո որդին այստեղից գնաց.
Ու նա ինքն եղավ բանի հեղինակն իր արտաքսման.
Ռամիկ ամբոխը՝ խեղճ Պոլոնիուսի մահվան պատճառով՝
Յուզված է այժմ, թանձր ու վտանգավոր մտմտուքներից
Ու շշուկներից. Եւ մենք ինքներս էլ շատ խակ վարվեցանք
Որ սուսիկ-փուսիկ թաղեցինք նրան.
Իսկ խեղճ Օֆելյան, զրկված իր առողջ դատողությունից,
Որից երբ զուրկ ենք՝ պատկերներ ենք սոսկ, կամ անասուններ.
Ու ամենից վերջ, ինչ որ հենց ինքը բոլորի չափ է,
Եղբայրը ծածուկ վերադարձել է Ֆրանսիայից,
Ու սնվում է իր կասկածներով,
Իրեն պահում է թուխպերով պատած.
Շուրջն էլ պակաս չեն փսփսացողներ,
Որ վարակում են նրա ականջը թունոտ խոսքերով
Հոր մահվան մասին. Եւ այդ բանի մեջ հարկը, նյութից զուրկ,
Չի խղճահարելու մեզ ամբաստանել ականջից ականջ։
Օ՜հ, իմ սիրելի Գերտրուդ, այդ բանը գնդացիրի պես
Ինձ շատ տեղերից ավելորդ անգամ մահացնում է։

Մի ձայն դրսից։

Թագհ. Ա՜հ, ինչ ձայն է այս։
Թագ. Պահակներս ու՞ր են. Թող դուռը պահեն։

Գալիս է մի պալատական։

Ի՞նչ է պատահել։
Պալ. Ովկիանն իր ափից արտախուժելիս՝
Չէ լափում այնպես անզուսպ շտապով տափաստանները,

*Ինչպէս Լաէրտը, ապստամբների մի հրոսակի հետ,*
*Ցած է տապալում ձեր սպաներին։*
*Ամբոխը նրան իր տէրն է կանչում,*
*Եւ, ճիշդ որպէս թէ աշխարհը այսօր սկսած լինէր,*
*Հինը մոռացուած, եւ սովորութիւնն անծանօթ դարձած,*
*— Այդ նեցուկները եւ վաւերիչներն ամեն խօսքի, —*
*Աղաղակում է "Մենք Լաէրտին ենք թագաւոր ընտրում"։*
*Գլխարկ, ձեռք, լեզու փառաբանում են մինչեւ ամպերը.*
*"Լաէրտը պէտք է թագաւոր լինի, Լաէրտ թագաւոր"։*

*Թագհ.* *Ի՛նչպէս ցնծութեամբ հաչում են դրանք կեղծ հետքի վրայ.*
*Ծուռ կողմ էք վազում, ո՜վ դուք Դանիայի կեղծաւոր շներ։*

*Թագ.* *Դուռը ջարդեցին։*

Ներս է մտնում Լաէրտը զինուած՝ եւ դանիացիք ետեւից։

*Լա.* *Ասացէք, ո՞ւր է այդ թագաւորը։*
*— Պարոններ, խնդրեմ դուրսը սպասէք։*

*Դան.* *Ոչ, թողէք ներս գանք։*

*Լա.* *Խնդրում եմ թոյլ տաք մենակ ներս գնամ։*

*Դան.* *Լաւ, թոյլ ենք տալիս։*

Գնում են դռնից դուրս։

*Լա.* *Շնորհակալ եմ, դուռը պահեցէք։*
*— Անա՛րգ թագաւոր, յետ տուր ինձ հայրըս։*

*Թագ.* *Հանդա՛րտ պահիր քեզ, ազնիւ Լաէրտ։*

*Լա.* *Արեան այն կաթիլը, որ հանդարտ կենայ,*
*Ինձ անհարազատ կը յայտարարէ,*
*Հօրըս անունը խայտառակ կ'անէ,*
*Եւ մօրըս պարկեշտ, անբիծ ճակատին, զոյգ ունքերի մէջ*
*"Բոզ" կը խարանէ։*

*Թագ.* *Ի՞նչ է պատճառը, Լաէրտ, որ այդպէս*
*Ըմբոստութիւնդ ամեհացել է։*
*Թող դրան, Գերտրուդ. մեր անձի մասին երկիւղ մի՛ կրեր.*
*Կայ մի երկնային նախախնամութիւն,*

Որ թագաւորին ցանկապատում է, այնպէս որ դաւը
Հազիւ է կարող նշմարել միայն իր կամեցածը,
Սակայն չէ կարող կամքը կատարել։
Լաէրտ, ինչու ես այդպէս բորբոքուել։
— Թող գլխան, Գերտրուդ։ — Դէհ խօսիր, ո՛վ մարդ։

Լաւ. Հայրս ո՞ւր է։

Թագ. Մեռաւ։

Թագհ. Ոչ սորա ձեռքով։

Թագ. Թող կուշտ հարցնէ։

Լաւ. Ի՞նչպէս թէ մեռաւ. ես չեմ հանդուրժի որ ինձ հետ խաղան.
Թող դժոխք գնայ հպատակութիւն.
Բոլոր ուխտերը սեւագոյն դեւերին,
Խիղճ ու. փրկութիւն, խորագոյն խորքերին.
Գեհենի կրակն ինձ չէ վախեցնում.
Այնտեղն եմ հասել, որ քամահրում եմ երկու աշխարհն էլ.
Ինչ որ գալու է, թող գայ. միայն թէ լուծեմ վրէժը,
Իմ հօրս մահուան լիուլի վրէժը։

Թագ. Ով է քեզ բռնում։

Լաւ. Իմ կամքը, բայց ոչ համայն աշխարհը.
Իսկ միջոցներս, այնպէս կարող եմ խնայել նրանց,
Որ շատ քիչ բանով շատ հեռու հասնեն։

Թագ. Իմ ազնիւ Լաէրտ,
Եթէ ուզում ես ստուգել հօրդ մահուան խնդրի մէջ
Սոսկալի խճճանալ՝ մի՞թէ վրէժդ այն է պահանջում
Որ տանող, տարուող, բարեկամ, թշնամի,
Աւլես նրանց սրբես անխտիր։

Լաւ. Ոչ, այլ մի միայն թշնամիներին։

Թագ. Դէ լաւ, ուզում ես ճանաչել նրանց։

Լաւ. Նրանց ճշմարիտ բարեկամներին ահա այսպէս լայն
Կը բանամ գիրկս. բարի, ինքնազոհ հաւալուսնի պէս՝
Արիւնս կը տամ նրանց կերակուր։

Թագ. Այժմ խօսում ես իբրեւ ազնիւ մարդ եւ բարի զաւակ։
Որ ես անմեղ եմ քո հօր մահուան մէջ,

Ու բոլոր սրտով վշտահարուած եմ եղածի վերայ,
Դա այնպէս ուղիղ կը ցայտի խելքիդ, ինչպէս լոյսն աչքիդ։

Դան. (Ներսից) Թողէք ներս գնայ։

Լա. Ի՞նչ աղմուկ է այս։

*Օֆելիան նորէն գալիս է։*

Օ՛հ, ջերմ, չորացրու ամբողջ ուղեղըս, 160
Ու դուք, արցունքներ, եօթն անգամ աղի,
Այրեցէք աչքիս ունակութիւնը։ Երկինքն է վկայ,
Քո խենթութեան տեղ այնպիսի քաշով տուժել պիտի տամ,
Որ մեր նժարը լծակն էլ շուռ տայ։ 164
Ո՛վ վարդ Մայիսի, ո՛վ անգին աղջիկ, ո՛վ բարի քոյրիկ,
Քաղցրիկ Օֆելիա. — Բարերար Աստուած, կարելի՞ բան է,
Որ մի մատաղահաս աղջկայ խելքը
Մի ալեւորի ծերուած կեանքի պէս դիւրամեռ լինի։
Հոգին սիրոյ մէջ շատ նուրբ է լինում, եւ երբ որ նուրբ է,
Նա ուղարկում է իր էութիւնից մի ազնիւ նմուշ 170
Նրրա ետեւից, որին սիրում է։

Օֆ. (Երգելով) Դէմքը բաց՝ դագաղով դուրս տարին,
Հէյ նոննի, նոննի, հէյ նոննի.
Գերեզմանն արցունքով թաց արին...
Մնաս բարով, իմ աղաւնեակ։ 175

Լա. Միտքըդ ողջ լինէր եւ վրէժ կանչէիր
Դա ինձ չէր կարող այսքան խիստ յուզել։

Օֆ. (Երգելով) Պէտք է երգես, ցած եկ, ցած
Կանչես նորան ցած: 179
Ինչպէս կրկներգը յարմար է գալիս. անհաւատարիմ տնտեսն է, որ իր տիրոջ աղջկան փախցրել է։

Լա. Այս ոչինչը շատ ինչից շատ է։

Օֆ. Ահա խնկունի, յիշելու համար. խնդրում եմ, հոգիս, յիշիր. ահա խոհիկներ, մտածութեան համար։

Լա. Խենթութեան մէջ խորհուրդ. յիշողութիւնն ու միտքը զուգորդուած։ 186

Օֆ. (Թագուհուն) Ահա ձեզ սամիթ, եւ աղաւնախոտ: (Թագաւորին) Ահա ձեզ փեգենայ. ինձ համար էլ մի քիչ կայ «կիրակնօրեայ թողութեան խոտ», էլ կարող ենք կոչել. բայց դուք ձերը տարբեր նշանակութեամբ պէտք է կրէք: Ահա ձեզ զառկածաղիկ. կ'ուզենայի ձեզ մանուշակ էլ տալ, բայց բոլորը թառամեց երբ հայրս մեռաւ. ասում են վերջը բարի եղաւ...

Երգում է:

Սիրուն Ռուբինը խելքս տարել է:

Լա. Մտածմունք, թախիծ, կիրք, դժոխքն անգամ
Դարձընում է նա հրապոյր եւ հըմայք:

Օֆ. (Երգելով) Ցետ չի՞ դառնայ միթէ նա,
Ցետ չի՞ դառնայ միթէ նա.
Ոչ, ոչ, մեռաւ. մեռիր եւ դուն.
Նա չի դառնայ մէկ էլ տուն:
Մօրուք ունէր ձիւնի պէս,
Եւ մազերը վուշի պէս,
Գընաց, գընաց,
Ջուր է մեր լաց,
Ողորմիր, տէր, իր հոգուն:
Եւ բոլոր քրիստոնեաների հոգուն, բարերար Աստուած:
Մնաք բարով:

Օֆէլեան գնում է:

Լա. Տեսնում ես, Աստուած:

Թագ. Լաէրտ, քո ցաւին պէտք է մասնակցեմ,
Այլապէս դու ինձ զրկած կը լինես իմ իրաւունքից.
Հեռացիր հիմա. եւ քո խելացի բարեկամներից
Ընտրիր ում կ'ուզես. թող նըրանք լսեն,
Եւ իմ ու քո մէջ դատաւոր լինեն:
Թէ նըրանք գտնեն որ մենք ուղղակի կամ անուղղակի
Քո հօր մահուան մէջ մաս ենք ունեցել,
Պատրաստ ենք տալ մեր թագը, գահը եւ նոյն իսկ կեանքը,
Եւ ամեն ինչ որ մերն ենք անուանում,

Բոլորը քեզ տալ իբրեւ գոհացում.
Եթէ ոչ, պէտք է մեզ համար պահես համբերութիւնդ.
Եւ մենք էլ քեզ հետ ձեռք ձեռքի տըւած՝
Արդար գոհացում կը տանք քո հոգուդ։

Լա. Թող այդպէս լինի.
Իմ հօրըս մահւան պարագաները, գաղտնի թաղումը,
— Ոչ յաղթանշան, ոչ սուր, ոչ զէնքեր ոսկերքի վրայ,
Ոչ հանդիսաւոր ծէս ու արարմունք, —
Երկնքից երկիր ինձ հրամայում են հաշիւ պահանջել։

Թագ. Պէտք է պահանջես. եւ յանցաւորը ով էլ որ լինի,
Թող մեծ տապարը նըրան տապալէ։
Եկ գընանք, խնդրեմ։

Գնում են։

---

# ՏԵՍԱՐԱՆ ՎԵՑԵՐՈՐԴ

*Մի ուրիշ սենեակ նոյն դղեակի մէջ:*
*Գալիս են Հորացիօ եւ մի ծառայ:*

Հոր. Ի՞նչ մարդիկ են, որ ինձ հետ ուզում են խօսել։

Ծառ. Նաւաստիներ, տէր իմ. ասում են ձեր համար նամակ են բերել։

Հոր. Թող ներս գան։ (Ծառան գնում է։) Աշխարհի ո՞ր կողմից կարող է ինձ ողջոյն գալ, բացի Համլէտից։

Նաւաստիները գալիս են։

Ա. Նաւ. Աստուած օրհնէ ձեզ, տէր իմ։

Հոր. Եւ քեզ։

Ա. Նաւ. Եթէ կամենայ։ Ահա մի նամակ ձեր համար, տէր իմ. այն դեսպանիցն է որ Անգլիա պիտի գնար. եթէ ձեր անունը Հորացիօ է, ինչպէս ինձ ասել են, ուրեմն սա ձեր համար է։

Հոր. (կարդում է։) “Հորացիօ, այս նամակը կարդալուց յետոյ

զրաքերներիս միջոց տուր Թագաւորին ներկայանալու. նամակներ ունին նրան յանձնելու: Հազիւ երկու օր էր որ ծովի վրայ էինք, երբ մի յելուզակային, լաւ պատերազմական պատրաստութեամբ, սկսաւ մեր յետեւից ընկնել: Տեսնելով որ մեր նաւը այնքան արագ չէ, հարկադրուած քաջութիւն ցոյց տուինք, եւ ընդհարման ժամանակ ես անցայ նրանց նաւը. հէնց այդ միջոցին նրանք յանկարծ իրենց նաւը հեռացրին մեր նաւից, եւ ես մեն մենակ գերի ընկայ նրանց ձեռքը: Նրանք ինձ հետ վարուեցան ինչպէս գթասիրտ աւազակներ. բայց գիտէին թէ ինչ են անում. ես էլ հիմա պէտք է փոխարինութիւն անեմ: Ուղարկած նամակս հասցրու Թագաւորին, իսկ ինքդ այնպիսի արագութեամբ, հասիր ինձ մօտ, ինչպէս եթէ մահից փախչէիր: Բառեր ունիմ ականջիդ ասելու, որ լեզուդ կապ կ'ընկնի. բայց եւ նրանք շատ թեթեւ կը լինեն նիւթի ծանրութեան հետ բաղդատած: Այս բարեսիրտ մարդիկը քեզ կը բերեն ինձ մօտ: Ռոզենկրանց եւ Գիլդենշտերն շարունակում են իրենց ճամբան դէպի Անգլիա. նրանց մասին էլ շատ բան ունիմ քեզ պատմելու: Մնաս բարով:

Մնամ, ինչպէս գիտես, միշտ քո անձնուէր
Համլէտ:„

*Լաւ, եկէք ինձ հետ, որ տեղ հասցընեմ այս նամակները,*
*Եւ շուտ յանձնելով՝ ինձ առաջնորդէք այն պարոնի մօտ,*
*Որ ձեզ ուղարկեց:*

*Գնում են:*

## ՏԵՍԱՐԱՆ ՅՈԹՆԵՐՈՐԴ

*Մի ուրիշ սենեակ դղեակում:*
*Գալիս են Թագաւորը եւ Լաէրտ:*

*Թագ.* Պէտք է որ խիղճըդ այժըմ հաստատէ անպարտութիւնըս,
Եւ քո սրտիդ մէջ տեղ տաս ինձ՝ իբրեւ քո բարեկամիդ,
Քանի որ ահա ուշիմ ականջով լսեցիր,
Թէ նա որ սպանեց քո ազնիւ հօրը, իմ կեանքն էր ուզում։
*Լա.* Այո, պարզ է դա. բայց ասացէք ինձ,
Ինչու միջոցներ ձեռք չառիք նորա այդ գործերի դէմ,
Այդ եղեռնական, մահապարտական արարքների դէմ,
Այն ինչ ձեր անձի ապահովութիւնը, խոհեմութիւնը
Եւ ամեն այլ բան պէտք է դրդէին այդպէս վարուելու։
*Թագ.* Երկու մասնաւոր պատճառի համար,
Որոնք կարող են տկար թըւալ քեզ,
Սակայն ինձ համար սաստիկ զօրեղ են.
Թագուհին, մայրը, ապրում է միայն նորա աչքերով.
Իսկ ես, լինի դա առաքինութիւնս, լինի դա մեղքըս,
Իմ կեանքս ու հոգիս այնպէս անբաժան կապուած են նրան,
Որ ինչպէս աստղը իր ոլորտից դուրս չէ կարող շարժուիլ,
Ես էլ չեմ կարող նըրանից հեռու։
Երկրորդ պատճառը, թէ ինչու համար
Անկարելի էր հրապարակային հաշիւ պահանջել,
Դա այն մեծ սէրն է որ ամբոխն ունի Համլէտի հանդէպ,
Եւ, թաթախելով նորա սխալներն իր գորովի մէջ,
Այն աղբիւրի պէս, որ փայտը քարի փոխակերպում է,
Փոխում է նորա թերութիւնները առաքինութեան,
Եւ իմ նետերը, շա՜տ թեթեւ փայտից շինուած լինելով՝
Այնպիսի ուժեղ մի հողմի ընդդէմ սուրալու համար,
Դէպի աղեղս յետ կը դառնային,
Ոչ դէպի այնտեղ, ուր ես ուղղէի։
*Լա.* Այսպէս ուրեմըն, հայրըս սպանուած,

Քոյրըս մատնուած յուսահատութեան,
Որու արժէքը — եթէ հընար կայ անցածը գովել —
Կանգնած էր գարի գագաթնակէտին՝ իբրեւ ախոյեան,
Ի զուր կը փնտռէր կատարելութեան իր զուգակիցը.
Բայց կը գայ վրէժը։

Թագ. Լաւ, դըրա համար մի՛ կորեր քունըդ.
Մի կարծեր թէ ես այնքան անզգայ ու բութ նիւթից եմ շինուած,
Որ թոյլ տամ վտանգն մօրուքըս քաշէ,
Եւ այդ ինձ համար ժամանց համարեմ։ Շուտով կը լսես։
Գիտես որ հօրըդ սիրում էի ես, սիրում եմ եւ ինձ,
Եւ դա, յոյս ունիմ, քեզ կը թելադրէ երեւակայել...

Գալիս է մի Սուրհանդակ։

Ի՞նչ կայ։ Ի՞նչ լուր կայ։

Սուր. Նամակներ, տէր իմ, իշխան Համլէտից.
Այս՝ Ձեր Մեծութեան, այս էլ՝ Թագուհւոյն։

Թագ. Ինչպէ՞ս, Համլէտից, եւ ո՞վ է բերել։

Սուր. Նաւաստիներ, տէր իմ, այդպէս են ասում. ինքըս չեմ տեսել։
Կլաւդիոն տուաւ. նա է ստացել բերողի ձեռքից։

Թագ. Լաէրտ, կաց եւ լսես։ — (Սուրհանդակին) Հեռացիր։

Սուրհանդակը գնում է։

Թագ. (կարդում է։) "Վեհափառ եւ հզօր տէր, թող ձեզ յայտնի լինի որ ինձ բոլորովին մերկ ցամաք են հանել ձեր թագաւորութեան մէջ։ Վաղը հրաման կը խնդրեմ ձեր արքայական տեսութեանը արժանանալու, եւ այդ առիթով ձեր ներումը հայցելուց յետոյ՝ կը պատմեմ ձեզ իմ այս յանկարծակի եւ տարօրինակ դարձիս պատճառը։
Համլէտ։"

Ի՞նչ միտք ունի այս. միւսնե՞րն էլ արդեօք վերադարձել են.
Թէ մի խա՞ղ է այս, եւ ուրիշ ոչինչ։

Լա. Իր ձեռագի՞րն է։

Թագ. Համլէտի գիրն է. ի՞նչ ասել է, "Մերկ"

Ահա այստեղ էլ, յետ — գրութեան մէջ, ասում է “Մենակ„,
Կարող ես դու ինձ մի բան հասկացնել:

Լա. Խելքըս չէ հասնում.
Բայց թողէք որ գայ. դա հիւանդ սրտիս սպեղանի է,
Երբ մտածում եմ թէ կը գայ մի օր,
Երբ որ կարող եմ ճակատ առ ճակատ երեսին զարկել,
“Քո արածդ է այս„:

Թագ. Եթէ այդպէս է, Լաէրտ... բայց ինչպէս կարող է լինել...
Բայց ուրիշ ինչպէս...: Լաէրտ, ուզո՞ւմ ես խորհուրդիս լսել:

Լա. Կը լսեմ, տէր իմ; թէ խաղաղութեան չը հարկադրէք ինձ:

Թագ. Քո խաղաղութեան: Եթէ նա այժըմ վերադարձել է,
Եւ ձեռք է քաշել ճամբորդութիւնից,
Եւ մտադիր չէ նորէն ձեռնարկել,
Ես պէտք է նըրան մի գործի դընեմ,
Որ նոր մտքիս մէջ հասունացել է,
Որից փըրկւելու ոչ մի ճար չունի.
Եւ մահւան մասին ոչ մի պարսաւի շշուկ չի լսւի,
Այլ իր մայրն անգամ անպարտ կ՚արձակէ սարքըւած դաւը
Եւ կը հաւատայ որ լոկ դիպւած էր:

Լա. Տէր իմ, պատրաստ եմ ձեր խօսքին անսալ,
Մանաւանդ եթէ այնպէս կարգադրէք,
Որ հէնց իմ ձեռքով գործը կատարւի:

Թագ. Լաւ էլ յարմար է. այն օրից ի վեր, որ դու մեկնել ես՝
Շատ անգամ խօսքը քո վըրայ է ընկել Համլէտի առաջ.
Եւ այն, մի յատուկ շընորհքիդ համար,
Որի մէջ, ասում են, գերազանցում ես.
Բոլոր ձիրքերիդ համագումարը
Այնպէս չէր շարժում նըրա նախանձը, ինչպէս այդ մէկը,
Ինչ որ իմ աչքիս վերջին տեղն ունի:

Լա. Ի՞նչ շընորհք է այդ:

Թագ. Մի պարզ ժապաւէն երիտասարդի գլխարկի վըրայ,
Բայց եւ հարկաւոր. քանի որ թեթեւ, անհոգ զգեստը
Նոյնչափ վայել է երիտասարդին,

Որչափ որ ծերերն իր սամոյրները եւ մուշտակները,
Թէ՛ առողջութիւն եւ թէ՛ պատկառանք պահելու համար։
Երկու ամիս կայ որ Նորմանդիացի մի ազնուական
Այստեղ էր եկել. ինքս տեսել եմ Ֆրանսիացիներին,
Եւ պատերազմել նոյն իսկ նրանց դէմ.
Իսկապէս նրանք լաւ ձիաւոր են.
Բայց այս հերոսը կախարդ էր կարծես.
Ասես ուղղակի թամբից էր բուսել,
Եւ ձիուն այնպէս հրաշալի բաներ անել էր տալիս,
Որ մարդ կարծում էր թէ նա այն ազնիւ անասունի հետ
Մէ՛կ մարմին լինէր, կէս մարդ ու կէս ձի։
Այնքան անց էր նա մտքիս խոյանքից,
Որ ես՝ շարժումներ եւ սիրուն դիրքեր յղանալու մէջ՝
Ցետ էի մնում նրա արածից։

Լա. Նորմանդիացի՞ էր։

Թագ. Այո, Նորման էր։

Լա. Վկայ է կեանքս, Լամոնդն է եղել։

Թագ. Այո, նա ինքը։

Լա. Լաւ եմ ճանաչում. ճիշդ որ իր ազգի զարդ ու գոհարն է։

Թագ. Նա էլ քեզ յիշեց, եւ այնպիսի մեծ գովեստներ տուաւ
Քո ճարտարութեանն ու հմտութեանը զինամարտի մէջ,
Մանաւանդ սուսերամարտի մէջ,
Որ միշտ ասում էր, ինչ սքանչելի պատկեր կը լինէր,
Թէ մարդ կարենար քո զոյգը գտնել.
Եւ նա երդւում էր թէ իր ազգակից զինավարժները
Ոչ շարժում ու թափ, ոչ դիմադրութիւն, ոչ աչք կ՚ունենան
Եթէ դու ուզես նրանց դէմ դուրս գալ։
Նրա այս խօսքը Համլէտի նախանձն այնպէս գրգռեց,
Որ այնուհետեւ նա միշտ աղաչում եւ պաղատում էր,
Որ անմիջապէս քեզ այստեղ բերենք, որ հետդ չափուի։
Այժմ, սրանից...

Լա. Ի՞նչ է հետեւում դրանից, տէր իմ։

Թագ. Լաէրտ, քո հայրդ սիրելի՞ էր քեզ.

Թէ լոկ տրտմութեան նկարի պէս ես,
Դէմք առանց սրտի։
Լա. Ինչո՞ւ էք հարցնում։
Թագ. Ոչ թէ կարծում եմ հօրդ չէիր սիրել.
Այլ, որ լաւ գիտեմ թէ ժամանակից ծնւում է սէրը,
Եւ ես տեսնում եմ թէ ժամանակը, շատ փորձերի մէջ,
Մեղմում է նրա կրակն ու կայծը. 121
Այո, եւ սիրոյ բուն իսկ բոցի մէջ ինչ որ պատրոյգ կայ,
Որ նրան մասամբ նւաղեցնում է,
Եւ ոչինչ չը կայ որ լաւութեան մէջ անփոփոխ մնայ.
Այլ լաւութիւնը, երբ որ հասնում է շատ առատութեան՝
Մեռնում է շնորհիւ հէնց իր շատութեան։ 126
Այն բանը, ինչ որ կ'ուզէինք անել,
Պէտք էր անէինք երբ որ կ'ուզէինք.
Քանզի մշտապէս այդ կ'ուզէինքը փոփոխւող բան է,
Եւ ունի այնքան տկարացումներ եւ յապաղումներ, 130
Որքան ձեռքեր կան, որքան լեզուներ եւ որքան դէպքեր։
Յետոյ, "պէտք էրը" նման է վատնող մի հառաչանքի,
Որ հովացնում է, բայց եւ վնասում։
Այժմ գանք վէրքի կսկծուն տեղին։ Համլէտը գալիս է.
Ի՞նչ պիտի անես, որ ցոյց տաս թէ դու հօրդ զաւակն ես,
Գործով ոչ խօսքով։ 136
Լա. Վիզը կը կտրեմ եկեղեցու մէջ։
Թագ. Այո, իրաւ է,
Պէտք չէ ոչ մի վայր ապաստան լինէր մարդասպանութեան,
Եւ պէտք է վրէժը սահման չունենար։ Բայց, բարի Լաէրտ,
Եթէ ուզում ես անել այդ բանը, քաշւիր սենեակդ. 140
Համլէտը, դարձին, կը տեղեկանայ որ դու եկել ես.
Մենք մարդ կ'ուղարկենք, որ քո շնորհքը գովեն նրա մօտ,
Եւ այն Ֆրանսիացու տւած համբաւին երկպատիկ փայլ տան,
Եւ այնպէս անեն, որ ձեզ ի վերջոյ իրար դէմ հանեն,
Եւ գրաւ բռնեն ձեր գլխի վրայ։ 145
Նա բոլորովին անփոյթ լինելով, բնութեամբ ազնիւ,

Ու բարձր ամեն խարդաւանանքից,
Չի զննի երբեք խաղի սրերը,
Այնպէս որ դիւրաւ, կամ նոյն իսկ մի քիչ ճարպիկ շարժումով
Մի սուր կը ջոկես, որ բութ չը լինի,
Ու մարզանքի մէջ՝ հօրդ վրէժը այդպէս կը հանես։

Լա. Այդպէս էլ կ'անեմ, եւ հէնց այդ մտքով՝
Իմ սրրիս ծայրին մի իւղ կը քսեմ։
Մի շառլատանից մի իւղ եմ գնել, այնպէս մահացու,
Որ բաւական է դանակի ծայրը մէջը թաթախել,
Ու մի քիչ ծակել որ արիւն դուրս գայ, ոչ մի սպեղանի,
— Բաղադրած բոլոր լուսնեակի լոյսով քաղուած խոտերից,
Որոնք բուժելու զօրութիւն ունին, — չի փրկի մահից,
Եթէ մի մարդու մորթը նրանով մի քիչ սկրդես։
Այդ թոյնից մի քիչ կը քսեմ սրրիս,
Որ, եթէ նրան մի թեթեւ վէրք տամ, իր մահը լինի։

Թագ. Լաւ, թող այդ մասին յետոյ մտածենք, եւ մի լաւ կշռենք,
Թէ ժամանակի եւ միջոցների ինչ պատեհութիւն
Կը ծառայէ մեզ մեր ծրագրի մէջ։ Եթէ դա վրիպի,
Ու մեր սարքածը վատ գործադրումից երեւան ելնէ՝
Աւելի լաւ էր որ չը փորձէինք։ Այդ պատճառով էլ,
Մեր նախագիծը պէտք է մի թիկունք, երկրորդ ունենայ,
Որ եթէ մէկը բովի մէջ պայթի, միւսը դիմանայ։
Կաց, թող մտածեմ...
Մենք ձեր երկուսի ճարպիկութեան վրայ գրաւ կը բռնենք...
Գտայ...
Երբ դուք շարժումից տաքացած լինէք, եւ լաւ ծարաւէք,
— Ու պէտք է շատ թունդ յարձակում գործէք որ այդպէս լինի —
Ու Համլէտն ուզէ ծարաւն անց կացնել,
Ես նրա համար այնպիսի մի բան պատրաստել կը տամ,
Որ իր շրթունքին դիպչընէ թէ չէ,
Եթէ դիպուածով քո թունաւոր սրրից ազատուած լինի,
Դա կ'ապահովէ մեր նպատակը։ Բայց կաց. ինչ ձայն է։

Գալիս է թագուհին։

Ի՞նչ կայ, Թագուհի՛ս։
Թագ. Մի ցաւ դպչում է միւսի կրունկին, այնչափ որ շատ են։
Քոյրդ խեղդուեց, Լաէրտ . . .
Լա. Խեղդուեց, օ՜հ, ո՞ւր։
Թագ. Մի ուռենի կայ, որ մի գետակի ափին է բուսել,
Եւ ցոլացնում է արծաթ սաղարթը բիւրեղ ջրի մէջ.
Քոյրդ այնտեղ եկաւ, խիստ տարօրինակ պսակներ ձեռքին՝
Հրանունկներից, մարգարտիկներից եւ եղինճներից,
Եւ այն կարմրագոյն երկար ծաղիկներից,
Որոնց անվայել անուն են տալիս լիրբ հովիւները,
Իսկ մեր ամօթխած աղջիկները կոչում են «Մեռած մարդու մատ».
Այնտեղ, երբ որ նա փորձեց բարձրանալ մի կոր ճիւղի վրայ
Իր պսակները կախ տալու համար,
Դաւաճան մի ոստ կոտրուեց յանկարծ,
Եւ նրա կանանչ ծաղկեփունջերը եւ ինքն էլ հետը
Ընկան արտասուող այն գետակի մէջ։
Իր հագուստները փռուելով լայն ջրի երեսին,
Մի քանի նրան ծովահարսի պէս վերեւ բռնեցին,
Իսկ այդ ժամանակ նա հին երգերից բաներ էր երգում,
Որպէս մի էակ վտանգին անգէտ,
Կամ մի արարած, որ այդ տարրի մէջ բնածին լինէր.
Բայց դա չէր կարող շատ երկար տեւել,
Եւ զգեստները ջրից ծանրացած՝ խեղճ տարաբախտին
Քաշեցին ներքեւ իր անուշ երգից դէպի տղմուտ մահ։
Լա. Խեղդուեց ուրեմն։
Թագ. Ա՜հ խեղդուեց, խեղդուեց։
Լա. Շատ ջուր ունեցար, դու խե՜ղճ Օֆելիա.
Պէտք է ուրեմն զսպեմ արցունքըս. բայց մենք այսպէս ենք.
Եւ բնութիւնը, ինչ էլ որ ամօթն ասելու լինի,
Իր սովորոյթից չէ ուզում շեղուիլ։ Երբ սրանք գնան՝
Ոչինչ կանացի չի մնայ իմ մէջ։ Մնաք բարով, տէ՛ր։

Բոցեղէն խօսքեր ունիմ ասելու, որ կը վառուէին,
Եթէ այս յիմար արտասուքներս չը հանգցընէին։

գնում է։

Թագ. Եկ գնանք, Գերտրուդ, հետեւենք սորան.
Որչափ ջանք արի մինչեւ մեղմեցի իր բարկութիւնը,
Այժըմ վախում եմ նորէն բորբոքուի։ Հետեւենք իրեն։

գնում են։

□ □ □

# ԱՐԱՐՈՒԱԾ ՀԻՆԳԵՐՈՐԴ

—

## ՏԵՍԱՐԱՆ ԱՌԱՋԻՆ

*Գերեզմանատուն:*

*Գալիս են երկու գերեզմանափոր, բրիչներով:*

Ա. Գեր. Մի՞թէ էս կնիկը, որ իր կամքովն է էն աշխարհ գնացել, պէտք է քրիստոնէի ծէսով թաղուի։

Բ. Գեր. Հա՛, ասում եմ քեզ. դէ՛հ, շուտ արա, գերեզմանը պատրաստիր. մեռելների վերատեսուչը արդէն վճիռ է կայացրել. պէտք է եկեղեցական թաղում լինի։

Ա. Գեր. Ի՞նչպէս. ասել է ինքնապաշտպանուելիս է խեղդուել։

Բ. Գեր. Երեւի ասել են որ հէնց այդպէս է։

Ա. Գեր. Ոչ, ինքնայարձակուելիս եղած կը լինի. ուրիշ կերպ չի կարելի. բանն էլ հէնց էդ է. եթէ ես իմանալով գնում եմ ինձ ջուրը քցում, դա լինում է մի արարք, եւ ամէն արարք երեք ճիւղ ունի. գործել, անել եւ կատարել. ասել է թէ նա իմանալով է ինքն իրան ջուրը քցել։

Բ. Գեր. Չեղաւ, ինձ լսիր, քաւոր գերեզմանափոր . . .

Ա. Գեր. Խնդրեմ. ահա ջուրն էնտեղ է, լաւ. մէկ մարդ էլ կանգնել է էստեղ. լաւ. թէ էս մարդը գնայ ընկնի էն ջրի մէջ, ասել է, կամայ թէ ակամայ գնացել է. լաւ, հիմա ուշ դարձրու. բայց եթէ ջուրը գայ նրան խեղդի, ասել է նա ինքն իրան չի խեղդել. ուրեմն, ով որ ինքը չի եղել իր մեռնելու պատճառը, նա չի կարճացրել իր կեանքը։

Բ. Գեր. Բայց օրէնքն էդպէս է։ 20

Գ. Գեր. Բա ի՛նչ. էդպէս է որ կայ. վերատեսչի քննութեան օրէնքը հէնց էդպէս է։

Բ. Գեր. Ուզո՞ւմ ես ճշմարիտն ասեմ, եթէ էս կինարմատը ազնուական չը լինէր՝ քրիստոնէի կարգով չէին թաղի նրան։ 24

Ա. Գեր. Ճիշդ ես ասում. բանի վատութիւնն էլ հէնց էդ է, որ էս աշխարհքում մեծ մարդկանց աւելի հեշտ են հրաման տալիս որ իրանք իրանց կախեն կամ ջուրը քցեն, քան թէ խեղճ քրիստոնէին։ Հայդէ՛, բրի՛չ. աշխարհքի ամենից հին արհեստաւորները՝ այգեպաններն են, հոր քանդողները, գերեզման փորողները. նրանք Ադամի արհեստն են բանեցնում։ 30

Բ. Գեր. Ադամը արհեստաւոր էր, ի՞նչ է։

Ա. Գեր. Հապա՞. առաջին մարդն էր որ գետինը փորեց։

Բ. Գեր. Միթէ՞։

Ա. Գեր. Բա՜հ, քրիստոնեայ չես, ի՞նչ է. միթէ Սուրբ Գիրքը չես հասկանում. Սուրբ Գիրքն ասում է՝ Ադամ երկիրը փորեց. ասել է թէ նա էլ մի արհեստ ունէր։ Մէկ ուրիշ բան էլ եմ ուզում քեզանից հարցնեմ. եթէ ճիշդ պատասխան չը տաս՝ խոստովանիր ու . . .

Բ. Գեր. Ասա տեսնենք. 39

Ա. Գեր. Ո՞վ է նա, որ աւելի ամուր բան է շինում քանց որմնադիրը, քանց նաւագործը եւ քանց հիւսնը։

Բ. Գեր. Կախաղան շինողը. նրա շինածը աւելի է դիմանում քանց հազար կախւող։

Ա. Գեր. Հա՛, ես իմ հոգին, խելօք բան ասիր. կախաղանը լաւ է գործում. բայց ինչպէ՞ս է լաւ գործում. լաւ է գործում վատ գործողի համար. հիմա դու վատ ես գործում, երբ որ ասում թէ կախաղանը եկեղեցուց դիմացկան է. ասել է թէ կախաղանը քեզ համար շատ լաւ կը գործի. Հայդէ՛, նորից մտածիր։

Բ. Գեր. Ո՞վ է նա որ աւելի ամուր բան է շինում քանց որմնադիրը, քանց նաւագործը եւ քանց հիւսնը։ 50

Ա. Գեր. Հա, պատասխանը տուր, ու լուծը ետ արա։

Բ. Գեր. Կաց ասեմ։

Ա. Գեր. Դէհ տար։

Բ. Գեր. Խաչը, չեմ կարող տալ։

Գալիս են Համլէտ եւ Հորացիօ։

Ա. Գեր. Լաւ, լաւ. դրանից աւել խելքիդ զոռ մի՛ տալ. ծոյլ էշին ինչքան էլ ծեծես՝ աւելի շուտ չի գնայ. եթէ պատահի որ քեզանից մէկ էլ էդ բանը հարցնեն՝ կ'ասես, գերեզմանափորը. նրա շինած տունը մինչեւ վերջին դատաստանը կը դիմանայ։ Գնա էն Եօգանից մի բաժակ օղի բեր ինձ համար։

Բ. Գերեզմանափորը գնում է։

Ա. Գեր. (փորում է ու երգում։)

*Երբ որ ես դեռ ջահիլ էի, էի,*
*Որչափ սէրը քաղցր բան էր,*
*Բայց տարիքը, տարիքն էկան,*
*Տեսայ քոլոլն էլ փուշ բան էր:*

Համ. Միթէ՞ այս մարդը բնաւ իր արհեստի գիտակցութիւնը չունի, որ գերեզմանափորելիս էլ երգում է։

Հոր. Սովորութիւնը այդ բանը նրա համար հեշտ արհեստ է դարձրել։

Համ. Այո, այդպէս է. քիչ գործող ձեռքն է զգայուն լինում։

Ա. Գեր. (Երգում է։)

*Ծերութիւնը մունջ քայլերով*
*Եկաւ բռնեց ինձ ճանկերով,*
*Նետեց այստեղ, կարծես երբէք*
*Չէի անցել այս աշխարհով:*

Մի գանգ է դուրս նետում։

Համ. Այս գանգը մի ժամանակ լեզու ունէր. կարող էր եւ երգել. տես ինչպէս այս անպիտանը դէն է շպրտում, կարծես առաջին մարդասպան Կայէնի ծնօտը լինէր։ Գուցէ սա մի քաղաքագէտի գլուխն է եղել, որ այժմ այս աւանակը խաղալիք է շինել. մի մարդու գանգը, որ Աստծուն էլ կը խաբէր. չէ՞ կարող լինել։

Հոր. Ինչու չէ՞, տէր իմ։

*Համ.* Կամ մի պալատականի գանգը, որ կարող էր ասել, "Բարի լոյս, յարգելի տէր իմ. ինչպէս էք, յարգելի տէր իմ": Կարելի է իշխան Այսինչն է եղել, որ իշխան Այնինչի ձին գովում էր, այն մտքով որ նւէր ստանայ. չէ՞ կարող լինել:

*Հոր.* - Կարող է, տէր իմ: 83

*Համ.* Այո, ճիշդ այդպէս, եւ հիմա պատկանում է Տիկին Որդնակերին. կզակը թափած, եւ մի ժամկոչ իր բահն է թրխկացնում նրա գագաթին. ահա քեզ մի գեղեցիկ յեղափոխութիւն, միայն թէ պէտք է բաւական ուշիմ լինել տեսնելու համար: Եւ միթէ՞ այս ոսկորները այնքան աժան են գլուխ եկել, որ հիմա գնտակախաղի ծառայեն. ոսկորներս ցաւում են, երբ միտք եմ անում: 90

*Ա. Գեր.* *Մի բրիչ, մի բահ, մի բրիչ, մի բահ*
*Մի կտոր սաւան պատանքի համար,*
*Հողումն էլ մի փոս, հողումն էլ մի փոս,*
*Այստեղ եկողին հէնց այդ է յարմար:* 94

Դուրս է ձգում մի ուրիշ գանգ:

*Համ.* Ահա մի ուրիշը. միթէ՞ սա չէ կարող մի փաստաբանի գանգը լինել. ո՞ւր են հիմա նրա "ըստ էութեանները", բծախնդրութիւնները, նրա "գործերը", ճարպիկութիւնները. ինչո՞ւ է հիմա հանդուրժում որ այս կոպիտ թշուառականը իր կեղտոտ բրիչով զարկէ նրա գագաթին, եւ դատ չէ բացում "վնասի զանահարութեան": Հը՞մ. գուցէ այս մարդը իր օրով մի մեծ կալուածատէր է եղել, իր գրաւաթղթերով, վարձաթղթերով, պարտամուրհակներով, փոխանցումներով, երկու երաշխաւորներով եւ ստանալիքներով: Այս է արդեօք իր փոխանցումների փոխանցումը եւ ստանալիքների ստանալիքը, որ նրա փոխանցուած գանգը այսպէս հողով լցնեն. արդեօք իր երաշխաւորները, կրկին երաշխաւորներն էլ հետը միասին, չը կարողացան նրա գնած այնքան կալուածներից աւելի բան երաշխաւորել նրա համար, բացի մի կտոր գետնից, հազիւ երկու վարձաթղթի երկայնքի ու լայնքի չափ. Նրա հէնց

կալւածաթղթերը հազիւ թէ տեղաւորուին այս սնտուկի մէջ, եւ կալւածատէրն էլ սրանից աւելի տեղ չը պիտի ունենայ. չէ՞:

Հոր. Ոչ, տէր իմ, ոչ մի թիզ աւելի:

Համ. Չէ՞ որ մագաղաթը ոչխարի կաշուց են շինում:

Հոր. Այո, տէր իմ, հորթի կաշուց էլ:

Համ. Ոչխար ու հորթ են նրանք, որ մագաղաթների մէջ ապահովութիւն են փնտռում: Ուզում եմ այս մարդու հետ խօսել: — Սա ո՞ւմ գերեզմանն է, ա՛յ մարդ:

Ա. Գեր. Իմն, պարոն:

Երգում է:

"Հողումն էլ մի փոս, հողումն էլ մի փոս
Այստեղ եկողին հէնց այդ է յարմար:"

Համ. Ճիշդ է, դա քոնդ է, քանի որ դու ես փորել. բայց երբ ստում ես թէ դա քոնդ է, դուրս է գալիս որ դա ստում է. գերեզմանը մեռելի համար է, ոչ թէ ողջի. ուրեմն ստածդ սուտ է:

Ա. Գեր. Այնքան թեթեւ սուտ է, որ ինձնից թռչում է դէպի ձեզ:

Համ. Ի՞նչ մարդու համար ես փորում:

Ա. Գեր. Մարդու համար չի, պարոն:

Համ. Ուրեմն ի՞նչ կնոջ համար:

Ա. Գեր. Կնոջ համար էլ չի, պարոն:

Համ. Ո՞վ է մէջը թաղուելու:

Ա. Գեր. Մի անձ, որ կնիկ էր, պարոն. բայց, Աստուած հոգին լուսաւորի՛, հիմա մի մեռել է:

Համ. Ինչ բծախնդիրն է այս թշուառականը. պէտք է կողմնացոյցով խօսենք հետը, թէ ոչ՝ երկայրի խօսքերով մեր հոգին կը հանէ: Աստուած վկայ, Հորացիօ, երկու երեք տարուց ի վեր նկատում եմ որ մեր դարը այնպէս սրամիտ է դարձել, որ գիւղացու ոտնամատը դիպչում է պալատականի կրունկին, եւ նրան ցաւացնում է: — Որքա՞ն ժամանակ է որ դու գերեզմանափոր ես:

Ա. Գեր. Տարւայ էն օրն եմ սկսել, որ մեր վերջին թագաւոր Համլէթը Փորտինբրասին յաղթեց:

Համ. Որքա՞ն է անցել այն օրից։

Ա. Գեր. Ի՞նչ էլ չես իմանում. ամեն յիմար գիտէ. հէնց էն օրն էր որ իշխան Համլէտը աշխարք եկաւ, էն որ գժւել է, եւ Անգլիա ուղարկեցին։

Համ. Հա, իրա՛ւ. ինչո՞ւ ուղարկեցին նրան Անգլիա։

Ա. Գեր. Ինչո՞ւ. հէնց նրա համար որ գիժ էր, որ էնտեղ խելքի գայ. խելքի էլ որ չը գայ՝ էնտեղի համար էնքան էլ հոգ չէ։

Համ. Ի՞նչպէս թէ հոգ չէ։

Ա. Գեր. Էնտեղ ոչ ոք չի նկատի. էնտեղ ամենքն էլ նրա պէս գժեր են։

Համ. Ի՞նչպէս եղաւ որ նա գժւեց։

Ա. Գեր. Շատ զարմանալի կերպով, ինչպէս ասում են։

Համ. Ի՞նչպէս թէ զարմանալի կերպով։

Ա. Գեր. Վա՛հ, հէնց էն կերպով որ խելքը թռաւ։

Համ. Բայց ի՞նչի վրայ։

Ա. Գեր. Ի՞նչի վրայ. հէնց էստեղ, Դանեմարքայի հողի վրայ։ Էն օրից որ ես էստեղ ժամկոչ եմ, պատիկ ու մեծ ժամանակս միասին հաշւած՝ երեսուն տարի կը լինի։

Համ. Ո՞րքան ժամանակ կարող է մարդ հողի տակ մնալ առանց փտելու։

Ա. Գեր. Եթէ մեռնելուց առաջ արդէն փտած չը լինի, — ինչպէս էս օրւան օրս էնքան ախտաւոր դիակներ կան որ հողը չը դրած՝ ցրիւ են գալիս, — ութը ինը տարի կը դիմանայ. կաշեգործը ինը տարի կը դիմանայ։

Համ. Ի՞նչու հէնց կաշեգործը եւ ոչ ուրիշը։

Ա. Գեր. Որովհետեւ, պարոն, նրա կաշին իր արհեստից էնպէս պնդացել է, որ երկար ժամանակ ջուրը մէջը չի մտնի. էդ ջուր ասածը ձեր էդ տէրամեռ դիակի մեծ թշնամին է։ Ահա քեզ մի գանգ. էս գանգը ամբողջ քսանըերեք տարի հողի տակն է մնացել։

Համ. Ո՞ւմն է որ . . .

Ա. Գեր. Մէկ շուն շան որդի գժի. ո՞ւմ գանգը լինի լաւ է։

Համ. Ի՞նչ գիտենամ։

Ա. Գեր. Կրակ թափուի գլխին. ինչ գիժ սրիկան էր. մէկ անգամ մէկ ամբողջ շիշ Հռենոսի գինի գլխիս թափեց։ Էս գանգը որ տեսնում ես, պարոն, Եօրիկի գանգն է, որ թագաւորի խեղկատակն էր։

Համ. Ա՞յս։

Ա. Գեր. Հէնց էդ։

Համ. Տուր տեսնեմ։ (գանգն առնում է ձեռքը։) Աւա՜ղ, խե՜ղճ Եօրիկ։ — Հորացիօ, ես նրան ճանաչում էի. ինչ հրաշալի կատակաբան էր, ինչ սքանչելի սրամտութիւն. հազար անգամ ինձ դրել է ուսերին եւ ման ածել. իսկ հիմա ինչպէս զզւեցնում է երեւակայութիւնս. սիրտս յետ է գալիս։ Այստեղ էին կախւած այն շրթունքները, որ չը գիտեմ քա՜նի քա՜նի անգամ համբուրել եմ։ Ո՞ւր են հիմա քո ծաղրածութիւնները, թռչկոտումները, այն երգերը, այն ուրախութեան պոռթկումները, որոնք բոլոր սեղանակիցներիդ ծիծաղից կոտորում էին։ Դրանցից մէկն էլ չը կայ հիմա որ քո այս ծամածռութիւնդ ծաղրէր, այդ թափւած կզակդ։ Դէհ, հիմա գնա Տիկին Այսինչի սենեակը, եւ նրան ասա, որ եթէ մէկ մատնաչափ շպար էլ քսէ երեսին, դարձեալ վերջը այս շնորհքին է հասնելու, եւ ծիծաղացրու նրան։ Խնդրեմ, Հորացիօ, դու ինձ այն ասա։

Հոր. Ի՞նչ, տէր իմ։

Համ. Կարծո՞ւմ ես թէ Ալէքսանդրն էլ հողի տակ սրա նման էր։

Հոր. Ի հարկէ։

Համ. Եւ այս հոտն ունէր. վա՜խ։

գանգը ձգում է գետին։

Հոր. Միշտ այդ հոտը, տէր իմ։

Համ. Ի՜նչ ստոր գործածութիւնների կարող ենք վերադառնալ, Հորացիօ։ Միթէ չէ՞ կարող երեւակայութիւնը պատկերացնել, թէ Ալէքսանդրի ազնիւ փոշին ինչ շրջանով է անցնում մինչեւ որ ծառայէ մի տակառի ծակը խցելու։

Հոր. Ամեն բան այդպէս պրպտելը մեզ շատ հեռու կը տանէր,

Համ. Ամենեւին. շատ էլ մեծ երեւակայութիւն պէտք չէ դրա համար. նոյն իսկ շատ էլ հաւանական բան է, օրինակ այսպէս. Աղէքսանդր մեռաւ, Աղէքսանդր թաղուեց, Աղէքսանդր փոշի դարձաւ. փոշին հող է, հողից կաւ են շինում. ինչու այդ կաւով, որ Աղէքսանդրի մարմնից է շինուած, չէ կարելի գարեջրի տակառը խցել։

Ահեղ կեսարը մեռաւ, հող դարձաւ,
Մի պատի ծերպի նա ծեփող դարձաւ,
Այն հողը որից սարսում էր աշխարհ,
Ձմեռւայ քուքից ծակ խցող դարձաւ:

Բայց սուս, սուս, մէկ կողմ քաշուինք. Թագաւորն է։

Գալիս են քահանաներ եւ այլն՝ թափորով. յետոյ բերում են Օֆելիայի մարմինը, յետեւից գալիս են Լաէրտ եւ ուրիշ սգաւորներ, յետոյ թագաւորը, թագուհին եւ հետեւորդներ։

Ի՞նչ է, թագուհին, պալատականներ. որի՞ն են սրանք
Այսպիսի կցկտուր արարողութեամբ յուղարկաւորում.
Սա ցոյց է տալիս թէ մեռնողն ինքն է յուսահատ ձեռքով
Իր կեանքը խզել. երեւի բարձր դասակարգից է.
Եկ այստեղ կուչ գանք եւ մտիկ անենք։

Թաքնւում է Հորացիոյի հետ։

Լա. Ուրիշ ի՞նչ ծէս կայ։
Համ. Նայիր, Լաէրտն է. ինչ ազնիւ մարդ է։
Լա. Ուրիշ ի՞նչ ծէս կայ։
Ա. Քահ. Արարողութիւնն այնչափ ճոխացրինք որչափ հնար կար.
Ձեր քըրոջ մահը կասկածելի էր,
Եւ եթէ շնորհիւ բարձր հրամանի կարգը չը փոխուէր՝
Նա պէտք է մնար անսուրբ հողի մէջ
Մինչեւ Յարութեան փողի հնչումը.
Բարեպաշտական աղօթքների տեղ՝
Խեցի, քար, կաւէթ պէտք է նետուէին նրա մարմնի վրայ.
Այն ինչ կուսական պսակ ու ծաղիկ տրուել են նրան,

Զանգով ու ծէսով իր տունն ենք բերել։
Լա. Ուրեմն էլ ոչինչ չը կա՞յ անելու։
Ա. Քահ. Էլ ոչինչ չը կայ. մեռելոց կարգը եղծուած կը լինէր՝
Թէ հոգեհանգիստ եւ կամ այնպիսի տաղեր երգէինք, 235
Որ խաղաղ մահով հանգուցեալներին միայն պահուած են։
Լա. Դրէք հողի մէջ. եւ նորա չքնաղ, անարատ մարմնից
Թող մանուշակներ ծաղկին։ Ասեմ քեզ, կոպիտ քահանայ,
Քոյրըս երկնքում պաշտօնակատար հրեշտակ կը լինի,
Երբ դու ներքեւում գոռոց կը հանես։
Համ. Սիրուն Օֆէլիան։
Թագ. Անուշներ անուշին. ո՜հ, գնաս բարով. 241

Ծաղիկներ է սփռում դագաղի վրայ։

Ես քեզ էի դրել որ դու Համլէտի կինը դառնայիր,
Եւ յոյս ունէի առագաստիդ վրայ ծաղիկներ սփռել,
Ո՜վ անուշ աղջիկ, ոչ թէ շիրիմիդ։
Լա. Եռապատիկ վայ 244
Երեք տասն անգամ թող գայ անիծեալ այն գլխի վրայ,
Որի չար գործը զրկեց քեզ այսպէս հանճարեղ խելքից։
Դեռ հող մի՛ թափէք, թողէք որ նորան մէկ էլ գիրկս առնեմ։

Ցատկում է գերեզմանի մէջ։

Հիմա կուտեցէք ձեր հողը ողջի եւ մեռելի վրայ,
Մինչեւ այս տափից մի սար գոյացնէք, աւելի բարձր 249
Քան հին Պելիոնը, քան լուրթ Ողիմպի երկնահասակ ծայրը։
Համ. Ո՞վ է դա արդեօք, որի ցաւն այդպէս մեծաբարբառ է,
Որի մորմոքը շրջուն աստղերին ոգեկոչում է,
Եւ կանգնեցընում ապշած, սոսկահար լսողների պէս։
Ահաւասիկ ես, Համլէտ Դանիացին։ 254

Ցատկում է գերեզմանի մէջ։

Լա. (Յարձակւելով Համլէտի վրայ։) Սատանան տանէ նզովեալ հոգիդ։
Համ. Լաւ չես աղօթում. ձեռքըդ յետ քաշիր իմ կոկորդիցըս.
Թէեւ ես մաղձոտ, բորբոքուող մարդ չեմ

Բայց վտանգաւոր մի բան կայ իմ մէջ,
Որից թող խոյս տայ խոհեմութիւնդ։ Ետ քաշիր ձեռքըդ։
Թագ. Բաժանեցէք դըրանց։
Թագհ. Ախ, Համլէ՜տ, Համլէ՜տ։
Ամենքը Պարոններ...
Հոր. Հանդարտ, սիրելի տէրըս։

Ծառաները նրանց բաժանում են և նրանք դուրս են գալիս գերեզմանից։

Համ. Այս նիւթի վըրայ պատրաստ եմ այնքան մըրցել սորա հետ,
Մինչեւ թարթիչներս այլ եւս չը շարժուին։
Թագհ. Ի՞նչ նիւթ, զաւակըս։
Համ. Ես սիրում էի Օֆէլիային.
Քառասուն հազար եղբայր չեն կարող,
Իրենց գորովի բոլոր քանակով, իմ սէրըս կազմել։
Թագ. Նա խենթ է, Լաէրտ։
Թագհ. Ի սէր Աստուծոյ, խընայիր նըրան։
Համ. Դըժոխք, ցոյց տուր ինձ թէ դու ինչ կ'անես.
Կը լա՞ս, կը կռուի՞ս, քաղցա՞ծ կը մընաս, քեզ կը ծըւատե՞ս,
Լեղի կը խմե՞ս, կոկորդիլ կ'ուտե՞ս. այդ ես էլ կ'անեմ.
Եկել ես այստեղ որ ցաւից գոռա՞ս,
Զարմացընե՞ս ինձ՝ ցատկելով նըրա գերեզմանի մէջ.
Ուզում ես ողջ ողջ թաղուի՞լ նըրա հետ. այդ ես էլ կ'անեմ։
Եթէ լեռներից ուզես բարբառել՝
Թող մեր գլխի վըրայ միլիոն արտավար հող բերեն դիզեն,
Մինչեւ որ մեր տափն իր գագաթն այրէ հըրավառ կամարից,
Եւ Օսսան մնայ մի գորտնուկ թըւայ։
Թէ մեծ մեծ բըղես՝ ես էլ կարող եմ քեզ պէս յոխորտալ։
Թագհ. Սըրանք խենթութեան խօսքեր են միայն.
Այսպէս մի րոպէ ցաւի տագնապը կ'ազդէ նըրա վըրայ.
Յետոյ, հեզ ու մունջ՝ մայր աղաւնու պէս՝
Երբ նըրա ջուխտակ ոսկի ձագերը նոր են դուրս եկել,
Նա լուռ կը նստի գլուխը կախ արած։

Համ. Լսիր ինձ, պարոն. ինչու ես ինձ հետ այդ ձեւով վարւում.
Քեզ միշտ սիրել եմ. բայց ոչինչ, հոգ չէ.
Թող Հերկուլէսն անէ ինչ որ կարող է.
Կատուն կը մլաւէ, շունն էլ կը հաչէ։

Դուրս է գնում։

Թագ. Աղաչում եմ քեզ, սիրելի Հորացիօ, գընա ետեւից։

Հորացիօ գնում է։

(Լաէրտին) Համբերութիւնըդ պէտք է զօրացնես
Անցեալ գիշերուայ մեր խօսածներով.
Այժըմ պէտք է մենք մըղում տանք գործին։ —
Սիրելի Գերտրուդ, մի հսկող կարգիր զաւակիդ վըրայ։ —
Այս գերեզմանը կենդանի դամբան պէտք է ունենայ.
Շուտով կարող ենք հանգիստ օր տեսնել.
Առ այժըմ պէտք է համբերող լինենք։

Գնում են։

---

## ՏԵՍԱՐԱՆ ԵՐԿՐՈՐԴ

*Մի դահլիճ դղեակում:*
*Գալիս են Համլետ եւ Հորացիօ:*

Համ. Այս մասին այսքան. հիմա գանք միւսին.
Հարկաւ յիշում ես պարագաները։
Հոր. Յիշո՛ւմ, ազնիւ տէր։
Համ. Լսիր, սրտիս մէջ կարծես մի տեսակ պայքար էր մղւում,
Ու թոյլ չէր տալիս որ քուն մտնէի։
Ես ինձ աւելի վատ էի զգում,
Քան տաժանակիր ապստամբները շղթաների տակ։
Աճապարանքով... եւ օրհնեալ լինի աճապարանքը,
Քանի որ յաճախ, թող գիտենանք այդ,

Անխոհեմութիւնն աւելի լաւ է մեր բանին գալիս,
Մինչդեռ մեր բոլոր խոր հաշիւները դերեւ են ելնում.
Եւ թող այդ բանից սովորենք, թէ կայ մի աստուածութիւն,
Որ ձեւ է տալիս մեր ձեռնարկներին,
Ինչպէս էլ ինքներս նախատաշ անենք։

Հոր. Տարակոյս չը կայ։

Համ. Խցիկից ելայ՝ ծովի վերարկուս շուրջըս փաթաթած՝
Եւ խաւարի մէջ խարխափում էի որ նըրանց գտնեմ.
Հասայ փափաքիս, մատներով գըտայ նըրանց ծըրարը,
Եւ դարձայ նորէն եկայ իմ խուցը.
Եւ անձիս վախից՝ կարգ ու կանոնը անտես անելով՝
Համարձակւեցայ բաց անել նըրանց մեծ յանձնագիրը.
Եւ ինչ եմ գտնում մէջը, Հորացիօ.
— Օ՜հ, արքայական սըրիկայութիւն, — բացորոշ հրաման,
Համեմւած մի շարք երկար ու բարակ նկատումներով,
Դանեմարքայի եւ Անգլիայի ողջութեան մասին,
Եւ, օ՜հ, այնպիսի մեծ բոռոխներով եւ ճիւաղներով՝
Այն պարագայում երբ ողջ մընայի,
Որ, կարդան թէ չէ, առանց մի րոպէ ինձ միջոց տալու,
Ոչ իսկ տապարը յեսանելու չափ, գըլուխըս կտրեն։

Հոր. Վա՜հ, ի՞նչ էք ասում։

Համ. Ահա հրամանը. կարդա երբ ազատ միջոց ունենաս.
Ուզո՞ւմ ես լսել թէ ես ինչ արի։

Հոր. Պատմեցէք խնդրեմ։

Համ. Լինելով այսպէս սըրիկաներից որոգայթապատ,
Նախ քան ուղեղիս մի առաջաբան տուած լինէի՝
Նա սկսել էր արդէն իր խաղը։ Գընացի, նստայ,
Եւ շարադրեցի մի նոր յանձնագիր, լաւ գեղագրեցի.
Ես էլ երբեմըն՝ ինչպէս մեր արդի վարչագէտները՝
Գեղագրութիւնը մի ստորնութիւն համարում էի,
Եւ շատ ջանք արի այդ սովորութիւնըս մոռանալու.
Բայց այստեղ, պարոն, դա կեանքըս փրկեց.
Ուզո՞ւմ ես ասեմ գըրածիս միտքը։

Հոր. Այո, ազնիւ տէր։

Համ. Մի սաստիկ հրաման արքայի կողմից. այսպէս գրեցի,
"Ըստ որում Անգլիան շատ հաւատարիմ մեր հարկատուն է,
Եւ պէտք է մեր մէջ սէրը դափնու պէս միշտ ծաղկած մնայ,
Եւ հաշտութիւնը իր հասկէ պսակն անթառամ կրէ,
Եւ շաղկապ դառնայ մեր երկուսի մէջ,
Եւ շատ այսպիսի ահագին խօսքեր եւ "ըստ որումներ„,
Որ խոկոյն եւեթ, ի տես նամակիս բովանդակութեան,
Առանց յապաղման, քիչ լինի թէ շատ,
Գրաբերողներին մահուան ենթարկեն՝
Խոստովանքի էլ միջոց չը տալով։„

Հոր. Ի՞նչպէս կնքեցիք։

Համ. Այդ բանում էլ կար Աստուծոյ մատը.
Հօրս կնիքը քսակիս մէջն էր, հէնց մի եւ նոյնը,
Որ նախատիպն էր Դանեմարքայի պետական դրոշմի.
Թուղթը ծալեցի, ճիշդ միւսի ձեւով, ստորագրեցի,
Կնքեցի, դրի նոյն ծրարի մէջ,
Այնպէս որ ոչ ոք այդ մանկափոխը չէր կարող տեսնել։
Հետեւեալ օրը տեղի ունեցաւ ծովի կռիւը,
Եւ այնուհետեւ պատահածները արդէն լաւ գիտես։

Հոր. Ուրեմն Գիլդենշտերն ու Ռոզենկրանցը գնում են հիմա . . .

Համ. Բա՜հ, մարդ Աստուծոյ, նրանք ուղղակի հիացած էին
Իրենց պաշտօնով. խիղճըս այդ մասին բնաւ չէ տանջում.
Իրենց անտեղի միջամտո՛ւմը նրանց կործանեց։
Փոքրերի համար վտանգաւոր է
Ընկնել զօրաւոր ախոյեանների
Շաչուն կայծաթափիւռ սրերի միջեւ։

Հոր. Դա ի՜նչ թագաւոր է։

Համ. Չե՞ս կարծում հիմա որ պարտք կայ վըրաս . . .
Նա՛, որ սպանեց իմ թագաւորիս,
Նա՛, որ իմ մօրըս պոռնիկ դարձըրեց,
Նա՛, որ ներս խոթուեց իմ ընտրութեանըս եւ յոյսերիս մէջ,
Եւ կարթը ձգեց որ կեանքս էլ որսայ,

Այն էլ այնպիսի չարանենգութեամբ,
Չէ՞ որ կատարեալ խղճմտութիւն է,
Որ այս բազուկով վարձը ձեռքը տամ.
Մահացու մեղք չէ՞ թոյլ՚ տալ մեր մարմնի այդ պիղծ քաղցկեղին,
Որ էլ աւելի չարիք հասցընէ։ 75

Հոր. Շուտով Անգլիայից նա լուր կը ստանայ,
Թէ ու՛ր է յանգել այնտեղի գործը։

Համ. Երկար չի տեւի. միջնաժամն իմն է.
Եւ մի մարդու կեանքն ինչ բան է միթէ. “Մէկ„ չասած պրծաւ։
Բայց շատ տխուր եմ, սիրելի Հորացիօ, 80
Որ Լաէրտի հետ այնպէս վարուեցայ.
Քանզի սեփական դատիս պատկերով՝
Պատկերացնում եմ եւ նորա դատը.
Պէտք է ջանք անեմ որ սիրտը շահեմ. 84
Միայն, ճիշդն ասած՝ իր ողբ ու կոծի այն յոխորտանքը
Ինձ խիստ բորբոքեց։

Հոր. Սո՛ւս. ո՞վ է գալիս։

Գալիս է Օզրիկ։

Օզրիկ Ուրախ եմ որ Ձերդ բարձրութիւնը վերադարձել է Դանեմարքա։ Ձեզ գալուստ բարի։

Համ. Շատ շնորհակալ եմ, պարոն։ (Հորացիօյին) Ճանաչո՞ւմ ես դու այս ջրի ճանճին։ 90

Հոր. Ոչ, տէր իմ։

Համ. Երանի՜ քեզ, որովհետեւ նրան ճանաչելն անգամ անպատուութիւն է։ Շատ հողեր ունի, եւ խիստ բարեբեր։ Հէնց որ մի անասուն ուրիշ անասունների տէր է դառնում, նրա ախոռը դնում են թագաւորի սեղանին. մի կաչաղակ է սա, բայց, ինչպէս ասացի, ընդարձակ ցեխի տէր։ 96

Օզրիկ Սիրելի տէր իմ, եթէ Ձերդ բարձրութիւնը ժամանակ ունի՝ կ'ուզէի ձեզ մի բան հաղորդել Նորին Վեհափառութեան կողմից։ 99

Համ. Ամենախորին ուշադրութեամբ պատրաստ եմ լսել, պարոն։

Բայց ձեր գլխարկը այն բանի համար գործածեցէք, ինչի համար որ շինուած է. դա գլխի համար է։

Օզրիկ Շնորհակալ եմ Ձերդ բարձրութեան. շատ շոգ է։

Համ. Ոչ, հաւատացէք. նոյն իսկ շատ ցուրտ է. հողմը հիւսիսային է։

Օզրիկ Այո, իսկապէս, մի քիչ ցուրտ է։ 105

Համ. Բայց եւ այնպէս՝ կարծեմ շատ խեղդող տօթ է, կամ գուցէ իմ խառնուածքը . . .

Օզրիկ Սաստիկ, տէր իմ. շատ խեղդող օդ է. կարծես թէ . . . չեմ կարող ասել ինչպէս . . . բայց, տէր իմ. Նորին Վեհափառութիւնը հրամայեց ինձ, որ գամ ձեզ իմաց տամ թէ նա ձեր վրայ մի մեծ գրաւ է բռնել. ահա, տէր իմ, բանն ինչ է։

Համ. Խնդրեմ, մի՛ մոռանաք որ . . . 112

Նշան է անում որ գլխարկը գլուխը դնէ։

Օզրիկ Ոչինչ, ազնիւ տէր. այսպէս հանգիստ եմ, հաւատացէք։ Տէր իմ, վերջերս արքունիքն է ժամանել Լաերտը. հաւատացէք, մի կատարեալ ճէնտլմէն, ամեն տեսակ ընտիր բարեմասնութիւններով, ընկերութեան մէջ վերին աստիճանի հաճելի, եւ շատ շքեղ արտաքինով. իսկապէս, եթէ մարդ կամենայ գովասանօրէն նրան որակել՝ պէտք է ասէ որ նա ազնուականութեան քարտէսն է եւ օրացոյցը, որովհետեւ նրա մէջ կը գտնէք այն բոլոր յատկութիւնները, որ մի ազնուական կ'ուզենար տեսնել։ 121

Համ. Պարոն, նրա որակումը ոչ մի կորուստ չէ կրում ձեր բերանում, թէեւ, քաջ յայտնի է ինձ, որ նրան ցուցակօրէն մանրամասնելը յիշողութեան թուաբանութեան համար գլխի պտոյտ առաջ կը բերէր. բայց եւ այնպէս, էլի ետեւից չէր հասնի, այնքան սրաթռիչ է նրա առագաստը։ Բայց, դրուատանքի ամենայն ճշդութեամբ՝ ես նրան համարում եմ շատ բազմաբովանդակ անձնաւորութիւն, եւ նրա բարեմասնութիւնները այնքան հազուագիւտ եւ չնաշխարհիկ են, որ նրան ըստ պատշաճին որակելու համար՝ պէտք է ասել որ նրա հանգունատիպը իր հայելին է միայն, եւ եթէ որեւէ ուրիշը ձգտէր

Նրան ընդօրինակել՝ կը լինէր միայն նրա սոսկ ստուերը, ոչինչ աւելի։

Օզրիկ Ձերդ Բարձրութիւնը վերին աստիճանի անսխալօրէն է խօսում նրա վրայ։ 135

Համ. Բայց դա ինչ առնչութիւն ունի մեզ հետ, պարոն. ինչու համար ենք այդ ազնուականին մեր թերի ներբողներով զգեստաւորում։

Օզրիկ Ի՞նչ, տէր իմ։

Հոր. (Օզրիկին) Միթէ՞ չէ կարելի ուրիշ ոճով բացատրուիլ. ի հարկէ կարող էք, պարոն։ 141

Համ. Այդ պարոնի անուանումը ինչ կապ ունի մեզ հետ։

Օզրիկ Ում, Լաէրտի։

Հոր. (Առանձին Համլէտին) Տոպրակը դատարկուեց. բոլոր ճռճռան բառերը վերջացան։ 145

Համ. Այո, Լաէրտի։

Օզրիկ Գիտեմ, դուք անգէտ չէք . . .

Համ. Երանի թէ գիտենայիր. բայց, ճիշդն ասած, գիտենայիր էլ՝ դա ինձ այնքան պատիւ չէր բերի։ — Լաւ, յետոյ, պարոն . . .

Օզրիկ Անգէտ չէք ի հարկէ որ Լաէրտը կատարելութեան ինչ աստիճանի է հասել . . . 151

Համ. Ես այդ բանը չը պէտք է խոստովանեմ. դա կը լինէր ինքս ինձ համեմատել նրա կատարելութեան հետ. ուրիշին լաւ ճանաչել՝ նշանակում է ինքն իրեն ճանաչել։ 154

Օզրիկ Ուզում եմ ասել զինախաղի մէջ. դատելով նրա համբաւից՝ նա իր այդ շնորհքի մէջ անզուգական է։

Համ. Որն է նրա զէնքը։

Օզրիկ Սուր եւ դաշոյն։

Համ. Այդ եղաւ երկու զէնք. յետոյ . . . 159

Օզրիկ Տէր իմ, թագաւորը նրա հետ վեց արաբական ձի գրաւ է բռնել. որի դէմ Լաէրտը, կարծեմ, գրաւ է զետեղել վեց Ֆրանսիական սուր եւ դաշոյն, իրենց պարագաներով, ինչպէս գօտի, սրակալ եւ այլն. կողաքարշներից երեքը իսկապէս շատ հիանալի գեղարուեստական բաներ են, բոլորովին համապատաս-

խան կոթերին. շատ գողտրիկ կողաքարշներ են, եւ ձեւով շատ ճաշակաւոր։

Համ. Ի՞նչին էք կողաքարշ ասում։

Հոր. Գիտէի որ մինչեւ լուսանցքի բացատրութիւնը չը ստանաք՝ ձեռք չէք վերցնի։

Օզրիկ Կողաքարշը, տէր իմ, սրակալ է նշանակում։ 170

Համ. Բանը բառի հետ աւելի հարազատ կը լինէր՝ եթէ մենք թնդանօթներ քարշ տայինք մեր կողքից. մինչեւ այն՝ թող ասենք սրակալներ։ Բայց շարունակեցէք. վեց արաբական ձի վեց Ֆրանսիական սուրի դէմ, իրենց պարագաներով եւ երեք նրբաճաշակ կողաքարշներով. դա է Ֆրանսիական գրաւը դանիական գրաւի դէմ։ Բայց այդ գրաւը ի՞նչ բանի վրայ է զետեղուած, ինչպէս ասում էք։ 177

Օզրիկ Թագաւորը, տէր իմ, գրաւ է բռնել, տէր իմ, որ եթէ դուք եւ Լաէրտը մենամարտէք, նա տասներկու հարուածի մէջ երեք անգամից աւելի ձեզնից առաջ չի ընկնի. այսինքն Լաէրտը պէտք է տասներկու հարուած շահէ եւ դուք ինը. եւ եթէ Ձերդ Բարձրութիւնը բարեհաճէ հաւանութիւն տալ՝ իսկոյն պէտք է սկսել։

Համ. Իսկ եթէ պատասխանեմ ո՛չ։

Օզրիկ Ուզում եմ ասել, տէր իմ, եթէ բարեհաճէք հաւանութիւն տալ ձեր դիմամարտութեան։ 186

Համ. Պարոն, ես այստեղ այս դահլիճում զբօսնում եմ. հիմա օրւայ այն ժամն է որ ես մի քիչ օդ եմ շնչում այստեղ։ Եթէ Նորին Վեհափառութեանը հակառակ չէ՝ թող սրերը բերեն այստեղ. եթէ այդ պարոնը ուզում է, եւ Թագաւորն էլ միտքը չէ փոխել՝ կ'աշխատեմ, եթէ կարող եմ, գրաւը նրա համար շահել. եթէ ոչ, միայն մի քիչ ամօթ կը շահեմ եւ մի քանի հարուած։

Օզրիկ Այդպէ՞ս յայտնեմ ձեր կողմից։

Համ. Այո, պարոն, նիւթն այս է. իսկ պաճուճանքը թողնում եմ ձեր ճաշակին։ 196

Օզրիկ Ես յանձնարարում եմ ինձ Ձերդ Բարձրութեան։

Համ. *Նոյնպէս եւ, նոյնպէս եւ։ (Օզրիկ գնում է։) Լաւ է անում որ ինքն է իրեն յանձնարարում, թէ ոչ ուրիշ լեզու չէր գտնւի որ նրան յանձնարարէր։*

Հոր. *Այս ծիտը՝ ձուից դուրս չեկած՝ կճեպը դեռ գլխին վազ է տալիս։*

Համ. *Ծծելուց առաջ՝ մօր ստինքներին համբոյրախօսութիւններ արած կը լինի։ Այսպէս սա, եւ շատ շատեր, այս սնոտի կտաւից, որոնց վրայ, գիտեմ, մեր ունայնասէր դարը հիանում է, միայն օրւայ եղանակը եւ վարւեցողութեան արտաքին ձեւերն են իւրացրել. մի տեսակ փրփուրի հաւաքածոյ, որի շնորհիւ նրանք յաջողութեամբ են դուրս գալիս ամենէն յիմար եւ ամենէն ընտիր խօսակցութիւնների միջից. բայց փորձի համար փչէր վրան՝ եւ պղպջակները կը պայթեն։*

Գալիս է մի Ազնուական։

Ազն. *Տէր իմ, Նորին Վեհափառութիւնը երիտասարդ Օզրիկի բերանով ձեզ բարեւ էր ուղարկել, եւ Օզրիկն եկաւ լուր բերեց, թէ այստեղ գաւիթում սպասում էք Նորին Վեհափառութեան. թագաւորն այժմ ուղարկեց ինձ իմանալու թէ արդեօք տրամադիր էք հէնց իսկոյն Լաէրտի հետ սրախաղն սկսելու, թէ կը կամենայիք ուրիշ ժամանակի թողնել։*

Համ. *Ես իմ որոշումիս մէջ չեմ տատանւում. նա կախւած է թագաւորի բարի կամքից. երբ հրամայում է նրա յարմարութիւնը՝ իմն միշտ պատրաստ է. հիմա լինի, կամ որեւէ ժամանակ, միայն թէ ես ինձ այնպէս լաւ զգամ, ինչպէս այժմ։*

Ազն. *Թագաւորը, թագուհին եւ ամենքը գալիս են ցած։*

Համ. *Ի դէպ։*

Ազն. *Թագուհին ցանկանում է որ դուք խաղը սկսելուց առաջ Լաէրտին մի քաղցր խօսք ասէք։*

Համ. *Լաւ խորհուրդ է։*

Ազնուականը դուրս է գնում։

Հոր. *Դուք այս գրաւը կը կորցնէք, տէր իմ։*

Համ. *Չեմ կարծում. նրա Ֆրանսիա գնալուց ի վեր ես շարունակ*

վարժութիւն եմ արել. տուած առաւելութեամբ ես կը տանեմ: Բայց չես կարող երեւակայել թէ ինչպէս սիրտս սեղմւում է. բայց հոգ չէ:

*Հոր.* Դէհ լաւ, տէր իմ, քանի որ այդպէս է...

*Համ.* Ոչինչ, դատարկ բան է. բայց մի տեսակ նախազգացում է, որ մի կնոջ սիրտը կարող էր վրդովել:

*Հոր.* Եթէ ձեր սիրտը չէ ուզում՝ հնազանդուեցէք նրան: Ես կ'երթամ կ'ասեմ չը գան, եւ կ'ասեմ թէ դուք տրամադրուած չէք:

*Համ.* Ոչ, ոչ. ես նախազգացումներից վախեցողը չեմ. մի ճնճղուկի ընկնելու մէջն անգամ յատուկ նախախնամութիւն կայ: Եթէ հիմա պէտք է լինի, ապագայում չէ լինելու: Եթէ ապագայում չը պէտք է լինի, հիմա է լինելու: Եթէ հիմա չը լինի, մի օր լինելու է: Խօսքը պատրաստ լինելն է. քանի որ ոչ ոք չը գիտէ թէ ինչ է թողնում, ինչ փոյթ եթէ շուտ թողնէ. թող լինի:

Գալիս են Թագաւորը, Թագուհին, Լաէրտ, Ազնուականներ, Օզրիկ եւ ուրիշ Սպասաւորներ, բերելով խաղաթրեր եւ ձեռնոցներ, նաեւ մի սեղան, գինու սրուակներ վրան:

*Թագ.* Եկ այստեղ, Համլէտ. առ այս ձեռքն ինձնից:

Լաէրտի ձեռքը դնում է Համլէտի ձեռքի մէջ:

*Համ.* Ներիր ինձ, պարոն. իրաւ քո հանդէպ մեղաւոր եմ ես.
Բայց ներող եղիր իբրեւ ազնիւ մարդ, դու որ ազնիւ ես.
Այս ներկաները գիտեն, եւ դու էլ լսած կը լինես,
Որ ես շատ ծանր մտացնորութեամբ պատուհասուած եմ.
Ինչ որ արել եմ, որ դուցէ սիրտդ, կամ թէ պատիւդ
Մի քիչ կոպտօրէն շօշափած լինի՝
Յայտարարում եմ թէ խենթութիւն էր:
Համլէ՞տն է արդեօք քեզ վիրաւորել: — Երբէ՛ք Համլէտը:
Եթէ Համլէտը ինքն իր եղածից այլափոխուել է.
Եւ փոխուած մարդն է, որը Լաէրտին վիրաւորել է,
Ուրեմն անողը ոչ թէ Համլէտն է. նա հերքում է այդ.

Ո՞վ է անողը։ — Իր խենթութիւնը։ Եթէ այդպէս է՝
Ուրեմն Համլէտն անիրաւուած է, ոչ անիրաւող.
Եւ խեղճ Համլէտի թշնամին նա՛ է։ — Իր խենթութիւնը։
Տէր իմ, բոլորի ներկայութեանը՝
Թող դիտաւորեալ ամեն չարութեան այս ուրացումըս
Անմեղացնէ ինձ քո անյիշաչար կարծիքի առաջ,
Այնպէս դատիր ինձ, որպէս եթէ ես պատի վրայից
Մի նետ արձակած եւ իմ եղբօրըս զարկած լինէի։

Լա. Բաւարարուած եմ բնութեանըս մէջ,
Որը, այս դէպքում, ինքը պէտք է ինձ աւելի դրդէր.
Բայց ինչ իմ պատուիս վերաբերում է՝ դեռ ձեռնպահ եմ,
Եւ չեմ հաշտուի, մինչեւ մի քանի երէց վարպետներ,
Պատւի մէջ ծանօթ, նման դէպքերի հետեւողութեամբ,
Խորհուրդ չը տան ինձ, այնպէս որ անունս անարատ մնայ.
Մինչ այն, կ'ընդունեմ ձեր առաջարկած սէրը՝ իբրեւ սէր,
Որին չեմ դրժի։

Համ. Ես էլ բաց սրտով ընդունում եմ այդ,
Եւ եղբայրական այս գինեմրցումը պատրաստ եմ խաղալ
Առանց որեւէ մտախոհութեան։ — Տուէք սրերը։
— Սկսենք. հայդէ՛։

Լա. Սկսենք. մի սուր ինձ։

Համ. Լաէրտ, այսօր քեզ մեծ փայլ պիտի տամ.
Իմ խակութեան մօտ քո ճարպիկութիւնդ այնպէս կը փայլի,
Ինչպէս վառ աստղը մթին գիշերում։

Լա. Ծաղրում էք, տէր իմ։

Համ. Ոչ, ձեռքըս վկայ։

Թագ. Խաղասրերը իրենց տուր, Օզրիկ։
Սիրելի Համլէտ. գրաւը գիտե՞ս։

Համ. Այո, տէր արքայ.
Ձեր մեծութիւնը թոյլ կողմի վրայ գրաւ է բռնել։

Թագ. Ես չեմ վախենում. ձեզ երկուսիդ էլ տեսել եմ խաղում.
Բայց քանի որ նա առաջադիմել է,
Մենք էլ տարբերոյթ նշանակեցինք։

*Լա.* Այս սուրը ծանր է. մէկ ուրիշը տուր։
*Համ.* Այս մէկը լաւ է. արդեօք բոլորն էլ նոյնչափ երկար են։
*Օզրիկ* Այո, ազնիւ տէր։
*Թագ.* Գաւաթները դիր սեղանի վրայ.
Եթէ առաջին կամ երկրորդ անգամ Համլէտ հարուած տայ,
Կամ թէ երրորդին՝ զարկը յետ մղէ՝
Թող մարտկոցները արձակեն իրենց թնդանօթները.
Եւ թագաւորը կ՚ըմպէ Համլէտի առողջութեանը,
Եւ գաւաթի մէջ կը ձգէ մի մեծ անզոյգ մարգարիտ
Աւելի արժող, քան թէ այն մէկը,
Որ յաջորդաբար Դանեմարքայի չորս թագաւորներ
Կրել են իրենց թագի ճակատին։
Տուր գաւաթները, եւ թող թմբուկը շեփորին յայտնէ,
Շեփորը՝ դրսի թնդանօթներին,
Թնդանօթները երկնքին գոռան, երկինքն էլ երկրին,
Որ "Թագաւորը այժըմ խըմում է Համլէտի բախտին"։
Դէհ, սկսեցէք. եւ, դատաւորներ, ուշադիր եղէք։
*Համ.* Սկսենք, պարոն։
*Լա.* Սկսենք, տէր իմ։

Խաղում են։

*Համ.* Մէկ։
*Լա.* Ոչ։
*Համ.* Վճռեցէք։
*Օզրիկ* Կպաւ, յայտնի է։
*Լա.* Լաւ. Նորէն։
*Թագ.* Կեցէք։ Գինի բերէք ինձ։
Համլէտ, ահա քեզ այս մարգարիտը. քո ողջութեանը։
Փողերը հնչում են եւ թնդանօթն արձակւում դուրսը։
Տար այս բաժակը եւ Համլէտին տուր։
*Համ.* Ցած դիր մի րոպէ. առաջ ուզում եմ դեռ մէկ էլ չափւիլ։
Հայդէ՜ (խաղում են։) Մի զարկ էլ. լաւ, ընդունում ես։
*Լա.* Այո, լաւ կպաւ, խոստովանում եմ։

Թագ. Որդիս կը շահէ։
Թագ՛. Նա գէր է մի քիչ եւ շունչը պակաս։
Առ թաշկինակըս, սիրելի Համլէտ, սրբիր ճակատըդ։
Համլէտ, Թագուհին բախտիդ է խմում։
Համ. Բարի էք, տիկին։
Թագ. Գերտրուդ, մի՛ խմիր։
Թագ՛. Ուզում եմ խմել, թոյլ տուր ինձ, տէր իմ։ 310

խմում է։

Թագ. (Առանձին) Թունոտ բաժակն է. ա՜խ, ուշ է արդէն։
Համ. Չեմ համարձակւում խմել դեռ եւս. քիչ յետոյ, տիկին։
Թագ. Եկ դէմքըդ սրբեմ։
Լա. (Թագաւորին) Տէր իմ, այս անգամ ես եմ դիպչելու։
Թագ. Չեմ կարծում։
Լա. (Առանձին) Բայց ինչ էլ լինի՝ խիղճըս տանջում է։
Համ. Առ քեզ երրորդը. բայց ի՞նչ է, Լաէրտ. կատակ ես անում.
Խնդրեմ, յարձակուիր քո բոլոր թափով. 316
Ի՞նչ է, բանի տեղ չե՞ս դընում դու ինձ։
Լա. Ա՞յդպէս էք կարծում. եկէք ուրեմըն։

խաղում են։

Օզրիկ Երկուստեք ոչինչ։
Լա. Ահա, ստացիր։

Լաէրտը վիրաւորում է Համլէտին. յետոյ խառնաշփոթութեան մէջ
սրերը փոփոխւում են։

Թագ. Բաժանեցէք դըրանց. շատ են բորբոքուել։ 320
Համ. Ոչ, մէկ անգամ էլ։

խաղում են. Համլէտը վիրաւորում է Լաէրտին.
Թագուհին ընկնում է գետին։

Օզրիկ Թագուհուն տեսէք։
Հոր. Երկու կողմերն էլ արիւնոտել են. ինչ եղաւ, տէր իմ։
Օզրիկ Ի՞նչ եղաւ, Լաէրտ։
Լա. Կտցարի նըման ես ինքըս ընկայ իմ թակարդի մէջ.

Ինքըս իմ դաւով սպաննըւեցայ, եւ արդար կերպով։
Համ. Բայց թագուհին հիւս ինչ է պատահել։
Թագ. Ոչինչ. նըւաղեց արիւն տեսնելով։
Թագհ. Ոչ, ըմպելիքը, այն ըմպելիքը. ո՛հ, քաղցրիկ Համլէտ,
Այն ըմպելիքը... թունաւորուած եմ։

Մեռնում է։

Համ. Դաւաճանութիւն, էհէ՜յ, ծառաներ. փակեցէք դուռը.
Դաւաճանութիւն. գըտէք անօրէնն։

Լաէրտն ընկնում է գետին։

Լա. Այստեղ է, Համլէտ. Համլէտ, մեռած ես.
Չըկայ աշխարհում ոչ մի դեղ, որ քեզ փրկել կարենայ.
Մի կէս ժամի կեանք հազիւ կայ քո մէջ.
Մահացու զէնքը ձեռքիդ է ահա սուր եւ թունաւոր.
Իմ անարգ դաւը իմ գլխին եկաւ։
Այնպէս, ընկել եմ, որ էլ չեմ կանգնի.
Նոյնպէս եւ մայրըդ թունաւորուած է.
Էլ ուժ չըմնաց. ա՛խ, թագաւո՛րը, թագաւորն արաւ։
Համ. Եւ ծայրը թունոտ. ուրեմն, ո՛վ թոյն, կատարիր գործըդ։

Վիրաւորում է թագաւորին։

Ամենքը Դաւաճանութի՜ւն, դաւաճանութիւն...
Թագ. Պաշտպանեցէք ինձ, ո՛հ, բարեկամներ...
Ես միայն մի քիչ վիրաւորուած եմ։
Համ. Առ, դու ազգապի՛ղծ, դու մարդախո՛շոշ, դու պի՛ղծ Դանիացի,
Խմիր այս թոյնը. մարգարիտն ո՞ւր է։ Հետեւիր մօրըդ։

Թագաւորը մեռնում է։

Լա. Իր վարձն ստացաւ. ինքն էր իր ձեռքով այդ թոյնը խառնել։
Եկ, ազնիւ Համլէտ, թող ներենք իրար.
Ոչ հօրս արիւնը եւ ոչ էլ իմըս թափուին քո գլխին,
Եւ ոչ էլ քոնը իմ գլխիս թափուի։

Մեռնում է։

Համ. Թող երկինքը քեզ անպարտ արձակէ. գալիս եմ ես էլ.
Մեռայ, Հորացիօ: Թշուառ թագուհի, ո՜հ, մնաս բարով:
— Դուք որ գունատուել եւ դողդողում էք այս պատահարից,
Դուք որ պարապանձուած հանդիսատես էք այս արարուածին,...
Եթէ ժամանակ ունենայի դեռ...
— Բայց մահը, դաժան այն ոստիկանը, խիստ անողորմ է՝
Երբ կալանում է. — ո՜հ, կարող էի ձեզ բաներ պատմել...
Բայց ոչ, թող կենայ. Հորացիօ, մեռայ, բայց դու ապրում ես.
Պատմիր իմ դատը եւ գլխիս անցքը անտեղեակներին:
Հոր. Մի կարծիր այդպէս.
Ես շատ աւելի մի հինադարեան Հռովմայեցի եմ,
Քան մի Դանիացի. մի քիչ էլ դեռ կայ այս ըմպելիքից:
Համ. Թէ այր մարդ ես, ինձ տուր գաւաթը.
Ի սէր Աստուծոյ, բաց թո՛ղ, տուր ինձ այդ.
Բարի Հորացիօ, եթէ այս բոլորն անծանօթ մնայ՝
Ի՜նչ կոտրած անուն պէտք է թողնեմ ես ինձանից յետոյ:
Եթէ սրտիդ մէջ մի տեղ ունիմ ես՝
Զրկիր քեզ առ այժմ երանութիւնից,
Եւ շնչիր դեռ եւս այս ժանտ աշխարհում,
Որ իմ պատմութիւնն ամենքին պատմես:

Մարշ քէմի ետեւից եւ թնդանօթի ձայն:

Ի՜նչ պատերազմի շառաչիւն է այս:
Օզրիկ Փորտինբրասն է, որ Լեհաստանից յաղթութեամբ դարձել
Եւ Անգլիայի պատուիրակներին
Այս զինուորական ողջոյնն է տալիս:
Համ. Մեռնում եմ, Հորացիօ, զօրաւոր թոյնը յաղթում է ոգուս.
Այնքան չեմ ապրի որ Անգլիայի լուրերը լսեմ.
Բայց գուշակում եմ որ ընտրութիւնը վիճակուելու է
Քաջ Փորտինբրասին. նրան եմ տալիս մահամերձ ձայնըս.
Պատմիր այս նրան, այն դէպքերի հետ, աւել կամ պակաս,
Որ պատճառ դարձան... Մնացորդը լռութի՜ւն:

Մեռնում է:

Հոր. Մի ազնիւ սիրտ պայթեց. բարի գիշեր քեզ, անուշիկ իշխան.
Թող հրեշտակների դասեր խմբովին՝ քեզ հանգիստ երգեն։

Քայլերգ ներսի կողմից։

Ինչո՞ւ է թմբուկն այս կողմը գալիս։

Գալիս են Ֆորտինբրաս, Անգլիայի դեսպանները, թմբուկներով, դրօշակներով եւ հետեւորդներով։

Փորտ. Որտեղ է արդեօք այդ տեսարանը։
Հոր. Ի՞նչ է փնտռածդ.
Եթէ ողբալիք եւ զարմանալիք, էլ մի որոնիր։
Փորտ. Այս դիակոյտը նախճիրք է պոռում։ Ով գոռոզ դու մահ,
Ի՞նչ տօն է տօնւում յաւիտենական քո խորշի մէջ,
Որ մէկ հարուածով այդքան իշխաններ գետին ես փռել
Արիւնաթաթախ։
Ա.Պատ. Դժպհի՜ տեսարան.
Մեր Անգլիայից բերած լուրերը շա՛տ ուշ մընացին.
Եւ անզգայ են այն ականջները,
Որոնք պէտք է այժմ ունկնդրէին մեզ,
Որ մենք յայտնէինք նորա հրամանի գործադրութիւնը,
Թէ Ռոզենկրանցը եւ Գիլդենշտերնը չը կան այլ եւս։
Ո՞ւմից ստանանք շնորհակալութիւն։
Հոր. Ոչ նորա բերնից, եթէ մինչեւ իսկ կենդանի լինէր
Եւ կարողանար շնորհակալ լինել.
Նա ամենեւին հրաման չէ տուել որ նրանց սպանեն.
Բայց քանի որ դուք, ճիշդ արիւնահեղ այս դէպքի պահուն,
Նոր էք յետ դարձել Լեհական կռւից, դուք էլ Անգլիայից,
Հրամայեցէք որ ի ցոյց դընեն այս մարմինները
Մի բեմի վըրայ, եւ ինձ թոյլ տուէք խօսել, եւ պատմել
Անգէտ աշխարհին, թէ այս բոլորը ինչպէս պատահեց.
Եւ դուք կը լսէք լկտի, արիւնռուշտ, հրէշաւոր գործեր,
Անկարծ դատաստան, եւ պատահական սպանութիւններ,
Մահեր, սարքըւած խորամանկօրէն, եւ հարկադրըւած,

Եւ, ի կատարում, դաւեր, որ շնորհիւ թիւրիմացութեան,
Ընկան հէնց իրենց նախաթողի գլխին.
Եւ այդ բոլորը կարող եմ պատմել հարազատօրէն։
Փորտ. Շտապենք լսել. ժողով կանչեցէք մեծամեծներին։
Գալով ինձ՝ ցաւով գրկում եմ բախտը.
Բայց ունիմ նաեւ հին իրաւունքներ այս երկրի վրայ,
Եւ յաղթութիւնս հրաւիրում է ինձ որ պահանջեմ այժմ։
Հոր. Ես էլ խօսք ունիմ, եւ այն՝ այնպիսի մի մարդու բերնից,
Որի ձայնն իր հետ շատ ձայն կը բերէ.
Եւ լաւ է որ դա հէնց այժըմ լինի,
Երբ որ մտքերը գրգռուած են դեռ.
Մի՛ գուցէ դաւեր եւ սխալանքներ
Նորանոր փորձանք բերեն մեր գլխին։
Փորտ. Թող չորս զինապետ տանեն Համլէտին, որպէս զինուորի,
Եւ ցոյցի դնեն մի բեմի վրայ.
Եթէ նա ապրէր, եւ փորձի դրուէր,
Հաւանական է, որ մեծ թագաւոր կը հանդիսանար.
Եւ նորա անցքը պատուելու համար՝
Թող զինուորական երաժշտութիւն եւ ռազմի ծէսեր
Թնդան բարձրաձայն։ — Եկէք, դուրս տարէք այս մարմինները։
— Այս տեսարանը դաշտին է յարմար,
Խիստ ժանտատեսիլ այս տեղի համար։
— Գնա հրամայիր որ զինուորները ողջոյն արձակեն։

Թաղման մարշ. ամէնքը դուրս են գնում՝ տանելով մարմինները, յետոյ լսւում է թնդանօթի արձակում։

**ՎԵՐՋ**

# ԾԱՆՕԹՈՒԹԻՒՆՆԵՐ

---

I. I. 19․ *Նրա մի մասը:* Վարբուրտոնի կարծիքով Հորացիօ այս ասելու ժամանակ ձեռք է տալիս Բեռնարդոյին։ Ուրիշ կրիտիկներ կարծում են թէ կատակի ձեւով ասուած խօսք է, եւ թէ Շէքսպիրի ժամանակ այդ տեսակ արտա-խօսութիւնները սովորական էին, ինչպէս դրամայի միւս մասերում կը տեսնենք։

I. I. 42․ *Դու գիտուն մարդ ես:* Ոգիների հետ խօսելու լեզուն լատիներէնն էր համարւում, եկեղեցական լեզուն։ Հորացիօ համալսարանում ուսած մարդ լինելով՝ Մարցելլոս նրան է առաջարկում ուրուականի հետ խօսել։

I. I. 63․ Այս տողը բնագրի մէջ մութ է մնացել, եւ անհամար մեկնութիւնների տեղի է տուել, որ աւելորդ ենք համարում այստեղ յիշատակել։ Մենք հետեւել ենք ամենէն հաւանական համարուած մեկնաբանութեան։

I. II. 28․ *Ծերուկ Նորվէգին:* Նշանակում է Նորվէգիայի թագաւորին, ինչպէս տող 72, Դանիացուն, նշանակում է Դանիայի թագաւորին։

I. II. 70․ *Չափից աւելի արեւի տակ եմ:* Այս տողին մի քանի մեկնաբանութիւններ են տրուած։ Մէկն այս է. զրկուած լինելով հօրից, մօրից եւ տնից՝ (գահից) ես ընկած եմ դուրսը, արեւի տակ։ Միւսն է. անհոգ եւ ծոյլ կեանք եմ վարում արեւի տակ՝ փոխանակ աւելի լուրջ կերպով մտածելու գլխիս եկածի վրայ։

I. II. 119․ Վիտտենբերգի համալսարանը որ հիմնուած է 1502ին, Լութերի շնորհիւ հանրածանօթ դարձաւ. ուրեմն Համլէտի ժամանակ չէր կարող գոյութիւն ունենալ. բայց Շէքսպիրի մէջ այդ տեսակ ժամանակագրական սխալներ բազմաթիւ են, ինչպէս, օրինակ, Տրոյայի պատերազմի ժամանակ յիշուած է Արիստոտէլը (*Տրոյիլոս եւ Կրէսիդայի մէջ*)․ կամ թէ, Շէքսպիրի իր օրով Լոնդոնում տեղի ունեցած թատրոնական դէպքերը կապուած են Համլէտի պատմութեան հետ։ Շէքսպիր իր դրամաները գրել է ժամանակից եւ տարածութիւնից անկախ։

I. II. 146․ *Ինչ Հիպերիոնը մի սատիրի մօտ:* Սատիր ասելով Շէքսպիր ակնարկում է Պան աստծուն, եւ Հիպերիոն՝ Ապոլլոնի մի այլ անունն է. Պան եւ Ապոլլոն երկուսն էլ Յուպիտերի որդիքն էին, ուրեմն եղբայրներ։

I. II. 188· *Մեռելաճաշի կերակուրները պաղ մատուցեցան:* “Հին ժամանակ տնտեսութիւն է եղել յուղարկաւորներին պաղ կերակուրներով ճաշ տալ„ (Կոլրիջ)։

I. III. 88· Պոլոնիուսի այս սկզբունքները շատ նման են այն խրատներին, որ Շէքսպիրի ժամանակակից հեղինակ Լիլի իր Euphues գրուածքի մէջ դնում է գլխաւոր անձնաւորութեան բերանում։ Շատ կրիտիկներ տարօրինակ են գտնում որ Շէքսպիր այնպիսի ոսկի խօսքեր, ինչպէս,

“Միշտ անկեղծ եղիր դու ինքըդ քեզ հետ.
Եւ կը հետեւի այս բանին, ինչպէս տիւը գիշերին,
Որ ոչ ոքի հետ չես կարող կեղծել։„

դրել է Պոլոնիուսի պէս տափակ մի անձնաւորութեան բերնում։ Ահա այս մասին ինչ է ասում Շէքսպիրի ամենալաւ կրիտիկներից մէկը, Դուբլինի համալսարանի Պրոֆէսոր, Էդուարդ Դաուդէն.

“Պոլոնիուսի այս խօսքերի նշանակութիւնը չը պէտք է փնտռել նրանց նիւթի մէջ՝ այլ պէդանտիկ ձեւի մէջ։ Պոլոնիուս խելացի մարդ է՝ աշխարհային խոհեմութեան նեղմիտ իմաստով. հմուտ է եղել “խոտոր հարցերով եւ շեղ փորձերով„ ճշմարտութիւնը դուրս բերելու մէջ. բայց իսկական խելացութիւնից նշոյլ անգամ չէ ունեցել։ Շէքսպիր, այս խօսքերով որ դրել է Պոլոնիուսի բերնում, ուզեցել է ցոյց տալ թէ Պոլոնիուսի պէս մարդկանց բոլոր իմաստութիւնը կայանում է մի շարք սկզբունքներ եւ առօրեայ առածներ սերտելու մէջ։ Ուզում եմ ասել, նրա գիտութիւնը չէ բղխում մի հարուստ եւ խոր բնատուր խելքից, այլ մի երկար եւ մակերեսային փորձառութեան ամբարած փոքրիկ գանձանակն է։ Այս է Պոլոնիուսի պէդանտիկ ձեւի իմաստը։ Եւ անտեղի չէ որ Շէքսպիր Պոլոնիուսի բերանն է դնում այս գեղեցիկ տողերը. — *Միշտ անկեղծ եղիր դու ինքըդ քեզ հետ:* Ճիշդ է, Պոլոնիուս, իր բոլոր տափակ ասացուածների մէջ միայն մէկ մեծ ճշմարտութիւն է ասել, բայց ասել է այդ առանց նրան մասնաւոր նշանակութիւն տալու, որպէս ոչ շատ կենսական ճշմարտութիւն, այլ իր միւս ասածների տեսակից, ինչպէս *թանկ զգեստ հագիր.* կամ, ‘Ոչ պարտք առ, ոչ տուր,’ եւ այլն։„

I. III. 116· *Կտցար բռնելու:* կտցար “բէկաս„ թռչունն է, որի մասին Անգլիայում ժողովրդական կարծիք կար թէ ուղեղ չունի, որովհետեւ շատ հեշտութեամբ է բռնւում. այդ պատճառով կտցար հոմանիշ էր դարձել յիմարութեան։

I. IV. 9· *Կայթպար:* Պէտք զգացինք այս բառը կազմելու. նշանակում է մի պար, որի մէջ պարողները վեր վեր են ցատկում։

I. IV. 40· *Մի մասնիկ ժանգը:* Այս տողի բնագիրը աղաւաղուած է մեզ հասել, եւ հարիւրաւոր ենթադրութիւններ են արուած, առանց մեծ յա-

խղճութեան. բայց ընդհանուր միտքը յայտնի է, եւ մենք “ժանգ„ բառը չենք գործածել իր նեղ իմաստով, այլ իբրեւ մի փչացնող նիւթ:

I. IV. 72—78. *Կամ թէ գագաթը այն քարաժայռի...* Կրիտիկները նկատում են թէ Դանեմարքայի բոլոր ծովափը տափակ է, եւ քարաժայռ չունի:

I. V. 30—32. *Որ ես թեւերով, աւելի արագ քան մտքի թռիչք եւ սիրոյ խոհեր...* Այս մի քանի բառերով Համլէտ տալիս է իր հոգու պատկերը, նրա կարողութեան բոլոր չափը, — խորհել եւ սիրել: Ունելով խորհրդածութեան անձնատուր՝ նրա միտքը ամենայն արագութեամբ թռչում է մէկ նիւթից միւսը, կամ սէրը նրան անդադար փոփոխւող մտածութիւններ է ներշնչում: Եւ երբ ուզում է ամենաարագ մի գործ որակել, նա համեմատում է մտքի թռիչքի կամ սիրոյ խոհերի հետ:

I. V. 109. *Տետրակըս, պէտք է յուշագրեմ այստեղ...* “Երբ ուրուականը մեկնում է՝ Համլէտ դուրս է քաշում ոչ թէ իր սուրը, այլ իր յուշատետրը. ուզում է գրնէ իր տետրակի մէջ միանգամ ընդ միշտ, սեւ սպիտակի վրայ, հաստատած լինել, որ ժպտացող Կլաւդիոսը սրիկայ է, այնպէս որ կասկածի եւ փոփոխամտութեան տեղ չը մնայ. որովհետեւ, Համլէտ շատ լաւ գիտէ որ ենթակայական տպաւորութիւնները միշտ այնպէս վառ չեն մնում, ինչպէս մի որոշ վայրկեանի ազդեցութեան տակ լինում են: Ուզում է այնուհետեւ ոչ մի ուրիշ բան չը յիշել բացի ուրուականից. եւ այդ բանն ապահովելու համար, նա յուշատետրում գրում է իր հօր վերջին բառերը. “Մնաս բարով, մնաս բարով, յիշիր ինձ„: Այլ խօսքերով՝ իր թաշկինակի վրայ մի կապ է ձգում, որ չը մոռանայ: Համլէտ գիտակից է որ ինքը ստեղծուած չէ գործի համար, եւ թէ իրողութիւնը շարունակ սահում անցնում է իր մտքից եւ տեղը տալիս է մի գաղափարի: Դրա համար է որ այս անգամ ուզում է զգուշութիւն ձեռք առնել որ այդ բանը չը կրկնուի:„ Դաուդէն:

I. V. 126. *Չը կայ մի սրիկայ ամբողջ Դանիայում...* “Համլէտ սկսում է ասել, հաւանականաբար. “Չը կայ մի սրիկայ ամբողջ Դանիայում որ հաւասարուի հօրեղբօրս„, բայց յանկարծ յիշելով որ բացի Հորացիոյից, Մարցելլոսն էլ ներկայ է եւ իր ասածը կարող է վտանգաւոր հետեւանքներ ունենալ, խօսքը փոխում է, եւ վերջացնում է այսպէս, “Որ... մի անզգամ դաւաճան չլինի„: Մէյսոն:

I. V. 139. *Ու նոյնիսկ շատ խիստ վիրաւորանք կայ:* “Համլէտ դիտմամբ ցոյց է տալիս որպէս թէ չէ հասկանում իր բարեկամի ասածը՝ հարցափորձից խոյս տալու համար: Նախ այնպէս է ձեւացնում, որպէս թէ իր խօսքերը վիրաւորիչ են, այն ինչ իր բարեկամները գտնում են որ տարտամ խօսքեր են. Եւ երբ Հորացիօ պատասխանում է թէ վիրաւորուելու բան չը կայ, Համլէտ խաղ է անում վիրաւորանք բառի վրայ, եւ վիրաւորանքն

ընդունում է տառացի մտքով, անպարկեշտութեան իմաստով, եւ ակնարկու-թիւն է անում իր Հօր սպանութեանը, որ նոր յայտնագործուել է նրան„։ Գէլլուս։

I. V. 159. **Hic et ubique:** *Այստեղ եւ ամեն տեղ.* „Շատ հա-ւանական է որ այս տեսարանի վերջին մասը բառ առ բառ առնուած լինի Շէքսպիրից առաջ գոյութիւն ունեցող „Համլէտից„ եւ այս լատիներէն մի քանի խօսքերը որոշ հիմք են տալիս այդ կարծիքին։ Շէքսպիրից առաջ գրող թատերագիրները սիրում էին այդպիսի փոքրիկ լատիներէն ասացուածներով իրենց գրուածները զարդարել, եւ Շէքսպիր միայն իր առաջին գրուածների մէջ հետեւում է այդ սովորութեան, բայց ոչ յետագայ գրուածներում։ Այս փոքրիկ նախադասութեան գործածումից կարող ենք ենթադրել թէ Շէքսպիր այս եւ հետեւեալ տողերը նախկին դրամայից պահել է հէնց միայն այն պատճառով որ նրանք ժողովրդական էին դարձել։„ Միլլէրշլագ։

I. V. 163. *Լաւ, ծերուկ խլուրդ...* Շատ տարօրինակ է թւում որ Համլէտ այսպիսի պատկառանքից զուրկ խօսքեր է ուղղում իր Հօր ուրուակա-նին։ Հանմէր եւ Դաուդէն ենթադրում են որ Համլէտ դիմում է այս կէս-հիւմորիկ կատակներին՝ միայն այն նպատակով, որ իր ընկերների հարցու-փորձից խոյս տայ, եւ նրանց ենթադրութիւնները հեռացնէ ուրուականի յայտ-նած սոսկալի գաղտնիքից, որի մասին չէր կարող Մարցէլլոսի ներկայութեանը խօսել Հորացիօյի հետ։

---

II. I. 27. *Կամ զինամարտել։* „Հաւանական է որ զինամարտելը յի-շուած է ցոյց տալու համար թէ Պոլոնիուս իր որդու միւս՝ ենթադրական սայ-թաքումներն ինչպիսի թեթեւ բաներ է համարում։ Միւս կողմից՝ պէտք է նկատել որ զինավարժները, Շէքսպիրի ժամանակ նոյնքան վատահամբա-ւ մարդիկ էին, որքան դերասանները. այս բանի մասին յիշատակութիւն կայ նաեւ Էլիզաբէթեան դարի ուրիշ դրամաների մէջ։„ Դաուդէն։

II. I. 73. *Աչքովդ դիտիր նրա հակումը։* Այսինքն անձամբ, ոչ թէ լրտեսների միջոցով։

II. I. 78—102. „Համլէտի այս հանդիպումը Օֆէլիայի հետ նրանց միակ անկեղծ տեսակցութիւնն է ամբողջ դրամայի ընթացքում, եւ սկզբից մինչեւ վերջ անցնում է լռութեամբ. դա Համլէտի յուսահատական մնաս-բարովն է։ Արդէօք Օֆէլիան հասկանում է Համլէտի սերը՝ նրա կեղծուած խելագարու-թեան տակ։ Իսկ Համլէտ Օֆէլիայի դէմքում ոչ մի ուրիշ բան չէ կարդում, բայց միայն սարսափ, եւ այդ պատճառով էլ ինքը ոչ մի բառ չէ կարողա-

նում արտասանել, եւ զգում է թէ վիհը բացւել է արդէն երկուսի մէջ. այնուհետեւ էլ ոչ մի անգամ բաց սրտով իրարու չեն հանդիպում:„ Դաուդէն:

II. I. 125. *Ինչ որ ծածկելը...* Թագաւորը կարող է բարկանալ, երբ նրան պատմեմ Համլէտի սէրը. բայց եթէ չը յայտնեմ, գուցէ աւելի մեծ գլխացաւի պատճառ կը դառնայ մեզ համար:

II. II. 129. *Որչափ որ այս մեքենան ինձ պատկանի:* Համլէտ մարմինը կոչում է մի մեքենայ, որի շարժիչը հոգին է:

II. II. 141. *Թէ թղթակալի կամ գրասեղանի դերն ստանձնէի:* Այսինքն, լռութեամբ ընդունէի աղջկաս գաղտնիքը, ինչպէս թղթակալը կամ գրասեղանը ընդունում են իրենց վրայ գրւած ամեն բան:

II. II. 146. *Բարձր է քո աստղից:* Բարձր է այն աստիճանից եւ դիրքից, որ քո աստղը նշանակել է քեզ համար:

II. II. 162. *Առէք այս սրանից:* "Բեմական բացատրութիւնը (գլուխը եւ ուսը ցոյց տալը) առաջին անգամ առաջարկած է Թէօբալդ, եւ յետագայում շատ հրատարակիչներ հետեւել են այդ ցուցման. բայց աչքի առաջ ունենալով 174 եւ 175 տողերը, կարող է լինել որ Պոլոնիուս ցոյց է տալիս իր ձեռքի գաւազանը (արարողապետի գաւազանը) եւ ձեռքը:„ Դաուդէն:

II. II. 171. *Արրասի ետեւ:* Արրասը ձեռքով գործած պատի գորգ էր, ինչպէս այսօր "Գոբլէն„ կոչւած գորգերը. այն ժամանակ ամենէն սիրունները գործւում էին Ֆրանսիայի Արրաս քաղաքում, որ վերջին պատերազմի ժամանակ աշխարհածանօթ դարձաւ:

II. II. 183. *Դուք ձկնավաճառ էք:* "Ձկնավաճառ, ժողովրդական լեզւով, նշանակում էր աղջիկ ման ածող:„ Մալոն: Իսկ Կոլրիճ այս տողը մեկնում է այսպէս. "Ձեզ ուղարկել են որ իմ գաղտնիքը որսաք (ձուկ բռնէք): Այս եւ հետեւեալ տողերից երեւում է որ Համլէտ հասկացել է թէ Պոլոնիուս ինչ դեր է կատարում թագաւորի մօտ, եւ իր աղջկան էլ գործիք է շինել՝ Համլէտի գաղտնիքը դուրս քաշելու համար. սրանով են բացատրւում նաեւ այն արհամարհալից խօսքերը, որոնցով Համլէտ ակնարկում է նրա աղջկան:

II. II. 190. *Եթէ արեգակը մի սատկած շան մէջ...* "Համլէտ հեգնօրէն արդարացնում է Պոլոնիուսի վարմունքը, որ իր աղջկան հեռացրել է նրանից. ասում է, թէ ամբողջ աշխարհը չար է. արեգակն անգամ, աստւած լինելով հանդերձ՝ ստոր հակումներ ունի. եթէ նա մի սատկած շան դիակը յղացնում է, որքան աւելի ընդունակ եմ ես քո աղջկան գլխից հանելու:„ Դաուդէն:

II. II. 207. *Այս երգիծաբան թշւառականը...* "Ակնարկութիւն է Իւվէնալին:„ Վարբրտոն:

II. II. 259—261. *Որովհետեւ աշխարհում ոչ լաւ կայ, ոչ վատ...* Աշխարհային այդ բաների յարաբերականութիւնը Ջորդանո Բրունոյի փիլիսոփայութեան գլխաւոր գաղափարներից մէկն է։ Այդ փիլիսոփան 1583 ից մինչեւ 86 Լոնդոնում էր ապրում։ Շէքսպիր չէր կարող նրան անձամբ ճանաչած լինել, բայց կարող էր իտալացի ուսուցիչ Ֆլորիոյի միջոցով որ թէ Բրունոյին ճանաչում էր եւ թէ Շէքսպիրին, նրա վարդապետութեանը ծանօթացած լինել։

II. II. 324. *Գերագոյն զտւածքը* = quintessence. Ալքիմիական մի տերմին է. Նշանակում է այն նուրբ էութիւնը, որ ալքիմիկոսների կարծիքով մնում էր, երբ որ եւ է նիւթից դուրս էին հանւած չորս տարերքը, հողը, օդը, կրակը եւ ջուրը։

II. II. 340. *Եւ տիկինը իր սրտի ուզածն ազատօրէն կ'ասէ...* Այսինքն եթէ տիկինը այնպէս բաներ ունենայ ասելու, որ անպատշաճ են, եւ չասէ, անյանգ ոտանաւորի ոտը կարճ գալով՝ այդ բանը յայտնի կը լինի։

II. II. 342. *Քաղաքի ողբասանները...* Շէքսպիր ակնարկում է Լոնդոնի այն ողբասանական խմբին, որին ինքն էլ պատկանում էր։

II. II. 354. *Մի խումբ երեխաներ են թուխսից դուրս եկել...* Շէքսպիրի ժամանակ (1600) մի նոր թատրոնական խումբ էր կազմւել Արքայական Մատուռի երգիչ երեխաներից. այդ խումբը, որ մրցութիւն էր անում Շէքսպիրի խմբի հետ, խաղում էր ամէն տեսակ թատերախաղեր, ի միջի այլոց շատ ազատ եւ հեգնական գրւածներ, որով ծաղրի էին ենթարկում ծանօթ անձնաւորութիւններին, եւ վատաբանում էին սովորական թատրոնները։ Այս երեխայական խումբը այնքան յաջողութիւն ունէր, որ միւս թատրոնները դատարկ էին մնում, եւ Շէքսպիրի խումբն էլ ստիպւած էր քաղաքից քաղաք ման գալ, ապրուստ շահելու համար. ահա այս դէպքերին է ակնարկում Շէքսպիր։ Այս խմբի կազմւելուն ենք պարտական “Համլէտը„, որ Շէքսպիր գրեց եւ տւաւ իր խմբին խաղալու, որպէս զի միւս խումբը նոյն անունով գոյութիւն ունեցող հին թատերախաղը չը խաղայ։

II. II. 360. *Շատ սուր կրողներ վախենում են սագի փետուրից...* Շատ ազնւականներ եւ զէնք ունեցող մարդիկ վախենում են յաճախել սովորական թատրոնները, որոնք վարկաբեկւած են “սագի փետուրի„, — գրչի շնորհիւ։

II. II. 377. *Հէրկուլէսին էլ իր բեռան հետ միասին.* Հաւանական է որ Շէքսպիր այստեղ ակնարկում է Գլոբ (Երկրագունդ) թատրոնին, ուր իր խումբը խաղում էր. թատրոնի ճակատազարդն էր Հէրկուլ՝ երկրագունդը մէջքին դրած։ Շէքսպիր ուզում է ասել թէ այդ երեխաների խումբը յաղթում է նաեւ “Երկրագունդ„ թատրոնին, իր կողմ քաշելով նրա յաճախորդները։

II. II. 404· *Այո, պարոն, իրաւունք ունիք, երկուշաբթի առաւօտն էր...* Համլէտ իր խօսքը փոխում է, որպէս զի Պոլոնիուս չհասկանայ թէ ինչի վրայ էին խօսում։

II. II. 410· *Բըզ, բըզ...* "Օքսֆորդում սովորութիւն էր այդպէս բացականչել, երբ մի մարդ սկսում էր մի բան պատմել որ ամենքն արդէն գիտէին։" Բլաքստոն։

II. II. 412· *Ու յետոյ եկաւ ամէն դերասան իր էշի վրայ:* Մի հին երգից մի տող է, որ Համլէտ մէջ է բերում Պոլոնիուսի "պատուիս վրայ" խօսքը ծաղրելու համար։

II. II. 417· *Տեսարան անբաժանելի, կամ քերթուած անսահմանափակ.* "Տեսարան անբաժանելի" նշանակում է այն թատերախաղերը, որոնց մէջ տեղի եւ միութեան կանոնը յարգուած է, իսկ "քերթուած անսահմանափակ" նրանք են, որոնց մէջ այդպիսի սահմանափակումներ նկատի չեն առնուած։" Դէլիուս։

II. II. 418· *Սենեկա... Պլաւտոս...* Սենեկայի ողբերգութիւնները 1581 ին անգլիերէնի թարգմանուել, եւ մեծ ազդեցութիւն են ունեցել ժամանակի ողբերգութիւնների վրայ. իսկ Պլաւտոսի կատակերգութիւններից մէկը, Menaechmi, թարգմանուեց 1595 ին, որից Շէքսպիր իր *Թիւրիմացութեան կատակերգութեան* նիւթը փոխ է առել։

II. II. 419· "*Թէ՛ կանոնաւորութեան օրէնքի կողմից, թէ՛ ազատութեան...* նշանակում է թէ այն թատերախաղերը որոնք կանոնի համեմատ են գրուած, եւ թէ՛ նրանք, որոնք կանոնի ուշադրութիւն չեն դարձրել։" Կապէլ։ Իսկ Կորսոն ասում է թէ Սենեկայի գրուածները կարող են իբրեւ նմուշ ծառայել կանոնաւորութեան, եւ Պլաւտոսինը՝ ազատութեան։ Կոլիէր կարծում է թէ "ազատութիւն" ասուած է այն մտքով, որ դերասանները կարող են իրենց դերից դուրս անպատրաստի բաներ հնարել եւ խաղի ժամանակ ասել, ինչպէս Իտալիացի դերասաններն անում էին։

II. II. 421· *Ո՜վ Յեփթայէ...* Շէքսպիրի ժամանակ Սուրբ Գրքի պատմութիւններից երգեր էին շինել, որ մուրացկանները տօների ժամանակ երգում էին փողոցներում։ Համլէտ յիշում է այդ երգերից մէկը, որ պատմում է թէ ինչպէս Յեփթայէ զոհում է իր աղջկան։ Ուզում է ասել, թէ Պոլոնիուս նոյն կերպով Օֆէլիային է զոհում։

II. II. 430—436· *Ոչ, այդ չէ հետեւում:* Համլէտ նոյն երգի հետեւեալ տողերն է յիշատակում. բայց տեսնելով որ դերասանները գալիս են՝ չէ ուզում շարունակել, ասելով "Տեսէք, խօսքիս կարճումը գալիս է", ինչ որ մի եւ նոյն ժամանակ անգլիերէնում նշանակում է, "ահա իմ զւարճութիւնը գալիս է"։

II. II. 441· *Իսկ դու, սիրելի օրիորդ եւ տիկին...* Պէտք է յիշել որ Շէքսպիրի ժամանակ կանանց արգելուած էր թատրոնում խաղալ, եւ կա-

նանց դերերը կատարում էին պատանիներ, որոնց ձայնը դեռ չէր թաւացել։ Այստեղ էլ Համլէտ ասում է “Տայ Աստուած, որ ձայնդ ոչ-բանուկ ոսկու պէս՝ օղակից ներս ճաքած չը լինի„։ Այն ոսկի դրամները, որոնք եզերքից ճաքում էին մինչեւ այն օղակը, որ շրջապատում էր թագաւորի պատկերը, դեռ եւս ընթացիկ էին, իսկ երբ ճաքը օղակից ներս էր անցնում, այլ եւս բանուկ չէին, եւ չէին գնգում։ Համլէտ ասում է թէ յոյս ունիմ, որ քո ձայնդ էլ օղակից ներս ճաքած ոսկեդրամի պէս հասարակած չը լինի։ Առաջին կինը, որ Անգլիայում բեմ է դուրս եկել Դէզդէմոնայի դերն է խաղացել 1660, դեկտեմբեր 6 ին։ Մի անգամ, երբ Չարլզ II ի առաջ մի ներկայացում պիտի տրուէր, եւ դերասաններն ուշանում էին, թատրոնի վերատեսուչը եկաւ թագաւորից ներողութիւն խնդրելու, ասելով թէ ուշանալու պատճառն այն է, որ “թագուհին„ դեռ ածիլուած չէ։

II. II. 454. *Խավիար էր խուժանի համար:* Շէքսպիրի ժամանակ խավիարը նոր էր մուտք գործել Անգլիա, եւ ժողովուրդը վարժուած չը լինելով՝ չէր սիրում. այդ պատճառով է ասուած, թէ այդ համուածը “խավիար էր խուժանի համար„, այսինքն բարձր էր նրա հասկացողութիւնից։

II. II. 467. *Խուամազ Պիւռհոսը...* “Այս կտորը գրուած է Շէքսպիրի նախորդների ժամանակ սովորական դարձած ուռուցիկ ոճով, եւ գրուած է մի քանի տարի “Համլէտից„ առաջ, եւ 1601 ին զետեղուած է “Համլէտի„ առաջին փորձի մէջ։ Բարեբախտաբար Շէքսպիրի հանճարը կարողացաւ ազատուիլ այդ ոճից։„ Գլի։

II. II. 514—518. *Թո՜ւհ, թո՜ւհ. պոռնիկ բախտ...* Կրիտիկները կարծում են թէ այս վերջին հինգ տողերը Շէքսպիրի գրչից չեն ելած, եւ թէ մի այլ հեղինակ աւելացրած պէտք է լինի։

II. II. 575. *Գիւղացի ստրուկ:* “Շէքսպիրի ժամանակ Անգլիայում դեռ եւս գիւղացի ստրուկներ (ճորտեր) կային, եւ Շէքսպիր կարող է անձամբ տեսած լինել։„ Ֆրնիվալ։

II. II. 593. *Մտամոլոր խեղճ Ջոնի պէս...* Հետաքրքրական է թէ ինչպէս այդ անունը զանազան լեզուներում յիմարութեան հոմանիշ է դարձել, ինչպէս գերմանիայում „Hans“, եւ հայերէնում “Տաւար Օհանը„։

II. II. 602. *Աղավնու լյարդ...* Ժողովրդական կարծիք կար, թէ աղաւնիները լեղի չունին, եւ դրա համար է որ այնպէս հեզ եւ անուշ են։

---

III. I. 94. *Ո՛վ յաւերժահարս...* “Համլէտ, երբ տեսնում է Օֆէլիային աղօթագիրքը ձեռքին, մի րոպէ սրտաշարժւում է, բայց եւ այնպէս որոշ պաղութիւն կայ “Ո՛վ յաւերժահարս„ բառի մէջ։ Օֆէլիա հարցնում

է նրա առողջութիւնը. Համլէտ պատասխանում է ինչպէս մի ստորականի, պաշտօնապէս, եւ մի տեսակ գժկամութեամբ, եւ իր մտքի մէջ վճռում է նրան ոչինչ չասել: Օֆէլիան իր ստացած ընծաներն ուզում է յետ տալ: Համլէտ մտածում է որ Օֆէլիան էլ պէտք է Թագաւորի կողմից կանչուած լինի, ինչպէս Ռոզենկրանց եւ Գիլդենշտերն, նրա գաղտնիքը դուրս քաշելու համար, եւ իսկոյն սկսում է իր սովորական մեթոդը ձեռք առնել, այն է, խորհրդաւոր կէս-ճշմարտութիւններ ասել. այդ ձեւով է որ Համլէտ պատասխանում է, "Երբեք, ես ոչինչ չեմ ընծայել քեզ„: Այսինքն այդ ընծաները մի այլ Համլէտ է տուել մի այլ Օֆէլիայի:" Գաուդէն:

III. I. 129. *Ես շատ հպարտ եմ, քինախնդիր, փառամոլ...* "Համլէտ ամբաստանում է ինքն իրեն այնպիսի մոլութիւնների մէջ, որ իսկապէս չունի. երբ խօսում է իր վրայ, նա աչքի առաջ ունի ոչ թէ իր անձը, այլ ընդհանուր մարդկային ցեղը:„ Գաուդէն:

III. I. 144. *Խելացիները լաւ գիտեն, թէ դուք նրանց ի՛նչ հրէշներ էք դարձնում:* Հրէշներ, կոտոշաւոր մարդիկ, այսինքն խաբուած ամուսիններ:

III. II. 11. *Կեղծամաւոր արարած...* "Այն ժամանակ Անգլիայում միայն դերասաններն էին կեղծամ կրում, եւ կեղծամի ընդհանրացումը սկսաւ Չարլզ IIի Թագաւորութեան ժամանակ:„ Սաիմենս:

III. II. 12. *Գետնայարկի հասարակութեան...* Շէքսպիրի ժամանակ Թատրոնի մէջտեղը ոչ աթոռներ ունէր եւ ոչ նստարաններ. այդ պատճառով գետնայարկ էին կոչում Թատրոնի այդ մասը. պարզ բան է որ ամենահասարակ մարդիկն էին գնում այնտեղ, եւ միայն մէկ պէնի էին վճարում ոտքի վրայ կանգնելու համար: Շէքսպիր մի քանի տեղ արհամարհանքով է խօսում "գետնայարկի„ հասարակութեան վրայ, որ ճաշակից եւ հասկացողութիւնից զուրկ լինելով՝ միայն ուռուցիկ եւ աղմկալից խաղերն էր սիրում:

III. II. 14. *Անբացատրելի մնջկատակներ...* Ուզում է ասել մնջկատակներ, որոնք այնքան խառն եւ անկանոն դասաւորութիւն ունէին, որ բացատրել անկարելի, կամ անպատշաճ էր:

III. II. 16. *Տէրմագանտին էլ գերազանցում է...* Հին ռոմաններում Սարակինոսների աստծուն Ցէրմագանտ անունն է տրուած. բառի ծագումն անյայտ է. շատ խիստ եւ սարսափելի բնաւորութիւն ունեցող մի աստուած էր համարուած, այնպէս որ մի մեծաբարբառ դերասան էր պէտք Ցէրմագանտի դերի համար: Նոյնպէս եւ Հերովդէսը, որին հին կրօնական խաղերի ժամանակ ներկայացնում էին որպէս վերին աստիճանի բուռն եւ դաժան բնաւորութիւն ունեցող մի Թագաւոր:

III. II. 84. *Բայց այս շատ եղաւ:* "Այս կարճ տողի հարազատ առնացութիւնը Շէքսպիրի վրձինի ամենանուրբ գծերից մէկն է. Համլէտ նկատում

է, որ իր տաք սրտից եւ բարեկամական սիրուց տարուելով՝ շատ աւելի հեռու է գնացել իր զգացումներն արտայայտելու մէջ, քան թէ վայել է երկու տղամարդկանց դէպի իրար ունեցած զգացմունքի պարզութեանը եւ անկեղծութեանը, եւ սկսում է ինքն իրեն զսպել:" Վլտըր։

III. I. 92. *Վուլկանի սալից...* Սալ ասելով Շէքսպիր հասկանում է ոչ թէ ուղղակի սալը, այլ դարբնանոցը։

III. I. 102. *Քամէլէոնի պէս եմ կերակրւում:* Ժողովրդական կարծիք կար թէ քամէլէոնը ոչինչ չէ ուտում, այլ միայն օդով է կերակրւում։

III. I. 103. *Խոստումներով եմ խճողւած.* Թագաւորը խոստացել էր Համլէտին, թէ իրենից յետոյ նա կը լինի Դանեմարքայի թագաւոր։

III. II. 108. *Համալսարանում մի քան էք խաղացել...* Մինչեւ այսօր էլ սովորութիւն է Օքսֆորդի եւ Քէմբրիջի համալսարաններում լատիներէն եւ անգլիերէն ներկայացումներ տալ, եւ հին անգլիական դրամաներից բաւական մեծ թիւ գրւած է եղել համալսարանում խաղալու համար։

III. II. 142. *Ախ ափսոս, ա՜խ ափսոս, փայտէ ձին մոռացւեց:* Հին ժամանակ Մայիս մէկին ամբողջ Անգլիայում ժողովրդական տօն էր կատարւում. այդ տօնի ժամանակ մի գեղջկական պար էին պարում, որ կոչւում էր "Մօրիսի" պար, եւ որ նշանակում էր "Մաւրական". հաւանական է որ Սպանիայից այդ պարը ներմուծւած էր Անգլիա. պարողները զանազան այլանդակ զգեստներ էին հագնում՝ դիմակներով, զանգակներով եւ այլն. դերակատարներից մէկն էլ ձիու կերպարանքով էր դուրս գալիս, որ կապւած էր նրա մէջքին, խոկ ոտքերը ծածկւած էին մինչեւ գետին իջնող մի լաթով. խաղացողը պէտք է ձիու շարժումներ ձեւացնէր։ Պուրիտանները հակառակ էին այդ Մայիսեան տօներին, եւ յաջողեցան այսպիսի զւարճութիւնները, ի միջի այլոց եւ ձիու պարը, արգելել։ Յետոյ մի ժողովրդական երգ յօրինւեց, որ ափսոսում էր փայտէ ձիու անհետացումը. Համլէտ այդ երգից մի տող է մէջ բերում այստեղ։

III. II. 248. *Գոնզագօ:* "1538ին Ուրբանոյի Դուքսը, որ ամուսնացած էր Գոնզագա ընտանիքից մի կնոջ հետ, սպանւեց Լուիջի Գոնզագայի ձեռքով, որ նրա ականջի մէջ թոյն թափեց։ Շէքսպիր կարող էր ծանօթ լինել այս պատմութեանը, իտալերէն գրւած, եւ սպանողի անունը փոխադրած է սպանւածի վրայ. Լուիջի անունից էլ ստեղծել է Լուցիանոս անունը։" Դաուդէն։

III. II. 255. *Ինչպէս խաղի նախերգակը:* Մնջկատակների ժամանակ, ինչպէս նաեւ հին կատակերգութիւնները կամ ողբերգութիւնները խաղալիս՝ "նախերգակը" ներկայացման սկզբում դուրս էր գալիս եւ խաղի նիւթը բացատրում էր։

III. II. 260· *Աւելի լաւ եւ աւելի վատ:* "Օֆելիան ասում է, թէ նրա ասածը աւելի լաւ է սրախօսութեան տեսակէտից, աւելի վատ է, պարկեշտութեան տեսակէտից։" Կալգեկոս։

III. II. 282· *Խոցուած եղնիկը:* Հաւանօրէն մի հին երգից մի տուն։

III. II. 286· *Մի անտառ փետուր ...* Շէքսպիրի ժամանակ դերասանները սովորութիւն ունէին շատ փետուր կրել իրենց գլխարկի վրայ, եւ ժապաւէնից շինուած մեծ վարդեր իրենց կօշիկների վրայ։

III. II. 290· *Գուցէ կէս բաժին կը տան ձեզ:* Ամբողջ Թատրոնի հասոյթը վերածուում էին բաժինների, որոնցից մի մասը հասնում էր Թատրոնի սեփականատիրոջը, իսկ ամեն դերասան ստանում էր մէկ կամ երկու բաժին, երբեմն էլ կէս բաժին՝ նայելով իր արժանիքին։

III. II. 295· *Մի իսկական ... խեղկատակ:* Համլէտ մէջ է բերում մի տուն մի հին երգից, եւ վերջին բառը փոխում է. երգի բնագիրը եղած է "Մի իսկական աւանակ"։ Դրա համար է որ Հորացիոն ասում է "Աւելի լաւ էր իր յանգով վերջացնէիք"։ Այն բառը, որ մենք "խեղկատակ" Թարգմանեցինք, շատ վիճելի բառ է բնագրում, եւ շատերը գերադասում են "սիրամարգ"։

III. II. 341· *Երդուում եմ այս գողերով եւ շորթողներով:* Հին Անգլիական "քրիստոնէականների" մէջ պատուիրուում էր ձեռքերը մաքուր պահել գողանալուց եւ շորթելուց, Համլէտ կատակով ակնարկում է այդ պատուէրին՝ որպէս զի իր այս խօսքին — "հիմա էլ սիրում եմ" — կատակի ձեւ տայ։

III. II. 401· *Ներոնի հոգին ...* "Ներոն ինքը սպանեց իր մայր Ագրիպպինային. գուցէ կայ եւ մի այլ պատահական զուգադիպութիւն. — Ագրիպպինա Կլաւդիոսի կինն էր, եւ նրան ամբաստանում էին Թէ իր ամուսնին Թունաւորել է, եւ ապրում է իր եղբօր հետ։" Դաուդէն։

III. IV. 215· *Գիտես որ պէտք է Անգլիա գնամ:* Յայտնի չէ Թէ Համլէտ ինչպէս է կարողացել Թագաւորի որոշումը հասկանալ։

---

IV. II. 25· *Մարմինը Թագաւորի մօտ է ...* "Համլէտ դիտմամբ այնպիսի բաներ է ասում, որ Ռոզենկրանցին եւ Գիլդենշտերնին անմիտ երեւան, բայց որոնք ներքին իմաստ ունին իր համար։ Ակնարկում է Պոլոնիուսի, մարմինը, Թագաւորի (իր հօր) մօտ է, բայց Թագաւորը (իր հայրը) իր մարմնի մօտ չէ, քանի որ առանց մարմնի մեն է գալիս իբրեւ ուրուական։ Երեւի դեռ ուրիշ բան էլ ուզում էր ասել, բայց Ռոզենկրանցը նրան ընդհատում է. Համլէտ նրա խօսքի Թելը ձեռք է առնում եւ նախադասութիւնը վերջացնում

է իր ուղանից տարբեր իմաստով, բայց դարձեալ այնպէս, որ իր գաղափարի մի մասը պարունակէ.„ Թագաւորը (իր հօրեղբայրը), ասում է նա, "մի բան է, որ իմ աչքում ոչինչ է„: Գրաուզէն:

IV. II. 28. *Թագնուիր, աղուէս:* Աչքակապուկի պէս մի երեխայական խաղ է եղել. այստեղ ակնարկում է Գոլոնիուսին, որ թագնուած է, եւ ամենքը պէտք է նրան փնտռեն:

IV. III. 20. *Քաղաքագէտ որդների մի համագումար...* "Այնպիսի որդների, որոնք կարող են ծնուիլ մի քաղաքագէտ մարդու մարմնի մէջ:„ (Գրաուզէն): — Իսկ Սինգէր կարծում է, թէ դա մի ակնարկութիւն է Վորմսի մէջ տեղի ունեցող Գերման կայսրութեան համագումարին. բառախաղը կայանում է նրանում, որ "Վորմս„ անունը անգլիերէն նշանակում է "որդներ„:

IV. IV. 51. *Ես տեսնում եմ մի քերովբէ, որ տեսնում է նրանց:* Այս բառերի մէջն է Համլէտի բնաւորութեան գլխաւոր գիծը: Քերովբէները գիտութեան հրեշտակներն էին համարւում: Ուզում է ասել թէ ինքը չէ տեսնում իր հօրեղբօր գաղտնի դիտումները, բայց կայ մի Նախախնամութիւն որ տեսնում է նրանց. մի եւ նոյն գաղափարը գտնում ենք նորէն (Ա. V, Տ. II, 11) երբ Համլէտ Հորացիօյին ասում է թէ "կայ մի Աստուածութիւն, որ ձեւ է տալիս մեր ձեռնարկներին, ինչպէս էլ որ մենք նախատաշ անենք„. Եւ ի վերջոյ, (Ա. V, Տ. II, 235) ասում է, թէ "Մի ճնճղուկի ընկնելու մէջն անգամ Նախախնամութիւն կայ:„ Համլէտ, հօր վրէժը հանելու համար՝ իր բոլոր յոյսը չէ դնում սեփական միջոցների վրայ, եւ գուցէ այդ պատճառով է որ այնքան էլ չէ շտապում: Նա մտածում է թէ երկնային արդարութիւնը չէ կարող թոյլ տալ որ մի այդպիսի ոճիր անպատիժ մնայ, եւ ի վերջոյ նրան ցոյց կը տայ իր վրէժը հանելու միջոցը:

"Արդեօք Շէքսպիրն ինքն էլ գաղափարակից է Համլէտի տուած բացատրութեան աշխարհի իրադարձութեանց մասին: Ոչ. այն Նախախնամութիւնը, որին Շէքսպիր հաւատում է, այն բարոյական աշխարհակարգն է, որ պահանջում է մարդուց հեռատեսութեան, կորովի եւ վճռականութեան ամենաբարձր աստիճանը: Համլէտի տրամադրութիւնը, որով նա ամենափոքր չափի է վերածում մարդու գիտակից կամքի եւ հեռատեսութեան խաղացած դերը պատահարների դասաւորութեան մէջ, եւ լայնացնում մեր կամքից անկախ զօրութիւնների ազդեցութեան սահմանը՝ դրամատիկ նշանակութիւն ունի, ոչ թէ աստուածաբանական: Հէլէնան *Ամեն բան լաւ է որ լաւ վերջանայ* գրուածքի մէջ, որ շատ յստակօրէն տեսնում է թէ ինքն ինչ է վճռել, եւ իր վճռածը լիովին իրագործում է, այլ դաւանութիւն ունի.„

"Յաճախ մեր ճարը հէնց մեր ձեռքին է,
Այն ինչ երկնքին վերագրում ենք այն.

Բախտաւոր երկինքն ազատ ասպարէզ շընորհում է մեզ.
Միայն մեր դանդաղ նպատակներն է դէպի յետ քաշում՝
Երբ մենք ինքներըս զուրկ ենք կորովից:„

Դաուդէն:

IV. V. 25. Շէքսպիրի ժամանակ այս եղանակով էր երգւում այս երգը:

*Moderato grazioso.*







IV. V. 27. *Իր գլխարկի խեցիներից...* Այն ժամանակ ուխտաւորները սովոր էին մի խեցի խրել իրենց գլխարկի ճակատին: Շատ սիրահարներ, որ ուզում էին անծանօթ մնալ իրենց սիրային հետապնդութեան ժամանակ՝ ծպտւում էին ուխտաւորի զգեստներ հագնելով:

IV. V. 42. *Բուն մի հացթուխի աղջիկ էր...* "Անգլիայում մի ժողովրդական պատմութիւն է եղել այս մասին: Քրիստոս գնում է մի հացթուխի խանութ, երբ հաց էին թխում, եւ մի կտոր հաց է ուզում: Հացթուխ կինը իսկոյն մի քիչ խմոր առնում դնում է թոնիրի մէջ, որ եփէ եւ տայ Քրիստոսին: Հացթուխի աղջիկը յանդիմանում է իր մօրը, թէ ինչու է նա այնքան շատ խմոր փչացնում, խմորի մեծ մասը յետ է վերցնում եւ շատ քիչ բան է թողնում թոնիրի մէջ. բայց այդ քիչ խմորը սկսում է ուռչել եւ ուռչել, եւ ահագին չափի է հասնում. աղջիկը զարմանքից գոչում է, "Հու՜, հու՜, հու՜: Այդ բուի ձայնի նմանութիւնից՝ Քրիստոս չար աղջկան բու է դարձնում:„ Դուս:

IV. V. 49. *Էգուց տօն է, Սուրբ Վալէնտին...* Սուրբ Վալէնտինի

տօնի օրը, փետր 14ին առաւօտը կանուխ, ամէն երիտասարդ իր հանդիպած առաջին աղջկան պիտի համարէր իր Վալէնտինը, այսինքն սիրուհին։

*Allegro.*







IV. V. 96· *Գնտացիրի պէս:* Գնտացիրը չը պէտք է հասկանալ արդի իմաստով. Նշանակում է մի թնդանօթ որ լցնում էին փոքրիկ գնտակներով, գամերով եւ հին երկաթի կտորտանքով՝ տուփերի մէջ հաւաքած։

IV. V. 153· *Հաւալուսի պէս:* Ժողովրդական մի անհաւատութիւն կար, թէ հաւալուս թռչունը (պելիկան) կտուցով իր կուրծքը ճղում է, որ իր արիւնով ձագերին կերակրէ։

IV. V. 169· *Հոգին սիրոյ մէջ շատ նուրբ է լինում:* Հոգին ուղարկում է “իր էութիւնից մի ազնիւ նմուշ„, այսինքն ողջմտութիւնը, “Նրա ետեւից որին սիրում է„, այսինքն Օֆէլիան ուղարկել է իր խելքը Պոլոնիուսի ետեւից։

IV. V 183—191· *Ահա խնկունի ...* **Rosmarinus** բոյսը. կարծում էին թէ այդ բոյսը յիշողութիւնը զօրացնում է. այդ պատճառով կրում էին թէ հարսանիքի եւ թէ յուղարկաւորութեան ժամանակ. Նշանակ էր յիշողութեան։ *Խոհիկներ,* (**Viola tricolor**) այս բառը մենք ենք շինել՝ նմանութեամբ ֆրանսիական **pensée** բառի։ *Սամիթ* **Foeniculum vulgare** բոյսը. համարւում էր բորբոքիչ մի խոտ, եւ նշան էր շողոքորթութեան։ *Աղաւնարօտ* **Aquilegia vulgaris** նշանակ էր խաբուած սիրոյ։ *Փեգենայ.* **Ruta graveolens** բոյսը. խորհրդանիշ էր վշտի եւ զղջումի. նոյն բոյսը կոչւում էր նաեւ “կիրակնօրեայ թողութեան խոտ„։ Օֆէլիան ասում է թէ մի քիչ կայ ինձ հա-

մար, այսինքն ինձ համար նշանակելով “Թողութիւն„, իսկ “դուք ձերը տարբեր նշանակութեամբ պէտք է կրէք, նշանակում է, թէ ձեզ համար պէտք է զղջումի խորհրդանիշ լինի: Մանուշակ. մանուշակը հաւատարմութեան նշանակ էր. եւ կարծողներ կան, որ Օֆէլիան մանուշակը Հորացիօյին է տալիս:

IV. V. 193—195. Ահա այս երկու երգերի եղանակը.

*Adagio e ad libitum.*




*Lento e ad libitum.*



IV. VII. 182. *Նման է վառնող մի հառաչանքի:* Այնպէս էր կարծում որ հառաչանքը սրտից արիւն քամելով՝ թէեւ հովացնում է նրան, բայց կեանքը կարճացնում է։ Միտքն այն է, որ երբ մենք վճռում ենք մի բան անել եւ յետոյ չենք անում, այդ բարոյական վճիռը մեր խիղճը հանգստացնում է, բայց վնասում է նրանով, որ մեր կամքի ոյժը թուլացնում է, երբ մեր վճիռներն անկատար ենք թողնում։

---

V. I. 38. *Խոստովանիր, եւ...* Առածն այսպէս էր. — Խոստովանիր եւ գնա կախուիր։

V. I. 51. *Լուծը ետ արա:* "Այսինքն խելքիդ վրայ այնքան մեծ ծիգ գործ դնելուց յետոյ, լուծը յետ արա եւ գնա հանգստացիր։" Դաուդէն։

V. I. 60. Ահա այս երգի եղանակը։

*Adagio e grazioso.*




V. I. 74. "Աւանդութիւն կար թէ Կայէն մի ատամնակի ծնօտով է սպանել Աբէլին։" Սկիտ։

V. I. 75. *Մի քաղաքագէտի գլուխն է եղել:* "Շէքսպիր միշտ քաղաքագէտ բառը բացասական իմաստով է գործածում։" Clar. Press.

V. I. 159. *Երեսուն տարի կը լինի:* "Այստեղ երկու ձեւով Համլէտի տարիքը նշանակուած է. մէկ, գերեզմանափորի ժամկոչութեան տարիներով, եւ երկրորդ, Եօրիկի մահուան տարիների հաշւով։ Նախկին տեսարաններից, մաս-

Նաեւորպէս Լաէրտի եւ Օֆէլիայի հրաժեշտի տեսարանից, այն տպաւորութիւնն է ստացւում, որ Համլէտ աւելի երիտասարդ պէտք է լինի։ Նոյնպէս, տեսնում ենք որ նա դեռ ուզում է գնալ Վիտտենբերգ ուսանելու։ "Համլէտի" առաջին քառածալ տպագրութեան մէջ՝ Շէքսպիր Համլէտին աւելի երիտասարդ է դուրս բերած եղել. բայց հաւանական է որ երբ նա այդ խաղը նորէն գրել է, մտածել է թէ նրա ծանրախոհ մտածութիւնները յարմար չեն գալիս շատ դեռահաս երիտասարդի, եւ նրան աւելի տարէց է դուրս բերել, բայց անուշադիր է եղել իր նախկին գրածները վերջին փոփոխութեան հետ ներդաշնակ դարձնելու"։ Դաուդէն։

V. I. 287. *Կատուն կը մլաւէ...* "Միտքն այս է. — Եթէ Հերկուլէսը չէ կարող արգելել որ կատուն մլաւէ եւ շունը հաչէ, որքան աւելի ես, որ Հերկուլէս չեմ, անկարող եմ արգելել Լաէրտին գործողութեան"։ Դաուդէն։

V. II. 7. *Անապարանքով, եւ օրհնեալ լինի անապարանքը...* —: "Շէքսպիրի բոլոր ողբերգութիւնների մէջ ճակատագրի խոր գիտակցութիւնը կայ։ Առանց այս գիտակցութեան, առանց այս հաւկացողութեան, թէ ծփանքներ կան, որոնք մարդուն քարշ են տալիս իրենց հետ, հակառակ իր կամքին, ողբերգութիւնը անկարելի կը լինէր։ Վալտէր Ռալէյ։

V. II. 55. *Մանկափոխսը...* ժողովրդական մեահաւատութիւն կար թէ ֆէրիները երբեմն երեխաներին գողանում են եւ նրանց տեղ ուրիշն են դնում։

V. II. 90. *Այս ջրի ճանճին...* "Որովհետեւ ջրի ճանճը մի փոքրիկ, տատասուն, փայլուն արարած է, որ միշտ զբաղուած է երեւում, եւ ոչինչ չէ անում"։ Դաուդէն։ Շէքսպիրի կենդանութիւն տալու կարողութիւնը աւելի ակներեւ է դառնում՝ երբ նկատի ենք առնում թէ նա ինչպիսի խնամքով կերտում է տիպեր, որոնք խաղի ընթացքի հետ կապ չունին։ Օզրիկի գործն այն է միայն որ Լաէրտի մենամարտի առաջարկը տանէ Համլէտին. մի սենեկապետ էլ կարող էր այդ բանն անել։ Բայց Շէքսպիր Օզրիկի տիպը ստեղծել է Համլէտի հանճարեղութիւնը եւ մելամաղձութիւնը աւելի ցայտուն դարձնելու համար։ Այն ինչ Համլէտի միտքը զբաղուած է ճակատագրական խնդիրներով՝ կեանքը գնում է իր ճամբով, խնճոյքներ են կազմակերպւում, քաղաքավարութիւններ են փոխանակւում, եւ ընկերութեան անիւները գլորւում են իրենց սովորական շաւղով. Օզրիկ ներկայացուցիչն է սովորական կեանքի. որչափ տարբեր է դա Համլէտի հոգեկան ապրումներից. բայց այդ ունայնամէջ կեանքն իրականութիւն ունի, եւ Շէքսպիր տալով մեզ մի կենդանի նմուշ այդ կեանքի, հաստատում է նրա իրականութիւնը"։ Վալտէր Ռալէյ։

**ՎԵՐՋ**